ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

№ 7
ՀՈՒԼԻՍ
1959 Թ.



ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
XXXVI
ՏԱՐԻ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏԿՈՄԻ
ՏԵՍԱԿԱՆ—ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ЛЕНИНЯН УГИОВ—ТЕОРЕТИЧЕСКИЙ И
ПОЛИТИЧЕСКИЙ ЖУРНАЛ ЦК КП АРМЕНИИ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---

## СОДЕРЖАНИЕ





# ՀԵՏԵՎՈՂԱԿԱՆՈՐԵՆ ԿԵՆՍԱԳՈՐԾԵՆՔ ՍՄԿՊ ԿԵՆՏԿՈՄԻ ՀՈՒՆԻՍՅԱՆ ՊԼԵՆՈՒՄԻ ՈՐՈՇՈՒՄՆԵՐԸ

***Ս. ԹՈՎՄԱՍՅԱՆ***

ՀԿՊ Կենտկոմի առաջին քարտուղար

*Սովետական Միության զարգացման ներկա փուլը բնորոշվում է գիտատեխնիկական անընդհատ առաջադիմության, ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում տեխնիկական պրոգրեսի արմատավորման՝ պարտիայի վարած քաղաքականությամբ։ Այդ քաղաքականության շնորհիվ է, որ Սովետական Միությունն ընթանում է համաշխարհային գիտատեխնիկական առաջադիմության ավանգարդում։ 1959 թվականի հուլիսի 2-ին և 10-ին արձակված նոր հրթիռները մեկ անգամ ևս ցուցադրեցին մեր Հայրենիքի անվիճելի առաջնությունը։*

*Կոմունիստական հասարակարգի ծավալուն կառուցման փուլը թևակոխելուց հետո էլ ավելի են դրսևորվում հասարակության կազմակերպման սոցիալիստական սիստեմի մեջ թաքնված տեխնիկական առաջադիմության անսպառ հնարավորությունները։*

*Սոցիալիստական հասարակարգում տեխնիկայի արագընթաց զարգացումը, արտադրության կոմպլեքսային մեքենայացումն ու ավտոմատացումը ունեն ոչ միայն կարևորագույն տնտեսական, այլև հասարակական մեծ նշանակություն։ Միայն առաջավոր գիտության և բարձրագույն տեխնիկայի ամուր հիմքի վրա կարելի է լուծել պատմական այնպիսի վիթխարի խնդիր, ինչպիսին կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծումն է։ Միայն այդ հիման վրա կարելի է արմատապես թեթևացնել և բարելավել բանվորների աշխատանքի պայմանները, բարձրացնել նրանց կուլտուր-տեխնիկական մակարդակը, պայմաններ ստեղծել մտավոր և ֆիզիկական աշխատանքի միջև եղած էական տարբերությունները վերացնելու, աստիճանաբար աշխատանքի կազմակերպման և մթերքների բաշխման կոմունիստական սկզբունքներին անցնելու համար։*

*ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի այս տարվա Հունիսյան պլենումը քննարկեց արդյունաբերության և շինարարության տեխնիկական պրոգրեսն արագացնելու մասին ՍՄԿՊ XXI համագումարի որոշումների կատարման ուղղությամբ պարտիական ու սովետական կազմակերպությունների և ժողտնտխորհների աշխատանքի հարցը։*

*Պատահական չէ, որ ՍՄԿՊ Կենտկոմի հերթական պլենում հրավիրելու մասին մամուլում եղած հաղորդագրությունն անչափ մեծ հետաքրքրություն և բուռն արձագանք առաջացրեց մեր երկրի աշխատավորական լայն զանգվածների շրջանում։ Ձեռնարկությունների կոլեկտիվների, արտադրության առաջավորների, ինժեներների, գիտնականների նոր առաջարկությունների հո-*

սանքը, մասսաների ստեղծագործական ակտիվության նոր վերելքը վկայեցին, որ պլենումի հրավիրումը կարևոր իրադարձություն է երկրի կյանքում։

Երկրում ծավալվեց ՍՄԿՊ Կենտկոմի Հունիսյան պլենումն արժանավայել դիմավորելու համաժողովրդական մրցության նոր ալիք։ Հանրահայտ է վլադիմիրցիների, սվերդլովցիների և ուրիշների նախաձեռնությունը, որն արժանացավ ՍՄԿՊ Կենտկոմի հավանությանը։

Հայկական ՍՍՌ արդյունաբերության աշխատողները ՍՄԿՊ Կենտկոմի պլենումը դիմավորեցին 1959 թվականի կիսամյա պլանը ժամկետից շուտ կատարած։ Արդյունաբերական արտադրանքի կիսամյա պլանը կատարվեց հունիսի 23-ին։

Էլեկտրատեխնիկական արդյունաբերության զարգացման լրացուցիչ միջոցառումներ մշակելու համար Հայաստանի Կոմպարտիայի Կենտկոմը 1959 թվականի հունվարին ստեղծեց հանձնաժողով։ Հանձնաժողովի մշակած առաջարկությունները արժանացան Կենտկոմի հավանությանը և մտցվեցին յոթնամյա պլանի մեջ։ Այդ լրացուցիչ միջոցառումների արդյունավետությունն այն է, որ դրանց իրականացման միջոցով էլեկտրատեխնիկական արդյունաբերությունը և հաստոցաշինությունը արտադրության 1965 թվականի համար սահմանված մակարդակին կհասնեն վեց տարում։

Քիմիական արդյունաբերության ձեռնարկությունների կոլեկտիվները, հաշվելով իրենց հնարավորությունները, որոշել են ներքին ռեզերվներն ավելի լավ օգտագործելով յոթնամյակում արտադրության ծավալը մեծացնել 165 միլիոն ռուբլով, իսկ ոչ-մեծ լրացուցիչ կապիտալ ներդրումներով՝ 656 միլիոն ռուբլով։ Ժողտնտխորհի հաշվումները ցույց են տալիս, որ քիմիական արդյունաբերության ձեռնարկությունները կարող են իրենց ներքին ռեզերվների հաշվին յոթնամյակը կատարել վեց տարում։

Այդպիսի միջոցառումներ են մշակվել նաև տեքստիլ ու շինանյութերի արդյունաբերության բնագավառներում։

Այդ հաշվումների և ձեռնարկությունների կոլեկտիվների ընդունած պարտավորությունների հիման վրա մեր ռեսպուբլիկան ՍՄԿՊ Կենտկոմի Հունիսյան պլենումի բացման օրը հանձն առավ արդյունաբերության զարգացման յոթնամյա պլանը կատարել վեց տարում։

Մեր մեծ երկրում յոթնամյակի առաջին տարվա ժողովրդա-տնտեսական պլանը կատարվում է հաջողությամբ։ Արդյունաբերական արտադրության կիսամյա պլանը ռեսպուբլիկայում կատարվեց 104,3 տոկոսով։ 1958 թվականի նույն ժամանակաշրջանի համեմատությամբ աճը կազմեց 11 տոկոս։ Նույն ժամանակաշրջանում կապիտալ ներդրումների ծավալը աճեց 12,8 տոկոսով։ Աշխատանքի արտադրողականությունը արդյունաբերության մեջ բարձրացավ 5 տոկոսով, շինարարության մեջ՝ 7,4 տոկոսով։

Գյուղի աշխատավորները հաջողությամբ ավարտեցին գարնանացանը։

Արդյունաբերության և գյուղատնտեսական աշխատանքների այս տարվա առաջին կիսամյակի ցուցանիշները վկայում են, որ յոթնամյա պլանը հանդիսանում է բանվորների, կոլտնտեսականների, ինժեներների, տեխնիկների, գիտնականների, մեր բոլոր աշխատավորների կենսական գործը։ Դրանք այնքանի երաշխիքն են, որ ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանը կկատարվի հաջողությամբ և ժամկետից շուտ։

ՍՄԿՊ Կենտկոմի Հունիսյան պլենումը նշեց, որ պայքարը տեխնիկական



առաջադիմության համար՝ հանդիսանում է ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանի կատարման վճռական պայմանը։ Միայն տեխնիկական առաջադիմությունը կապահովի աշխատանքի արտադրողականության ըստ ամենայնի բարձրացում։

Մեզ չի կարող չուրախացնել այն, որ վերջին ժամանակներս ռեսպուբլիկայի էներգասիստեմում և արդյունաբերական մի շարք ձեռնարկություններում իրականացվել են նոր տեխնիկայի արմատավորման, արտադրության ավտոմատացման ու մեքենայացման, առաջավոր տեխնոլոգիայի արմատավորման և ավտոմատ հարմարանքների ստեղծման միջոցառումներ, որոնց նպատակն է բարձրացնել արդյունաբերության բոլոր ճյուղերի արտադրության տեխնիկական մակարդակը։ Գիտական և կոնստրուկտորական կազմակերպություններում, մեքենաշինական և սարքաշինական ձեռնարկություններում մշակվել են նոր մեքենաներ ու սարքեր և յուրացվել է դրանց արտադրությունը։

Ռեսպուբլիկայի էներգետիկ սիստեմում ավտոմատացվել և հեռուստակառավարման են անցել էլեկտրակայաններն ու ցանցերը, որը զգալիորեն բարձրացրել է սպառողների էներգամատակարարման հուսալիությունը, ապահովել է հիդրոէլեկտրակայանների ագրեգատների խնայողաբեր աշխատանք։

Հիշյալ միջոցառումները հնարավորություն կտան առաջիկա տարիներին անցնել բոլոր հիդրոէլեկտրակայանների ավտոմատ կառավարման՝ առանց սպասարկող անձնակազմի։

Էներգասիստեմի ձեռնարկություններում ավտոմատացում և հեռուստամեքենայացում արմատավորելու շնորհիվ, սահմանված կարողության յուրաքանչյուր միավորին ընկնող անձնակազմի թիվը հիդրոէլեկտրակայաններում կրճատվել է ավելի քան 3 անգամ։ Միայն աշխատավարձի ֆոնդի տարեկան պայմանական խնայողությունը կազմում է մոտ 5 միլիոն ռուբլի։

Նախատեսված է այս յոթնամյակում ռեսպուբլիկայի էներգետիկ սիստեմում լայնորեն օգտագործել էլեկտրոնային հաշվիչ-լուծիչ և կառավարող մեքենաներ՝ ամբողջ ռեսպուբլիկայի հիդրոէլեկտրատեխնիկական սիստեմի օբյեկտները ռացիոնալ շահագործելու համար։

Ժողովրդական տնտեսության խորհրդի գունավոր մետալուրգիայի և լեռնահանքային արդյունաբերության ձեռնարկություններում լուրջ աշխատանք է կատարվել հանքաքարի արդյունահանումը մեքենայացնելու ուղղությամբ։ Հանքավայրերում արմատավորվել է հանքային զանգվածի արդյունահանման բաց եղանակ, մեքենայացվել են արդյունահանման հիմնական պրոցեսները։ Հանքաքարի փոխադրումն էժանացնելու նպատակով բաց հանքերում արմատավորվել է հանքաքարի բացթողումը իջանցքերով, որից հետո այն փոխադրվում է էլեկտրաքարշերով և ճոպանուղիներով։

Այդ միջոցառումն արմատավորելու շնորհիվ իջել է հանքաքարի ինքնարժեքը, որը միայն Քաջարանի պղնձա-մոլիբդենային կոմբինատում 1959 թվականին կտա 3 միլիոն 250 հազար ռուբլու խնայողություն։

Հարստացուցիչ ֆաբրիկաներում որոշ չափով բարձրացվել է հանքաքարից պղինձ և մոլիբդեն կորզելու տոկոսը, ավելացել է արտադրանքի թողարկումը և բարելավվել որակը։

Ալավերդու պղնձա-քիմիական կոմբինատում ավտոմատացվել են երկու

կոնվերտերներ, որոնց շնորհիվ խնայվել է 2,7 միլիոն ռուբլի։ Մեքենայացվել է կոնվերտերային խարամի լիցքը, ավտոմատացվել են անոդային ու վայերբարսյան վառարանների վերահսկումն ու տեխնոլոգիական պրոցեսների կարգավորումը և մի շարք այլ ծանր, աշխատատար պրոցեսներ։

Քիմիական արդյունաբերության ձեռնարկություններում մեքենայացվել և ավտոմատացվել են տեխնոլոգիական շատ պրոցեսներ, այդ թվում ավտոդողերի պաշտպանաշերտի պատրաստումն ու դողերի վուլկանացումը, որոնց շնորհիվ աշխատանքի արտադրողականությունը բարձրացել է 12—15 տոկոսով։

Քիմիական ձեռնարկություններում կազմակերպվել է սինթետիկ կաուչուկի՝ ռեսպուբլիկայում մշակված նոր արժեքավոր տեսակների, բարձրորակ լաքերի, թաղանթի և էմուլսիայի արտադրություն։

Ձերժինսկու անվան հաստոցաշինական գործարանում արմատավորվել են խառատա-պտուտակահան հաստոցների դետալների պատրաստման հոսքային 6 գծեր, որոնք հնարավորություն են տվել աշխատանքի արտադրողականությունը բարձրացնել 2,3 անգամ և տարեկան խնայել մոտ 800 հազար ռուբլի։

Ավտոպահեստամասերի գործարանում կազմակերպվել են շատ դետալների մեխանիկական մշակման հոսքային գծեր և չափսերի ավտոմատ ստուգում։ Մեքենայացման և ավտոմատացման միջոցառումների իրականացման և տեխնոլոգիական նոր պրոցեսների արմատավորման շնորհիվ անցած երկու տարում աշխատանքի արտադրողականությունը բարձրացել է 32 տոկոսով, իսկ արտադրանքի թողարկումը 30 միլիոնից հասել է 60 միլիոն ռուբլու։

Էլեկտրատեխնիկական արդյունաբերության զարգացման բարձր տեմպերը յոթնամյակում հիմնականում ապահովվում են գործող ձեռնարկությունների վերակառուցման և ընդլայնման, ինչպես նաև բոլոր ձեռնարկություններում նոր տեխնիկա, առաջավոր տեխնոլոգիական պրոցեսներ, արտադրության կոմպլեքսային մեքենայացում և ավտոմատացում արմատավորելու միջոցով։

Վ. Ի. Լենինի անվան Հայէլեկտրագործարանում շահագործման են հանձնըվել գեներատորների, տրանսֆորմատորների հավաքման և միջանկյալ աշխատանքներ կատարելու 9 կոնվեյերներ, դետալների մշակման 9 հոսքային գծեր և երկու ավտոմատ կայանքներ։

Երևանի Կաբելի գործարանում արմատավորվել է լարերի անընդհատ վուլկանացում։

Արտադրության տեխնիկական առաջադիմության, ինչպես նաև տեխնիկայի բնագավառում արտադրության մի շարք ճյուղերի ետ մնալու պատճառները բացահայտելու գործում պարտիական, սովետական և տնտեսական կազմակերպությունների աշխատանքի վիճակը լիովին շարադրելու հավակնություն չունենալով հանդերձ, պետք է նշենք մի շարք խոշոր թերություններ, որոնց վերացումը հնարավորություն կտա զգալիորեն բարելավելու արտադրության տեխնիկան և կուլտուրան, բարձրացնելու ձեռնարկությունների գործունեության արդյունավետությունը։

Եթե ռեսպուբլիկայի արդյունաբերական խոշոր ձեռնարկություններում զգալի աշխատանք է կատարվում արտադրական պրոցեսների մեքենայացման և ավտոմատացման ուղղությամբ, ապա, ցավոք սրտի, այդ բանը չի կարելի



ասել փոքր ձեռնարկությունների մասին։ Որպես կանոն, փոքր ձեռնարկություններում արտադրական պրոցեսները գրեթե մեքենայացված չեն և զգալի չափով կիրառվում է ձեռքի աշխատանք։ Այդ ձեռնարկություններում կան արտադրական շատ պրոցեսներ, որոնցում բացակայում է նույնիսկ փոքր մեքենայացման արմատավորումը։

Բնավ չի կարելի հաշտվել այն բանի հետ, երբ ժամանակին չեն կատարվում առաջավոր տեխնիկայի և տեխնոլոգիայի մշակման ու արմատավորման պլանային առաջադրանքները։

Արդյունաբերական ձեռնարկությունների նախագծումը հաճախ կատարվում է առանց արտադրական պրոցեսների կոմպլեքսային մեքենայացման և ավտոմատացման բնագավառում գիտության ու տեխնիկայի նվաճումները հաշվի առնելու։ Դրա հետևանքով երբեմն ստացվում է այնպես, որ դեռ պլանով նախատեսված արտադրանքը չթողարկած, սարքավորումն արդեն հնանում է։ Մյուս կողմից նոր մեքենաների և կոնստրուկցիաների արմատավորումը ձգձգվում է կիսագործարանային փորձնակայանքների վրա ստուգված տեխնոլոգիական նոր ռեժիմների բացակայության պատճառով։

Ուստի անհրաժեշտ է, որ այսուհետև արդյունաբերական ձեռնարկությունների նախագծումը կատարվի այնպես, որ հաշվի առնվի արտադրության ավտոմատացումը և գիտության ու տեխնիկայի նվաճումների ժամանակակից մակարդակին համապատասխանող տեխնոլոգիական նորագույն պրոցեսների կիրառումը։

Ներկայումս մեր ռեսպուբլիկայի արդյունաբերության մեջ զբաղված են մեծ թվով ինժեներա-տեխնիկական աշխատողներ։ Ձեռնարկություններում կա գիտահետազոտական և լաբորատոր-կոնստրուկտորական հաստատությունների լայն ցանց։ Սակայն այդ կազմակերպությունների գործունեությունը խիստ պասիվ է։ Քիչ են մշակվում նոր կոնստրուկցիաներ ու տեխնոլոգիական պրոցեսներ։ Մասամբ դա բացատրվում է նրանով, որ չկան բավարար քանակությամբ փորձարկման կայանքներ, որոնք թույլ տային կատարել պրոցեսների փորձնական հետազոտություններ կամ սարքավորումների կոնստրուկտիվ և տեխնոլոգիական լրացուցիչ մշակում։

Տեխնիկական առաջադիմության գործին մեծապես խանգարում է այն արատավոր պրակտիկան, երբ արդյունաբերության որոշ աշխատողներ հիմնական ջանքերն ուղղում են նոր կապիտալ ներդրումներ ստանալու և համախառն արտադրանքն ավելացնելու նպատակին, անհրաժեշտ ուշադրություն չդարձնելով դրամական և նյութական միջոցների նպատակահարմար օգտագործման վրա։ Թերագնահատվում, իսկ երբեմն էլ արհամարհվում է ձեռնարկությունների տեխնիկական վերազինման ուղղությամբ արմատական միջոցառումների իրականացումը, որի հետևանքով արտադրության մեջ չեն արմատավորվում նոր, առավել կատարելագործված մեքենաներն ու սարքավորումները։ Բավական է ասել, որ Ժողտնտխորհի մեքենաշինության և հաստոցաշինության ձեռնարկություններում տեղադրված բոլոր հաստոցներից օպերացիոն հաստոցները կազմում են ընդամենը 17 տոկոս, ավտոմատներն ու կիսաավտոմատները՝ 4 տոկոս։ Էլեկտրատեխնիկական արդյունաբերության և հաստոցաշինության վարչության ձեռնարկություններում օպերացիոն հաստոցները կազմում են բոլոր հաստոցների ընդամենը 14 տոկոսը, ավտոմատները և կիսաավտոմատները՝ 8 տոկոսը։ Մեր տնտեսական շրջանի արդյու-

նաբերության այդ ճյուղերը հիմնականում գործում են ունիվերսալ մետաղահատ հաստոցներով, որոնց արտադրողականությունը ցածր է։ Միանգամայն անբավարար են օգտագործվում ագրեգատային հաստոցները և հոսքային գծերը։

Խոշոր թերություններ կան ձեռնարկությունների կառուցման պլանները և դրանց սարքավորումներ մատակարարելու գործը կոորդինացնելու բնագավառում, որի հետևանքով նոր կառուցվող ձեռնարկությունների համար ստացվող սարքավորումները տարիներով չեն օգտագործվում և դրանով մեծ վնաս է հասցվում ժողովրդական տնտեսությանը։ Քանաքեռի ալյումինի գործարանի մետաղաթաղանթի գլանման ցեխի համար արտասահմանից ստացված սարքավորումները ահա արդեն երեք տարի է ինչ անշարժ ընկած են, իսկ ցեխը դեռ նոր է կառուցվում։

Այս տարի Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայից Իջևանում կառուցվելիք գորգի կոմբինատի համար ստացվում է անհրաժեշտ սարքավորում։ Սակայն կոմբինատի կառուցման նախագծային-նախահաշվային դոկումենտացիան դեռ պատրաստ չէ և կոմբինատի շինարարությունը չի սկսվել։ Նույն դրությունն է նաև դաշնամուրների արտադրության ֆաբրիկայի սարքավորման գործում։

Ժողտնտխորհի Սննդի արդյունաբերության վարչության պատվերով այս տարի Հունգարական Ժողովրդական Ռեսպուբլիկայից բերվել է պահածոյի գործարանի սարքավորման 3 կոմպլեկտ։ Բայց վարչությունը նոր է միայն մտածում շինարարության նախագծային-նախահաշվային դոկումենտացիան մշակելու մասին։ Այսպիսի փաստեր շատ կարելի է թվարկել։ Դրանք ցույց են տալիս, թե ինչպես հաճախ շինարարական-մոնտաժային աշխատանքների կազմակերպման ձգձգումը թույլ չի տալիս ժամանակին օգտագործելու բարձր արտադրողական սարքավորումները։

Այդ աննորմալ վիճակին վերջ տալու համար անհրաժեշտ է վճռական պայքար ծավալել պահպանողականության և թափթփվածության դեմ։

Ձեռնարկությունների տեխնիկական կատարելագործումը պետք է դառնա ժողտնտխորհի և նրա ճյուղային վարչությունների գործունեության գլխավոր ուղղությունը։ Անհրաժեշտ է, որ Պետպլանը և ժողովրդական տնտեսության խորհուրդը հստակ կերպով պլանավորեն տեխնիկայի նոր տեսակների մշակումը և արտադրության մեջ դրանց արմատավորումը, հատուկ կարևորություն տալով համապետական նշանակություն ունեցող միջոցառումներին։

Պլանավորող օրգանների, ժողտնտխորհի, ձեռնարկությունների ղեկավարների և պարտիական կազմակերպությունների ուշադրությունը պետք է կենտրոնացվի հանրային աշխատանքը, սարքավորումները, մեքենաները, դրամական և նյութական ռեսուրսները ավելի ռացիոնալ օգտագործելու խնդիրների վրա։

ՍՄԿՊ Կենտկոմի Հունիսյան պլենումը գտավ, որ պետք է մշակվեն սարքավորումների ու մեքենաների պատրաստման և օգտագործման կարգի տիպային կանոնադրություններ։ Պլենումը խնդիր դրեց մինչև այս տարվա սեպտեմբերի մեկը առաջարկություններ մշակել տեխնիկական առաջադիմության, նոր տեխնիկայի արմատավորման և ձեռնարկությունների մասնագիտացման միջոցառումների ֆինանսավորումը բարելավելու, ինչպես նաև նոր տեխնիկայի արմատավորման տնտեսական խթաններ ստեղծելու համար։



Պլենումը նշեց, որ գործող ձեռնարկությունների տեխնիկական մակարդակի բարձրացման մասշտաբները չեն համապատասխանում կոմունիստական հասարակարգի ծավալուն կառուցման նոր խնդիրներին։

Գործող ձեռնարկությունները ժամանակին չվերակառուցելու, դրանց ընդլայնման և տեխնիկական վերազինման հնարավորությունները լրիվին չօգտագործելու հետևանքով սահմանափակվում է արդյունաբերական արտադրանքի թողարկումը, արտադրվում են ցածրորակ հաստոցներ, մեքենաներ և այլն։

Մեքենաշինության և հաստոցաշինության, էլեկտրատեխնիկական արդյունաբերության և սարքաշինության վարչությունների ձեռնարկություններում ժամանակակից տիպային մեքենաներից, հաստոցներից և սարքերից բացի թողարկվում են հնացած հաստոցներ, մեքենաներ, սարքեր և ապարատներ։ Կարելի է թվարկել մի ամբողջ շարք այդպիսի արտադրանք, որ թողարկում են Ձերժինսկու անվան գործարանը, Հոկտեմբերյանի հաստոցաշինական, Երևանի մեխանիկական գործարանները, էլեկտրատեխնիկայի ձեռնարկությունները և այլն։ Այդպիսի արտադրանքը չի համապատասխանում ժամանակակից պահանջներին։ Օրինակ, Հոկտեմբերյանի հաստոցաշինական գործարանը թողարկում է 2135 մարկայի ուղղահայաց-շաղափիչ հաստոց, որի պտույտների թիվը և մատակարարման մեծությունը 2—3 անգամ փոքր է ժամանակակից կոնստրուկցիայի այդպիսի հաստոցների համեմատությամբ։ Իհարկե, մեզ համար բնավ հաճելի չէր, երբ այդ հաստոցի նմուշներից մեկը տեսանք ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության նվաճումների ցուցահանդեսում. որի վրա գրված էր՝ «Հայաստանի Ժողտնտխորհը կարող է, բայց չի ուզում այս հաստոցը փոխարինել առավել կատարելագործված կոնստրուկցիայի հաստոցով»։

Տեխնիկական պահպանողականության վճռական հաղթահարումը հնարավորություն կտա մեքենաների հին կոնստրուկցիաները փոխարինել նորերով և դրանով իսկ զգալիորեն բարձրացնել արտադրության տեխնիկական մակարդակն ու աշխատանքի արտադրողականությունը։

Մեր զարգացման ժամանակակից փուլում արտակարգ կարևոր նշանակություն է ստանում գործող ձեռնարկությունների վերակառուցումն ու վերազինումը։

ՍՄԿՊ Կենտկոմի պլենումը հավանություն տվեց Վլադիմիրի, Սվերդլովսկի, Մոսկվայի, Լենինգրադի, Բելոռուսիայի և ուրիշ ժողտնտխորհների նախաձեռնությանը, որոնք որոշել են՝ գործող ձեռնարկությունների վերակառուցման, ընդլայնման ու վերազինման, տեխնիկայի բարելավման հիման վրա զգալիորեն ավելացնել արդյունաբերական արտադրանքի թողարկումը և ժամկետից շուտ կատարել յոթնամյա պլանը։

Մեծ խնդիրներ են կանգնած գունավոր մետալուրգիայի և լեռնահանքային արդյունաբերության ձեռնարկությունների աշխատողների առջև։ Մասնավորապես պետք է ուշադրություն դարձնել Ալավերդու պղնձա-քիմիական կոմբինատի ընդլայնման և լիակատար վերակառուցման վրա, կոմբինատը փոխադրել արտադրության առաջավոր տեխնոլոգիական սխեմայի՝ կոմպլեքսային ավտոմատացման ենթարկելով տեխնոլոգիական պրոցեսները և արմատավորել հանքաքարի վերամշակման նոր եղանակներ։

Գունավոր մետալուրգիայի հետագա զարգացման գործում կարևոր նշանակություն ունի էլեկտրոլիզի պրոցեսների կատարելագործումը։

Քանաքեռի ալյումինի գործարանի ինժեներներ Աղաբաբյանի, Սահակյանի և գիտական աշխատակից Սարգսյանի ջանքերի շնորհիվ ծնունդ է առնում ալյումինի էլեկտրոլիզի կոմպլեքսային ավտոմատացման ինքնալարվող նոր սիստեմ։

Այդ կապակցությամբ պետք է ասել, որ մեզ մոտ դեռ չկա ոչ մի կազմակերպություն, որին կարելի լիներ պատվիրել նոր կոնստրուկցիայի մեքենաների պատրաստումը։ Երբ հարկ է լինում պատվիրել նոր կոնստրուկցիայի մեքենա, ապա պարզվում է, որ գործի ելքը մեծապես կախված է այս կամ այն աշխատողի քմահաճույքից։ Պարզվում է, որ ոչ ոք պարտավոր չէ նոր մեքենաներ ստեղծել և, եթե լավ առաջարկությունները տարիներով կիրառում չեն գտնում, ապա դրա համար ոչ ոք պատասխանատու չէ։

Տեխնիկական առաջադիմության նախաձեռնությանը անհրաժեշտ ասպարեզ տալու, արտադրության ավտոմատացման առաջարկությունները արտադրության մեջ ժամանակին արմատավորելու համար անհրաժեշտ է լրջորեն մտածել նոր տեսակի ավտոմատներ ստեղծելու համար գիտա-տեխնիկական և արտադրական բազա ունենալու մասին։

Հաստոցաշինական բոլոր գործարաններում պետք է նախատեսվի հոսքային գծերի, բարձր արտադրողական ագրեգատների և հատուկ հաստոցների հավաքման կոնվեյերների, կենտրոնացված ձուլման, ճնշման տակ ձուլման և մի շարք այլ միջոցառումների լայն արմատավորումը։ Լայն կիրառում պետք է ստանան ֆլյուսի տակ և չեզոք միջավայրում ավտոմատ զոդում կատարող կայանքները, որպեսզի հնարավորություն ստեղծվի աշխատանքի արտադրողականությունը շեշտակիորեն բարձրացնելու և զոդված կոնստրուկցիաների որակը բարելավելու համար։

Սարքաշինական արդյունաբերությունը պետք է յուրացնի Երևանի մաթեմատիկական մեքենաների գիտահետազոտական ինստիտուտի կողմից մշակվող հաշվիչ-լուծիչ էլեկտրոնային մեքենաների արտադրությունը։ Արտադրական բարդ պրոցեսների կառավարման գործում հաշվիչ-լուծիչ մեքենաների օգտագործումը ոչ միայն հնարավորություն կստեղծի առանձին պրոցեսներ կոմպլեքսային ավտոմատացման ենթարկելու համար, այլև թույլ կտա լուծելու ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի զարգացման ավելի բարդ գիտական ու տեխնիկական հարցեր։

Պետք է լուրջ ուշադրություն դարձնել շինարարության ինդուստրիալ բազային, շինանյութերի արտադրությանը։ Ռեսպուբլիկայի Պետպլանին և Ժողտնտխորհին կարելի է կշտամբել այն բանի համար, որ չնայած շինարարության ինդուստրացման մակարդակը ետ է մնում նրա առաջ դրված խնդիրներից, շինարարության աճման տեմպից, չնայած, որ շինարարության ինդուստրացման մակարդակի տեսակետից ռեսպուբլիկան վերջին տեղերից մեկն է գրավում միության մեջ, յոթնամյա պլանի կոնտրոլ թվերը կազմելիս նկատի չեն ունեցել, որ անհրաժեշտ է արագացնել շինարարական ինդուստրիայի ձեռնարկություններ ստեղծելու տեմպը։ Այդ ձեռնարկությունների գործարկումը նախատեսվել է միայն յոթնամյակի վերջին տարում։ Ընդսմին, Պետպլանի նախագծումների համաձայն թողարկվող գործարանային կոնստրուկցիաների ծավալը նույնիսկ յոթնամյակի վերջում չի բավարարում շինարարության կարիքներին։ Հայաստանի Կոմպարտիայի Կենտկոմը ուշի-ուշով քննարկեց այդ հարցերը և կապիտալ շինարարության յոթնամյա պլանին համապատասխան՝ շինարարության ինդուստրիալ բազա ստեղծելու միջոցառումներ մշակեց։

Թեթև արդյունաբերության մեջ նույնպես պետք է համարձակորեն հին սարքավորումը փոխարինել նորով, իրագործել միջոցառումներ կրճատ պրոցեսների անցնելու համար։

ՍՄԿՊ Կենտկոմի պլենումը խնդիր դրեց՝ իրագործել մի շարք արմատական միջոցներ արդյունաբերության, շինարարության, տրանսպորտի և գյուղատնտեսության մեջ ձեռքի ծանր աշխատանքը վերացնելու վերաբերյալ։

Որպես առաջնահերթ և անհրաժեշտ խնդիր, պլենումը պահանջեց վերացնել ձեռքի ծանր աշխատանքը լեռնահանքային արդյունաբերության մի շարք արտադրական պրոցեսներում, սև և գունավոր մետալուրգիայի, մեքենաշինության, քիմիական արդյունաբերության, շինանյութերի արդյունաբերության, տրանսպորտի, գյուղատնտեսության և մի քանի այլ ճյուղերի արտադրական պրոցեսներում։

ՍՄԿՊ Կենտկոմի Հունիսյան պլենումը պահանջեց ստեղծել և արտադրության մեջ լայնորեն արմատավորել ռադիոէլեկտրոնային տեխնիկայի սարքեր, ուշադրությունը և նյութական ռեսուրսները կենտրոնացնել տեխնիկական պրոգրեսի կարևորագույն ուղղություններում՝ առավելագույն արդյունքների հասնելու համար։

Արտադրական պրոցեսների մեքենայացման և կոմպլեքսային ավտոմատացման գործում մեծ ավանդ են մտցնում ռացիոնալիզատորներն ու գյուտարարները։ Բավական է ասել, որ Ժողտնտխորհի կազմակերպման օրից ի վեր ռեսպուբլիկայի արդյունաբերության ձեռնարկություններում կիրառվել է ավելի քան 12 հազար ռացիոնալիզատորական առաջարկ, տեխնիկական կատարելագործումներ ու գյուտեր, որոնց տարեկան տնտեսական արդյունավետությունը ավելի քան 90 միլիոն ռուբլի է։ Դա պարտիական կազմակերպություններին պարտավորեցնում է շարունակ աշխատել ռացիոնալիզատորների հետ, ժամանակին նկատել նորը և համարձակորեն արտադրության մեջ արմատավորել առաջավոր փորձը։

ՍՄԿՊ Կենտկոմի Հունիսյան պլենումի որոշումների կատարումը պահանջում է բազմակողմանիորեն և ինքնաքննադատաբար վերլուծել մեր ամբողջ գործունեությունը և ամենից առաջ մեր գործունեությունը տեխնիկական պրոգրեսի բնագավառում, վճռականորեն հաղթահարել արտադրության ղեկավարման գործում եղած թերությունները։

Գլխավորն այն է, որ պետք է վերանայել և արմատապես կատարելագործել արտադրության միջոցների արտադրության բնագավառում մեր կատարած աշխատանքը։ Առանց դրա հնարավոր չէ արտադրության տեխնիկայի արմատական բարելավումը։

Անհրաժեշտ է ուսումնասիրել, թե ինչպիսի՞ սարքավորում, մեքենաներ, հաստոցներ և սարքեր ենք արտադրում։ Ինչի՞ համար ենք գործադրում դրամական և նյութական միջոցները։ Ինչի՞ համար ենք արտադրում հնացած սարքավորումը։ Հարկավոր է վերջ տալ այս աննորմալ վիճակին։ Այս գործում մենք չպետք է խնայենք ոչ մեզ, ոչ էլ մեր ընկերներին։ Հարկավոր է համարձակորեն փոխել հին սարքավորումը նորերով։ Ժողտնտխորհի և արդյունաբերական ձեռնարկություններ ունեցող մյուս գերատեսչություններում

պետք է ստեղծել ինժեներա-տեխնիկական աշխատողների տեխնիկական հանձնաժողովներ՝ առաջավոր բանվորների հետ միասին տվյալ ձեռնարկության տեխնիկական առաջադիմության խնդիրները որոշելու համար։ Այդ հանձնաժողովները պետք է որոշեն, թե որ սարքավորումը հարկավոր է փոխարինել նորերով, ինչ ձեռնարկումներ պետք է կատարել կոմպլեքսային մեքենայացման ու ավտոմատացման ասպարեզում։ Պետք է ջարդել հինը, հաղթահարել կոնսերվատիզմը տեխնիկայի բնագավառում։ Այդ նպատակով հարկավոր է կոնկրետ միջոցառումներ մշակել ցեխերում, գործարաններում, կառույցներում, վարչություններում և ամբողջ ժողտնտխորհում։ Պետք է որոշել տեխնիկական առաջադիմության միջոցները և նրանց իրականացման ժամկետները։ Հարկավոր են մի շարք արմատական միջոցառումներ, որոնց իրագործումը միջոցների տնտեսում տա։ Անհրաժեշտ է ժողտնտխորհի գծով կենտրոնական ձուլարան ստեղծել և լուծել ղոդման գործարանի կազմակերպման հարցը, որը ունենա սեփական ղոդող բրիգադաներ և սպասարկի ժողտնտխորհի բոլոր ձեռնարկությունները։ Ժամանակն է կարգավորելու հաստոցամամլակային տնտեսությունը և դետալների շտամպումը, արագացնել գործիքների արտադրության կազմակերպումը։ Հարկավոր է և՛ս մեկ անգամ լուրջ կերպով վերանայել նոր գործարանների շինարարության հարցը։

Պետք է խոստովանել, որ մենք շինարարությունը դեռևս վատ ենք ղեկավարում։ Ներկայումս ժողտնտխորհում շինարարության ասպարեզում կան շատ աղաղակող թերություններ, որոնց համար պետք է կշտամբել ժողտնտխորհի ղեկավարությանը։

Ժամանակն է, որ ընկերները հասկանան, թե այդպես աշխատել չի կարելի և յուրաքանչյուրն իր տեղամասում պետք է պահպանի պարտիական և պետական կարգապահությունը ու արդարացնի իրեն տածած վստահությունը։

Այս կապակցությամբ մենք կուզենայինք նշել պետական կարգապահության մասին՝ արդյունաբերության, շինարարության, գյուղատնտեսության և մյուս ճյուղերում։ Վերցնենք թեկուզ կոոպերացված մատակարարումների պլանի կատարման հարցը։ Հայաստանի էլեկտրագործարանը, ժամացույցների, կոմպրեսորների գործարանները, Լենինականի հեծանիվի գործարանը, Իջևանի անտառամշակման գործարանը և շատ այլ ձեռնարկություններ սիստեմատիկորեն խախտում են պետական կարգապահությունը և չեն կատարում կոոպերացված մատակարարումները։

Կոոպերացված մատակարարումների պլանների չկատարելը պետք է դիտել որպես տեղայնության դրսևորում և մեղավորներին պատժել։ Անհրաժեշտ է ընդգծել, որ կոոպերացված մատակարարումներ չկատարողները վիժեցնում են ոչ միայն իրենց ձեռնարկությունների աշխատանքը, այլև վտանգում են արդյունաբերության մյուս օբյեկտների առաջադրանքների կատարումը։

Շատ ձեռնարկություններ, դժբախտաբար, դրանց թվում նաև այնպիսի լավ գործարաններ, ինչպիսիք են Երևանի Հայէլեկտրագործարանը, Ձերժինսկու անվան հաստոցաշինական գործարանը, ավտոպահեստամասերի և կոմպրեսորների գործարանները, էլեկտրալամպերի գործարանը և այլն, թողարկում են անորակ արտադրանք։ Էլեկտրալամպերի գործարանը միայն 1959 թվականի առաջին կիսամյակում ստացել է 74 գանգատ։ Ինչ վերաբերում է կահույ-



քի արդյունաբերությանը, ապա մենք չգիտենք թե ինչ լեզվով պետք է խոսել այդ արդյունաբերության ղեկավարների հետ։ Նրանք կարծես տեսնում են, թե որտեղ ինչ լավ կահույք են թողարկում, ուսումնասիրում են նրանց փորձը, սակայն իրենք շատ դանդաղ են բարելավում արտադրանքի որակը։ Մեզ մոտ կահույքի որակը շատ ցածր է և անհարմար։

Պետք է ասել, որ շատ գանգատներ են ստացվում նաև գինու արդյունաբերության հասցեով։ Մեզ մոտ գինիների որոշ տեսակներ պղտոր են և լայն սպառում չեն գտնում։ Բայց տարօրինակ է, որ պղտորություն և նստվածքներ են ստացվում վաճառվող հանքային ջրերում։ Անհրաժեշտ է վերացնել այս կարգի թերությունները։ Հարկավոր է ընկերները հասկանան, որ արտադրանքի ցածր որակը մեծ կորուստների է հանգեցնում, վնասելով ժողովրդական տնտեսությանը։ Այն անփույթ ղեկավարներն ու մասնագետները, որոնք ցածրորակ արտադրանք են տալիս, պետք է խստիվ պատժվեն։ Այստեղ էլ պետք է պետական կարգ ու կանոն հաստատվի։

Մեզ մոտ պարտիայի և կառավարության ցուցումները բավականաչափ հստակությամբ չեն կատարվում նաև գունավոր մետաղների տնտեսման հարցում։ Ժամանակն է, որ այդ բնագավառում աշխատող ընկերները համապատասխան եզրակացություն անեն։

Կան արդյունաբերության այնպիսի աշխատողներ, որոնք մի քանի տարի շարունակ արտադրության պլանները չեն կատարում։ Կան տեխնիկայի ասպարեզում պահպանողականներ, որոնք չեն ըմբռնում այն պատճառները, որոնք նրանց խանգարում են աշխատանքում։ Բայց, դժբախտաբար, նրանք դեռ մնում են իրենց պոստերում։ Չպետք է կարծել, թե մենք փոխարինողներ չունենք։ Մենք ունենք առաջավոր շատ մասնագետներ, մասնագետ պրակտիկներ, որոնք կարճ ժամանակամիջոցում կկարողանան տիրապետել այդ արվեստին։ Հետևաբար պետք է լայն ճանապարհ տալ մեր երիտասարդ մասնագետներին, իսկ աշխատանքում իրենց չարդարացնողներին ուղարկել ցածր աշխատանքի։

Անդրադառնալով տեխնիկական պրոգրեսին, անհրաժեշտ է նշել, որ ժողովրդական տնտեսության խորհրդում հարկավոր է ստեղծել այնպիսի օրգան, որը մշտապես զբաղվի տեխնիկայով։ Ճիշտ է, մենք ստեղծել ենք Տեխնիկական վարչություն և բացի դրանից գոյություն ունի այնպիսի օրգան, ինչպիսին է ՊԳՏԿ-ն։ Սակայն կարծում ենք, որ Ժողտնտխորհը Մինիստրների Սովետի հետ միասին կմտածեն, որպեսզի ժողտնտխորհին կից ստեղծվի տեխնիկայի գծով այնպիսի օրգան, որը մշտապես ոչ միայն հսկի տեխնիկայի արմատավորման միջոցառումների իրականացումը, այլև տեխնիկայի գծով իսկական նախաձեռնող լինի։ Կարծում ենք, որ հարկավոր է ստեղծել տեխնիկային աջակցող հանձնաժողովներ գործարաններում, քիմիական արդյունաբերության ձեռնարկություններում։

Հանրահայտ է, թե ՍՍՌՄ-ում գիտությունը և տեխնիկան ինչ բարձունքների են հասել։ Սովետական սոցիալիստական սիստեմի առավելությունների, գիտա-տեխնիկական պոտենցիալի առավել լրիվ բացահայտման շնորհիվ մեր Հայրենիքը գլխավորում է համաշխարհային գիտա-տեխնիկական պրոգրեսը։ Արդյունաբերության և շինարարության կառավարման վերակառուցումը բարենպաստ պայմաններ է ստեղծել գիտության և կյանքի մերձեցման համար։

Ժողտնտխորհը արդյունաբերական խոշոր ձեռնարկություններում ստեղծել

է նոր գիտահետազոտական ինստիտուտներ, ֆիլիալներ, կոնստրուկտորական բյուրոներ, լաբորատորիաներ և այլ գիտական հիմնարկների որոշ օջախներ, որոնք անցել են ժողտնտխորհի իրավասության տակ և դարձել են գիտահետազոտական հիմնարկներ։ Դրանք որակական նոր երևույթ են մեր ձեռնարկությունների կյանքում։

Այս կապակցությամբ պետք է ասել, որ ռեսպուբլիկայի Գիտությունների ակադեմիան և գյուղատնտեսության գիտական ինստիտուտները բավականաչափ հաշվի չեն առնում արդյունաբերության և շինարարության կառավարումը վերակառուցվելուց հետո կուտակված փորձը, շարունակում են լայնացնել գործող հիմնարկները և ստեղծել նորերը, որոնք անմիջապես կապված չեն արտադրության հետ։ Ի՞նչ արդյունք է ունեցել այդպիսի գիտական հիմնարկների կազմակերպումը։ Դրանց կազմակերպումը հանգեցրել է նոր ապարատի ստեղծման, որը զբաղված է երկրորդական աշխատանքով, հանգեցրել է վարչա-տնտեսական ապարատի ավելացման։

Մենք բոլորս հասկանում ենք գիտության մեծ նշանակությունը, սակայն մենք ճիշտ չենք համարում, երբ մի շարք գիտահետազոտական հիմնարկներում մարդկանց որոշ մասը ոչ մի օգուտ չի տալիս։ Հո չի կարելի մարդկանց պահել միայն նրա համար, որ զբաղվեն դիսերտացիայի պաշտպանությամբ։ Մեզ համար ձեռնտու չէ կյանքի պահանջներից, գիտության խնդիրներից ետ մնալը։ Ունենալով շատ հիանալի գիտնականներ, որոնցով մենք իրավամբ հպարտանում ենք, հարկավոր է ձգտել, որ մեր գիտական աշխատողները հավասարվեն առաջավորներին և գիտության ու արտադրության աշխատողների միջև սերտ համագործակցություն հաստատվի։ Հարկավոր է մշակել տեխնիկայի բուռն աճման միջոցառումներ։

Այս նպատակով անհրաժեշտ է յուրաքանչյուր գիտահետազոտական հիմնարկի և ամեն մի գիտական աշխատողի առջև դնել գիտական աշխատանքի և տեխնիկական առաջադիմության կոնկրետ խնդիրներ։ Պետք է սահմանել դրանց կատարման ժամկետներ և նրանց պատասխանատու դարձնել այդ խնդիրները որակով և ժամանակին կատարելու համար։

Արտադրության աշխատողներին ընդգրկել գիտության ոլորտը, իսկ գիտնականներին՝ արտադրության ոլորտը, ահա այն ուղին, առանց որի չի կարելի խոսել տեխնիկական առաջընթացի մասին։ Մեզ թվում է, որ Գյուղատնտեսության մինիստրության և Գիտությունների ակադեմիայի գիտա-հետազոտական ինստիտուտները միայն դիսերտացիաներ պաշտպանելու համար չեն ստեղծված, այլ նրանք գիտա-հետազոտական խոր աշխատանքի ասպարեզ են կյանքի համար։ Այդ պատճառով մեզ թվում է, որ հետագայում հարկավոր է կարգավորել աշխատողների ընդունումը գիտա-հետազոտական ինստիտուտներում։

Մեծ ուշադրություն պետք է նվիրել կոնստրուկտորական բյուրոների լաբորատորիաների ստեղծմանը, իսկ խոշոր ձեռնարկություններում գիտա-հետազոտական ինստիտուտների ստեղծմանը։ Հարկավոր է, որ Պետպլանը մշակի այդ հիմնարկների և նրանց համար տեխնիկական բազաների հեռանկարային պլան։

Պետպլանը պետք է մշակի կադրերի պատրաստման հեռանկարային պլան՝ ժողովրդական տնտեսության կարիքների համար ըստ պրոֆեսիաների։ Հետևաբար, պետք է որոշել յուրաքանչյուր ինստիտուտի պրոֆիլը։ Հարկավոր է ուշադրություն նվիրել հեռակա և երեկոյան ուսուցմանը, ինչպես նաև տեխնիկական միջին կրթություն ունեցող մասնագետների պատրաստմանը։



Ժամանակն է ուշադրություն նվիրել այն խոչընդոտների հաղթահարմանը, որոնք կան այդ գործում, ինչպես նաև արտադրությունից ասպիրանտներ պատրաստելուն։ Հարկավոր է ամեն ինչ ենթարկել կոմունիզմի զարգացման կենսական շահերին, որտեղ կյանքն է, այնտեղ էլ պետք է լինի գիտությունը։

Այժմ կանգ առնենք գյուղատնտեսության մի քանի հարցերի վրա։ Հարկավոր է կարգավորել գյուղատնտեսական կադրերի հետ կատարվող աշխատանքը։ Պետք է ասել, որ գյուղը ետ է մնում կադրերի պատրաստման գործում։ Հայտնի է, որ մեզ մոտ մի տեղում ձախողված մարդիկ հաճախ ոչ պակաս կարևոր աշխատանքի են անցնում այլ բնագավառներում։

Անհրաժեշտ է կադրերը տեղադրել ըստ նրանց արժանիքների, ապահովել երիտասարդների առաջքաշումը։

Կարևոր է ունենալ կոլտնտեսությունների լավ նախագահներ, լավ բրիգադավարներ, իսկ մեր պարտիական կազմակերպությունները դեռևս այդ գործով վատ են զբաղվում։ Ասում են լավ է այն նախագահը, որն ավելի շատ դրամ է բաշխում ըստ աշխօրերի։ Դա ճիշտ չէ։ Մի քանի ընկերներ պոկողական տրամադրություններ են ցուցաբերում։ Աշխատում են ավելի շատ բաշխել, որ նվաճեն կոլտնտեսականների հարգանքն ու համակրանքը, դառնան «լավ-մարդ»։ Սակայն դրանով նրանք բարոյապես քայքայում են մարդկանց, խանգարում են նրանց կոմունիստական դաստիարակությանը։ Պարտիայի շրջկոմները հատուկ ուշադրություն պետք է նվիրեն իրենց ղեկավարած կոլտնտեսություններում ու սովխոզներում կազմակերպական աշխատանքին։

Վերջերս հրապարակվեց ՍՍՌՄ Գերագույն Սովետի Նախագահության Հրամանագիրը Վալենտինա Գագանովային Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի կոչում շնորհելու մասին։ Այդ բանվորուհին, որը բարձր էր վարձատրվում, կամավոր կերպով թողեց առաջավոր բրիգադան, նվազ աշխատավարձով անցավ ետ մնացող բրիգադան և նրան առաջ մղեց առաջավորների շարքը։ Ահա սա կոմունիստական վերաբերմունք է դեպի աշխատանքը։ Եկեք այդ փաստից մեզ համար հետևություն անենք։ Եկեք ազատվենք ոչ պիտանի մարդկանցից, կոլտնտեսություններն ուղարկենք առաջավոր մարդկանց, որոնք անհատական շահերը կզոհաբերեն հասարակական շահերին, այնպիսի մարդիկ, որոնք շահագրգռված կլինեն հանրային տնտեսության արագ զարգացմամբ։ Եկեք ընտրենք այդպիսի մարդկանց։

Մի քանի խոսք անասնաբուծության մասին։

Այս բնագավառում մեր պարտավորությունները դեռևս վատ ենք կատարում, առանձնապես կաթի արտադրության գծով։ Մենք ետ ենք մնում նույնիսկ անցած տարվա մակարդակից։ Հարկավոր է օգտագործել բոլոր հնարավորությունները, բոլոր կոլտնտեսություններում սահմանել կաթի արտադրության տասնօրյակային առաջադրանքներ, որպեսզի մեկ ամսվա ընթացքում հասնենք անցյալ տարվա մակարդակին, իսկ մյուս ամիսներին՝ գերազանցենք։

Մենք այդ հնարավորություններն ունենք. ոչ մի տարի մեզ մոտ խոտն այնքան լավ չի եղել, որքան այս տարի։ Հուլիս ամսին այնպիսի խոտ կա, ինչպիսին լինում է մայիսի վերջերին, կամ հունիսի սկզբներին՝ հյութալիության տեսակետից։ Այդ հնարավորությունները պետք է օգտագործել։ Ան-

հրաժեշտ է լուրջ միջոցառումներ կիրառել, որպեսզի մոտ ժամանակներում մեծապես աճի հանրային անասունների գլխաքանակը և ճշտորեն պահպանվի գյուղատնտեսական արտելի Կանոնադրությունը՝ կոլտնտեսականների անձնական օգտագործման համար նախատեսված անասունների գլխաքանակի վերաբերյալ։ Եթե մենք դրան կարևոր քաղաքական նշանակություն չտանք, ապա դրությունը չենք կարող բարելավել։

Պարտիական կազմակերպությունները կոչված են ուշի ուշով ուսումնասիրելու այն առաջարկները, որ ստացվում են գործարաններում, կառույցներում, գյուղատնտեսության մեջ և այլ վայրերում, մեծ ուշադրություն նվիրելու նրան, որպեսզի նպաստեն նորի ստեղծմանն ու արտադրության մեջ արմատավորմանը։

Հարկավոր է, որ սոցիալիստական մրցությունը մեզ մոտ էլ ավելի ծավալվի և որ սոցիալիստական մրցության մեջ որակական ցուցանիշները կարևոր տեղը գրավեն։ Անհրաժեշտ է, որ պարտիական կազմակերպությունները աշխատանք ծավալեն բանվորներին, ինժեներներին, տեխնիկներին սովորեցնելու ասպարեզում, լուրջ ուշադրություն նվիրեն արտադրության ավտոմատացմանը, որը պահանջում է մեծ գիտելիքներ և հատուկ պատրաստություն։

Հարկավոր է պարտիական կազմակերպությունների աշխատանքը այնպես վարել, որ յուրաքանչյուր կոմունիստ իրեն պատասխանատու զգա գործերի վիճակի համար այն տեղամասում, որտեղ նա աշխատում է։

Բոլորին հայտնի է, որ մեր պարտիայի Կանոնադրությամբ սահմանված է ադմինիստրացիայի գործունեության նկատմամբ սկզբնական պարտկազմակերպության վերահսկողության ֆունկցիան։ Իսկ ինչո՞ւմ պետք է արտահայտվի այդ ֆունկցիան։ Ի՞նչ միջոցներով պետք է իրագործվի արտադրական և առևտրական ձեռնարկությունների ադմինիստրացիայի գործունեության նկատմամբ վերահսկողության ֆունկցիան։ Մեր պարտիայի Կենտկոմը այդ հարցի առթիվ որոշում է ընդունել, որը հրապարակվել է մամուլում։

Հարկավոր է, որ պարտիայի Կենտրոնական Կոմիտեն, քաղկոմներն ու շրջկոմները և սկզբնական կազմակերպությունները ժամանակ առ ժամանակ լսեն գործարանների դիրեկտորների, կառույցների, ձեռնարկությունների, կոլտնտեսությունների ղեկավարների հաշվետվությունները այն առթիվ, թե ինչպես է արմատավորվում նոր տեխնիկան, ինչպես են կատարվում ստանձնած պարտավորությունները, ինչ միջոցառումներ են ձեռնարկվում տնտեսության և տեխնիկայի հետագա զարգացման համար։ Պետք է բոլոր միջոցները ձեռնարկել, որպեսզի մեր պարտիական, սովետական, տնտեսական, կոմերիտական և արհմիութենական կազմակերպությունների գործունեությունը բարելավվի և մեր աշխատանքում ձեռք բերվեն առավելագույն արդյունքներ։

ՍՄԿՊ XXI համագումարը մշակեց մեր երկրում կոմունիզմի կառուցման ծավալուն ծրագիր։ ՍՄԿՊ Կենտկոմի Հունիսյան պլենումը նշեց XXI համագումարի՝ կոմունիզմ կառուցողների համագումարի մեծ նախագծումների իրագործման կոնկրետ ուղիները։ Զինված մարքսիզմ-լենինիզմի ամենահաղթ ուսմունքով, սովետական ժողովուրդը առաջ է ընթանում մեծ Լենինի նշած ուղիով, մարդկության համար ճանապարհ հարթելով դեպի կոմունիզմը։

---

# ԿՈՄՈՒՆԻԶՄ ԿԱՌՈՒՑՈՂՆԵՐԻ ԲԱՐՈՅԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ

## Ա. ԱԴՈՅԱՆ

Որպես հասարակական գիտակցության մի ձև, բարոյականությունը նույնքան հին է, որքան մարդկային հասարակությունը։ Բխելով մարդկանց սոցիալ-տնտեսական հարաբերություններից, բարոյականության հասկացություններն ու պրակտիկ նորմերը միշտ էլ ծառայել են նրանց հասարակական գործունեությանը։ Որպես մարդկանց բարդ կապերի մարմնավորում, բարոյական նորմերը հասարակական տարբեր ժամանակաշրջաններում անշուշտ տարբեր բնույթ են ունեցել։ Զերծ լինելով պարտադրականությունից, զանազանվելով իրավական նորմերից, մարդկանց առօրյա նիստ ու կացը դրսևորող բարոյական նորմերը միշտ էլ խոշոր դեր են խաղացել, և շարունակում են խաղալ հասարակական կյանքում։

Հերքելով բուրժուական գաղափարախոսների թյուր և ռեակցիոն ըմբռնումները բարոյականության «աստվածային», «բացարձակ» և «հավիտենական» էության վերաբերյալ, մարքսիզմ-լենինիզմը պատմության մեջ առաջինը մշակեց գիտական էթիկա (բարոյախոսություն)։ Պատմության մատերիալիստական ըմբռնումը ծանրակշիռ փաստերով հիմնավորեց այն միտքը, որ բարու և չարի, արդարության և անարդարության, պատվի և անպատվության հասկացությունները եղել են և մնում են դեռ իրարամերժ ու փոխվում են պատմական զարգացման համընթաց։ Բարոյականությունը որպիսի նորմերով էլ արտահայտվի, վերջին հաշվով պայմանավորված է հասարակական տընտեսական կյանքով, ներթափանցում է մարդու պարտականությունը հասարակության և իր նմանի նկատմամբ։

Ֆ. Էնգելսը քանիցս շեշտել է, որ դասակարգային հասարակության մեջ ամեն մի բարիք մեկի համար՝ անհրաժեշտաբար չարիք է մյուսների համար։ Ստրկատերերը, ֆեոդալական արիստոկրատիան, բուրժուազիան և պրոլետարիատն իրենց բարոյականություններն ունեն։ Միաժամանակ և զուգահեռ գոյություն ունեցող բարոյականության թեորիաների մեծ խմբերը (քրիստոնեական-ֆեոդալական, արդի-բուրժուական և պրոլետարական), «միևնույն պատմական զարգացման երեք տարբեր աստիճաններն են արտահայտում, հետևապես դրանք մի ընդհանուր պատմական հող ունեն, և այդ իսկ պատճառով նրանք չեն կարող ընդհանուր շատ գծեր չունենալ» («Անտիդյուրինգ», էջ 120)։ Ուստի և բնական է, որ մասնավոր սեփականության վրա հիմնված հասարակության պայմաններում բոլոր ժողովուրդների մոտ «մի գողանար» պատվիրանը բարոյական է։

Իրականում միայն պրոլետարական բարոյականությունն է օժտված տևականության տարրերով. միայն այն է արտահայտում առաջավոր մարդկության ապագայի ռեալ իղձերը։ Մերժելով բարոյական որևէ հավիտենական, վերջ-

նական և անփոփոխ օրենք, մարքսիզմն ապացուցեց, որ դասակարգային հասարակությունների օրոք բարոյականությունն էլ դասակարգային է։ Լենինը բազմիցս նշել է, որ շահագործողական հասարակության մեջ դաստիարակվելով, մարդիկ մոր կաթի հետ յուրացնում են այն հոգեբանությունը և սովորությունը, որի համաձայն կամ ստրուկ կամ թե ստրկատեր պետք է լինես, կամ դու կաշխատես ուրիշի համար, կամ մեկ ուրիշը՝ քեզ համար։ Բնական է, որ նման հասարակության ժամանակ յուրաքանչյուր ոք միայն իր անձի բարօրության մասին է հոգում։ Դա էլ մարդուն իր նմանի համար գայլ է դարձնում։ Բուրժուական բարոյախոսության բովանդակությունը Շեյլոկի, Գոլովլյովի և Ջիմզիմովի շահերի պաշտպանության արդարացումն է։

Սոցիալիստական ռևոլյուցիան հիմնովին կործանելով հին աշխարհը, կործանեց և նրա բարոյականությունը։ Գծում անհատի անձնական հարստության տենչին, փոխարինեց հասարակական հարստության բարոյական տենչը։ Այդպիսով, ռեալ հիմքեր ստեղծվեցին առաջավոր մարդկանց բարոյականկոմունիստական երազների իրագործման համար։ Սակայն այդ երազների իրագործումը դժվարանում էր նաև այն պատճառով, որ կոմունիզմ կառուցող մարդկային մասսաներն այն նյութից են, «որը փչացվել է դարերի ու հազարամյակների ստրկությամբ, ճորտությամբ, կապիտալիզմով... Բոլորի կողմից բոլորի դեմ մղվող պատերազմով» (Լենին, Երկեր, հ. 28, էջ 502)։

Երբ բժիշկը, ինժեները, ուսուցիչը կամ ծառայողը խորհում է՝ թե գործ չունի ուրիշի հետ, որ նրան չի վերաբերում ուրիշի կենսավիճակը, դա Լենինը համարում էր ոչ կոմունիստական։ Նա ասում էր, որ կոմունիստական դաստիարակությունը սկսվում է կոմունիզմի ավարտի համար մղվող պայքարում, էգոիստների, գողողների, անձնական շահի տենդով տառապողների դեմ մղվող պայքարում։ Հետևաբար, կոմունիստական էթիկայի հիմքը՝ բոլոր տեսակի շահագործողական հարաբերությունների ոչնչացման և կոմունիստական հասարակության ավարտի համար ծավալվող պայքարն է։

Էնգելսն ասում էր, որ դասակարգային հակասություններից զերծ և դրանցից բարձր կանգնած բարոյականություն՝ իսկական մարդկային բարոյականություն, հնարավոր կլինի լոկ այն ժամանակ, երբ անհետացած կլինեն դասակարգային հակադրություններ արտահայտող հոգեբանության տարրերն ու հիշողությունները։ Այստեղից երբեք չի հետևում, որ բարոյականության առաջադիմությունը դադարել է տեղում։ Ընդհակառակը, պարեզում մարդկային պատմությունը դոփել է տեղում։ Ընդհակառակը, մարքսիզմ-լենինիզմը ցույց տվեց, որ ինչպես մարդկային մտքի բոլոր բնագավառներում, այնպես և բարոյականության ոլորտում նշանակալի պրոգրես է եղել։ Սակայն իմպերիալիզմի դարաշրջանում իր անկումից խելակորույս բուրժուազիան վաղուց հրաժարվել է անցյալի բարոյական համեմատական պրոգրեսիվ ժառանգությունից և ապավինել է հրի ու սրի, ժողովուրդների բնաջնջման մորալին։ Եվ ոչինչ զարմանալի չկա, երբ այսօր ատոմային «մորալը» նրա բարոյական անկման վախճանակետն է։

Միայն կոմունիստական բարոյականությունն է մինչև օրս եղած բոլոր բարոյականություններից կատարյալը և ամենամարդկայինը։ Նա է միայն իր մեջ պարփակում բոլոր ժողովուրդների բարոյականության դրական՝ աշխատավորների ձգտումներն արտահայտող պրոգրեսիվ և հումանիստական ոգին։

Պատմական հանգամանքների բերումով պրոլետարիատն ամենառևոլյուցիոն հասարակական ուժը լինելով, դասակարգային կռվի առաջին իսկ մար-



տերից սկսած մինչև ռևոլյուցիոն փառավոր ընդվզումները, դրսևորել է իր բարոյական հայացքներն ու վարքագիծը, որոնք ձուլվել ու զարգացել են բուրժուազիայի դեմ մղվող պայքարում։ Ռևոլյուցիոն ցույցերում, գործադուլներում, ընդհատակյա դաժան կյանքում, միջազգային կազմակերպություններում ծայր առավ ու զարգացավ կոմունիստական բարոյական վեհ ըմբռնումը։ Մարքսիզմը բազմակողմանիորեն ձևակերպեց և գիտականորեն հիմնավորեց միջազգային պրոլետարիատի ինտերնացիոնալիստական, դասակարգային էթիկան։ Այն փարթամորեն աճեց ու ծավալվեց հատկապես Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի հաղթանակից հետո։

Սոցիալիստական ռևոլյուցիայի բարիկադներում, հայրենական պատերազմի գոռ մարտերում, սոցիալիստական շինարարության ստեղծարար առօրյայում վիթխարի ուժգնությամբ փայլատակեց պայքարում կուտակված կոմունիստական մորալի կենսաբեր լիցքը, մորալ, որը մեծագույն դեր խաղաց մեր երկրում սոցիալիզմի լիակատար ու վերջնական հաղթանակի գործում։ Կոմունիստական բարոյականությունն այն ուժն է, որով միջազգային ռևոլյուցիոն պրոլետարիատը խափանեց իմպերիալիստների փորձերը ճնշելու Հոկտեմբերի նվաճումները։ Այդ նույն կոմունիստական բարոյական շաղախն է, որ այսօր էլ ցեմենտել է իրար սոցիալիզմի լագերի ժողովուրդներին։ Կոմունիստական բարոյականության հմայքն է բոլոր ճնշված և կեղեքված ժողովուրդներին համախմբել սոցիալիզմի և խաղաղության ալեծածան դրոշի ներքո։

Մերկացնելով բուրժուական բարոյականության ստրկացնող էությունը, մարքսիզմը գիտականորեն բացատրեց բարոյական ոլորտի «նուրբ» և «խճճված» հարցերը, ստեղծեց մարդկային բարոյականության դասակարգային ըմբռնում։ Այսպիսով, մարքսիստական-լենինյան էթիկան ոչ այլ ինչ է, եթե ոչ իրականում զարգացող կոմունիստական բարոյականության գիտական թեորիան։ Այդ էթիկան գիտական ընդհանրացումն է պրոլետարիատի այն վարքագծի ու բարոյական նորմերի, որը նա շուրջ մեկ դար ստեղծել է կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ կոմունիզմի համար մղվող պայքարում։ Կոմունիստական բարոյականության կատարելագործման ղեկավար ուժը եղել է և կմնա լենինյան պարտիան, որն իր փառավոր գործունեության ընթացքում կոմունիստական մորալի միլիոնավոր վեհ օրինակներ է տվել։

Լենինն ասում էր, որ կապիտալիզմը հանձին իր գերեզմանափորի՝ պրոլետարիատի, ծնել է և՛ սոցիալիզմի կառուցման ինտելեկտուալ, շարժիչ ուժը, որի հզորության ռեալ աղբյուր է հանդիսանում այն իրողությունը, որ բուրժուազիայի դեմ մղվող պայքարում սաստկանում է նրա նկատմամբ տածած պրոլետարիատի ատելությունը։ Ռևոլյուցիոն շարժման մեջ բարոյական գործոնի մեծագույն ուժը հասկանալու առումով խիստ կարևոր է նշել ատելության հասարակական նշանակությունը։

Ժամանակին ֆրանսիական ականավոր գրող է. Զոլան է նկատել, որ հասարակական արդար կռվում՝ ատելությունը սրբազան է։ Ատելությունն է, որ ազնվացնում է արդարության մղումներով տոգորված մարդկանց հոգեկան աշխարհը։ Արդարության զգացումը և բուրժուազիայի հանդեպ երիտասարդ Մարքսի, Էնգելսի տածած ատելությունն էականապես խթանել են մարքսիզմի առաջացմանը։ Լենինն ասում էր, որ երբ Մարքսն ու Էնգելսը դեմոկրատներից սոցիալիստներ դարձան՝ նրանց մոտ չափազանց զարգացած էր քաղաքա-

կամ կամայականության նկատմամբ տածած դեմոկրատական ատելության զգացումը։

Դասակարգային կռվի տարբեր էտապներում, պրոլետարիատն առաջին պլանի վրա է մղել գաղափարական և բարոյական պայքարի այս կամ այն հարցը։ Եթե մինչև պրոլետարիատի դիկտատուրայի հաստատումը նրա հիմնական գործելակերպը բուրժուազիայի քննադատությունն էր դասակարգային ատելության հրահրմամբ հանդերձ, ապա սոցիալիստական ռևոլյուցիայի հաղթությունից հետո առաջին պլանի վրա է դրվում աշխատավորական զանգվածների կոմունիստական դաստիարակության հարցը։ Սա նշանակում է, որ հաղթանակած պրոլետարիատը դեն շպրտելով միայն «մերձավորին» օգնելու բուրժուական մորալը, հետևողականորեն գործադրում է «հեռավորին» աջակցելու վեհ սկզբունքը։ Հավատարիմ այն բանին, որ անհատի ազատությունը հնարավոր է միմիայն ազատ հասարակության մեջ՝ Կոմունիստական պարտիան անհատի ազատության մորալը ենթարկել է մասսաների ազատագրման խնդրին։ Էգոիզմի, շահամոլության, տմարդության բարոյականությանը հակադրելով կոմունիստական մորալը՝ կոմունիստական պարտիան դրա հիմքում դնում է կոլեկտիվիզմը։

Մարդու բարոյական վարքագծի չափանիշը համարելով հանրօգուտ աշխատանքը, կոմունիստական էթիկան բարոյական կայունության հիմքում դնում է գաղափարական-քաղաքական կայունությունը։ Որքան մեծ ու հանրօգուտ են մարդու գաղափարները, նույնքան խոր և հումանիստական են նրա բարոյական ձգտումները։ Երբեք չնույնացնելով մորալն ու քաղաքականությունը, մարքսիզմը վեր է հանել և դրանց սերտ կապը։

Ես-ի շահը, անձնական երջանկությունն ու աշխատավորի կեղեքումը՝ ահա շահագործողների բարոյական հայացքների հիմքը։ Կոմունիստական բարոյականությունը նպաստում է այն գաղափարի իրագործմանը, որը կոլեկտիվ սեփականության հիման վրա է կառուցում բոլոր անհատների երջանկությունը։ Այդ երջանկությունը լիակատար և տիրապետող կդառնա ոչ միայն կոմունիստական հասարակության նյութական բազայի ստեղծումով, այլև մարդկանց գիտակցականության զարգացմամբ, կոմունիստական բարոյականության ծաղկմամբ։

Ուտոպիստ սոցիալիստների սխալն այն էր, որ նրանք կարծում էին, թե նոր հասարակությունը կարող են կառուցել ոչ թե այն մարդիկ, որոնք դաստիարակված են «արյունալի, կեղտոտ, կողոպտչական, խանութպանական կապիտալիզմի կողմից, այլ հատուկ ջերմոցներում աճեցված առանձնապես առաքինի մարդիկ»։ Այս կենսազուրկ մտքին մարքսիզմը հակադրեց այն ճշմարտությունը, որ կոմունիստները նոր հասարակությունը կերտելու են մարդկային այն զանգվածներով, որոնք իրենց վրա դեռ բուրժուական բարոյականության փոշին են կրում։ Հաղթահարել սեփականատիրական կյանքից բխող այն սովորույթները, որոնք համակել են մասսաներին մինչև ռևոլյուցիայի հաղթանակը՝ ահա թե որն է կոմունիստական դաստիարակության կարևոր և դժվարին խնդիրը, ասում էր Լենինը։ Այստեղ է, որ երևան է գալիս կոմունիստական բարոյականության անգնահատելի ուժը, նրա մեծագույն դերը, որն իր հոյակապ արդյունքները տվեց ՍՍՌՄ-ում։

Սոցիալիստական հանրային տնտեսության ստեղծմամբ մեր անծայրածիր Հայրենիքում ամուր հիմքեր գոյացան կոմունիստական հասարակա-



կան հարաբերությունների, կոմունիստական բարոյականության բարգավաճման համար։ Նոր էկոնոմիկան մասսաների մոտ ծնեց նոր նիստ ու կաց։ Զարգացավ կոլեկտիվիստական ոգին։ Սոցիալիստական տնտեսության զարգացմանը համընթաց, կոմունիստական բարոյականությունը կատարելագործվեց ու արմատավորվեց հին աշխարհի բարոյականության դեմ մղվող կատաղի պայքարում։ Այդ պայքարը վիթխարի մասշտաբներով երևան եկավ ոչ միայն կոլեկտիվացման տարիներին, այլև հայրենական պատերազմի դժնի օրերին։ Հենց այդ երկարատև պայքարում էլ թրծվեց սովետական մարդկանց հոգին, խորացավ նրանց կոլեկտիվիստական աշխարհզգացումը։ Սոցիալիստական տնտեսության, Հայրենիքի պաշտպանության բնագավառներում ժողովրդի ցուցաբերած մասսայական սխրագործությունները, միլիոնների անձնազոհ պայքարը կոմունիզմի հաղթության համար՝ կոմունիստական բարոյականության պատմական քննությունը չէ՞ր։ Անկասկած այո՛։

Ուշագրավ է, որ դեռևս քաղաքացիական կռիվների ծանր օրերին, հին աշխարհի դեմ մղվող երկար ու ծանր մարտերում մի անգամ ևս երևան եկավ պրոլետարիատի հոգեկան կարողությունների անվիճելի հզորությունը։ Ազատագրված աշխատանքի ստեղծարար ցավերում նա երկնեց նոր կյանքի կերտման մեթոդը՝ սոցիալիստական մրցությունը։ Գնահատելով վերջինիս մեծագույն դերը նոր աշխարհի ստեղծման ասպարեզում, Լենինը շեշտում էր, որ բուրժուազիայի տապալումն ավելի դյուրին էր, քան սեփական անտարբերության, սանձարձակության, մանր բուրժուական էգոիզմի և անցյալի բուրժուական սովորույթների հաղթահարումը։ Սոցիալիստական մրցությունն ավելի դժվարին, ավելի էական, ավելի արմատական ու վճռական հեղաշրջում էր, որով և սկսվում է աշխատավորության բարոյական մեծ առաջխաղացը, ասում էր Լենինը։

Այդպես էլ եղավ։ Սոցիալիզմի երկրին խպառ խորթ է մարդկանց բարոյալքող գործազրկությունը։ Կինն ազատագրվել է իր դարավոր կապանքներից։ Կոմունիստական շինարարության ընթացքում զարգացել է մարդկանց բարոյական ըմբռնումը։ Առաջացել է սովետական ժողովրդի բարոյա-քաղաքական միասնություն, որովհետև սովետական մարդկանց վարքագծի հիմքում կոմունիստական բարոյականությունն է դրված։

Կոմունիստական վեհ բարոյականության գլխավոր առանցքը կոլեկտիվի շահերի պաշտպանությունն է, իսկ սովետական հայրենասիրությունը նրա բնորոշ սկզբունքներից մեկն է։ Վերջինս Լենինը համարում էր այն խոր զգացմունքներից, որը դարավոր արմատներ ունի։ Այդ զգացումի միջոցով անհատն իրեն կապում է ժողովրդի հետ և իր անձնական շահը զոհաբերում է հանուն նրա բարօրության։ Սովետական հայրենասերն աչքի է ընկնում ոչ միայն հարազատ ժողովրդի հանդեպ տածած սիրով, այլև նրա ծաղկման համար թափած աշխատանքով։

Բայց պետք է տարբերել սովետական հայրենասիրությունն այլ ժամանակների և այլ բնույթի հայրենասիրությունից։ Սովետական բոլոր ժողովուրդների սոցիալ-տնտեսական սիստեմը մեկ է։ Բոլորի մոտ էլ իշխում է սոցիալիստական սեփականությունը։ Այս հիմքի վրա ի մի ձուլելով սովետական ժողովուրդների շահերը, սոցիալիստական ռևոլյուցիան լիակատար պայմաններ ստեղծեց հայրենասիրական նոր զգացումների զարգացման համար։ Հերքելով նացիոնալիստական կամ ցեղային հոգեբանության որևէ դրսևորում, սովետա-

կան հասարակարգը տարբեր ազգերին համախմբեց մի կամավոր միության մեջ և հենց այդպիսով հայրենասիրության հասկացությանը նոր, ավելի խոր բովանդակություն հաղորդեց։ Սովետական յուրաքանչյուր ժողովուրդը դարձավ մեկ մեծ ու անպարտելի Հայրենիքի իրավազոր անդամ, որով նա հպարտանում է և որի համար նա իր կյանքը չի խնայում։ Հայրենական Մեծ պատերազմը պատմական փորձաքար հանդիսացավ սովետական հայրենասիրության համար, որն իր անմոռաց ու մասսայական սխրանքներով մեր քաղաքացու բարոյական բարձր նկարագրի ապացույցը եղավ։

Կոմունիստական բարոյականության կենսարար սկզբունքը՝ պրոլետարական ինտերնացիոնալիզմն է։ Այն լինելով բուրժուական նացիոնալիզմի հակոտնյան՝ ամենուր ելնում է սոցիալիստական լագերի ժողովուրդների շահերի նույնականությունից և հավասարությունից, նրանց եղբայրական միասնությունից։ Ուստի և նրան խորթ են ազգային պարծենկոտությունը, սահմանափակությունը և այլն։ Պրոլետարական ինտերնացիոնալիզմը միշտ առաջին պլանի վրա դնելով սոցիալիզմի ներկա և ապագա շահերը, իր մեջ զուգակցում է և սովետական հայրենասիրությունը, որն այդ ինտերնացիոնալ զգացումի կոնկրետ դրսևորումն է։ Պրոլետարական ինտերնացիոնալիզմի և սովետական հայրենասիրության իրական բովանդակությունը ոչ այլ ինչ է, եթե ոչ, կոմունիզմի կառուցմանը նպաստող ազգերի բարեկամությունը։

Առաջին պլանի վրա դնելով ՍՍՌՄ-ի շահերը, սովետական հայրենասերն իր ազգի շահերը երբեք չի անջատում դրանից, չի հակադրում դրան, քանի որ այդ շահերը ընդհանուր շահերի մի մասն են և կարող են լինել միայն նրա շնորհիվ։ Մասն անջատել ընդհանուրից և հակադրել նրան որևէ ձևով՝ վնասակար է և սխալ։ Տվյալ դեպքում չպետք է մոռանալ, որ սովետական հայրենասիրությունը ներծծված է միջազգային ռևոլյուցիոն շարժման շահերի պաշտպանության խոր երախտագիտությամբ, որը ՍՍՌՄ-ի բոլոր քաղաքացիների սրբազան պարտքն է։ Ահա թե ինչու անդուլ պայքարը նացիոնալիզմի և կոսմոպոլիտիզմի դեմ՝ սովետական ժողովուրդների ինտերնացիոնալիստական գաղափարախոսության անաղարտության կարևոր նախապայմանն է։

Կոմունիստական բարոյականության շահերը պահանջում են չմոռանալ ազգային նախապաշարումների վնասակար կենսունակությունը, որը սնուցում է անցյալի իդեալականացման, ազգային մեկուսացման և պարծենկոտության խոտելի երևույթները։ Պայքար այդ ամենի դեմ՝ դա կոմունիստական բարոյականության համար մղվող պայքար է։ Սովետական քաղաքացին հպարտանում է իր ազգի այն նվաճումներով և իրողություններով, որոնք նրան որևէ չափով մերձեցնում են այլ ժողովուրդներին, ամրապնդում են նրա բարեկամությունը սոցիալիստական լագերի և այլ ժողովուրդների հետ։ Նա ատում է այն, ինչ որևէ չափով հակասում է սոցիալիզմի միջազգային շահերին, խաղաղության շահերին, հետևաբար և իր ժողովրդի շահերին։

Սոցիալիստական հումանիզմի էությունն այն է, որ այն թշնամի է ամեն կարգի ճնշման ու կեղեքման, ատում է այն ամենն, ինչ հակամարդկային է, հարգում է մարդու արժանիքները և հոգատար է նրա հանդեպ։ Ուստի և չի կարելի պատկերացնել կոմունիստական բարոյականությունն՝ առանց սովետական հումանիզմի։ Բուրժուազիայի անտիհումանիզմը պայմանավորված է նրա էգոիզմով և շահամոլությամբ։ Աշխատանքի հանդեպ տածած նրա զզվանքը առաջացել է նրա պորտաբուծական էությունից։ Իսկ պրոլետարիատի



հումանիզմը համընկնում է կոմունիզմի հետ, քանի որ նրա շահերը օբյեկտիվորեն համահնչուն են բոլոր աշխատավորների շահերին։ Լենինյան պարտիան որդեգրելով ռևոլյուցիոն հումանիզմի տրադիցիաները՝ շարունակում է զարգացնել դրանք հասարակական զարգացման նոր պայմաններում։

Սոցիալիստական շինարարությամբ ապացուցվեց Կ. Մարքսի այն դրույթի ճշմարտությունը, որ մասնավոր սեփականության վերացմամբ, մարդկային բոլոր զգացումները կատարյալ զարգացման ազատություն կստանան, որի հետևանքով այդ զգացումները կդառնան իրոք մարդկային։ Վանելով «ընդհանրական սեր» վերացական ու փուչ քարոզը, սոցիալիստական հումանիզմը սնունդ է տալիս ժողովուրդների ջերմ բարեկամությանը, նրանց անկաշառ եղբայրությանը՝ փոխադարձ օգնության հիման վրա։

Սեր բոլոր նրանց հանդեպ, ովքեր նպաստում են կոմունիզմի շինարարությանը։ Ատելություն դեպի այն անձիք, ովքեր թշնամի են սոցիալիզմին ու սովետական կարգերին։ Բացի այս բնորոշ գծերից, սոցիալիստական հումանիզմին հատուկ է խոր հավատ մարդու ստեղծարար կարողությունների նկատմամբ, որոնց միջոցով աշխարհը վերակառուցվելու է նրա լավագույն ձգտումների համեմատ։ Սիրելով իսկական մարդուն և հպարտանալով իր նմանի արժանիքներով՝ սովետական հումանիստը չի հանդուրժում շրջապատի մարդկանց թերություններն ու պակասությունները, բարի նկատառումներով քննադատում է նրանց կրողներին և օգնում վերացնելու դրանք։ Կյանքի բոլոր մարզերում պայքարելով մարդու նկատմամբ անտարբերության երևույթների մնացուկների դեմ՝ սովետական հասարակությունը ջանք չի խնայում ամենուր կենսագործելու մարդու հանդեպ հոգատարության սոցիալիստական օրենքը։

Այս հանգամանքն ի նկատի ուներ տաղանդավոր մանկավարժ Ա. Մակարենկոն, երբ ասում էր. կոմունիստական բարոյականությունը պետք է ելնի ոչ միայն իմ, այլ միլիոնների երջանկությունից։ Եթե հին տրամաբանությունն ասում էր, որ ես ուզում եմ երջանիկ լինել, ուստի և գործ չունեմ ուրիշների հետ, ապա նոր կյանքի տրամաբանությունը պնդում է՝ ես երջանիկ կարող եմ լինել միայն այն դեպքում, երբ բոլորն են երջանիկ։

Կոմունիստական բարոյականության այս լոգիկան պարտավորեցնում է սովետական քաղաքացուն խոր ակնածանքով վերաբերվել հասարակական իր պարտքին, որտեղ ցայտուն կերպով երևան է գալիս կոմունիզմ կառուցողների հոգեհարազատությունը։

Երբ հասարակական պարտքի գիտակցումը խարսխված է կյանքը լենինյան տեսանկյունով ըմբռնելու սկզբունքին, տվյալ դեպքում հասարակական պարտքի և անձնական ցանկության միջև իբրև կանոն՝ բախում չկա։ Թեև առանձին անհատների մոտ այսօր էլ նկատելի են խոր հակասություններ ցանկության ու հասարակական պարտքի միջև, բայց և այնպես հարկ է ընդգծել, որ սովետական երկրում հանրային սեփականության հաստատմամբ վերացավ հասարակական պարտքի և անձնական ցանկության հազարամյա հակադրությունը։

Լիակատար կոմունիզմի օրոք, երբ կլինի իրական ներդաշնակություն հասարակական պարտքի և անձնական ցանկության միջև, երբ հասարակական պարտքի գիտակցումը սովորույթ կդառնա՝ շատ հեշտ կլինի (իբրև բացառություն ծագած) անձնականի և հասարակականի հնարավոր կոնֆլիկտը լուծել

անցավ եղանակով։ Միայն կոմունիզմն է ի վիճակի ստեղծելու լիակատար նյութա-բարոյական նախադրյալներ, որպեսզի հասարակական պարտքի գիտակցումը բոլորի մոտ էլ դառնա ինքնաբուխ պահանջ։

Հասարակական պարտքի հասկացությունը սերտորեն առնչվում է պատվի և ազնվության ըմբռնումների հետ։ Հարստահարող դասակարգի և հարստահարվող միլիոնների պատվի և ազնվության հասկացությունները տրամաբանորեն և իրականորեն հակադիր են։ Առաջինների պատիվն ու ազնվությունը մերված են փողի և ընչաքաղցության մորալի հետ։ Այդ հասկացություններն էլ դասակարգային խոր կնիք ունեն։ Շահագործման հարաբերության վերացումը նոր բովանդակություն և բնույթ հաղորդեց սովետական մարդու ազնվության և պատվի հասկացություններին։ Եթե պատիվը ենթադրում է մարդու հասարակական պարտքի կատարումը, սահմանված բարոյական նորմերի պահպանումը (փառք, հարգանք, սեփական արժանիքների գիտակցումը), ապա ազնվությունը պահանջում է սովետական մարդու խոսքի և հանրօգուտ գործի ներդաշնակությունը, հանրակեցության բոլոր կանոնների անշեղ գործադրումը։

Սովետական մարդու ազնվությունն ու պատիվը պայմանավորված լինելով կոմունիստական բարոյականությամբ, ծնվում ու կատարելագործվում են հասարակական կյանքի ոլորտներում, մեծապես նպաստում են նրա խղճի բյուրեղացմանը, որը դրսևորում է մարդու բարոյական պատասխանատվությունը թե՛ հասարակության և թե՛ անհատների հանդեպ։

Կապիտալիստական կարգերի կործանումով, սոցիալիզմը մեր երկրում աշխատանքն առհավետ ազատագրեց շահագործումից, այն դարձրեց կամավոր։ Սակայն կամավոր աշխատանքի արմատավորումը չի կարող ընթանալ առանց բախումների, առանց պորտաբույծների դեմ որոշ բռնություններ գործադրելու, ասում է Լենինը։ Չի կարելի մոռանալ, որ նույնիսկ այժմ, երբ մեր երկրում կառուցվում է կոմունիզմի նյութա-տեխնիկական բազան, «դեռևս հաճախ հանդիպում են մարդիկ, որոնք անբարեխղճորեն են վերաբերվում հասարակական աշխատանքին, զբաղվում են սպեկուլյացիայով, խախտում են կարգապահությունն ու հասարակական կարգը»,— ասում է Ն. Ս. Խրուշչովը։ Այս երևույթների վերացումը պահանջում է մասսայական պայքար այն բարքերի և հասկացությունների մնացուկների դեմ, որոնք դեռևս մնում են բուրժուական աշխարհի բարոյական արսենալից։

Այժմ, երբ մեր երկիրը կոմունիզմի ծավալուն կառուցման շրջան է թևակոխել, «հանրային աշխատանքը դարձել է մարդկանց նոր, սոցիալիստական հարաբերությունների արտահայտությունը, մարդու բարոյական վսեմ հատկությունների ցուցանիշը» (Խրուշչով)։ Այստեղից հետևում է այն, որ ՍՍՌՄ-ում կոմունիստական բարոյականությունը հաղթել է անդառնալիորեն և դարձել է հանրային նիստ ու կացի զսպանակը։

Կոմունիզմի կառուցման հաստատուն գրավականը Լենինը համարում էր միլիոնների վերաբերմունքը աշխատանքի նկատմամբ։ Սա է գլխավորը։ Դրա համար էլ նա ասում էր, որ կոմունիզմը սկսվում է այն ժամանակ, երբ հանդես է գալիս շարքային բանվորների հոգատարությունն աշխատանքի արտադրողականության բարձրացման վերաբերյալ։ Ինչպես միշտ, նմանապես և այսօր, պարտիան կիրառելով իր անմահ առաջնորդի պատգամները, տվյալ էտապում «դաստիարակչական գործի կենտրոնում դնում է բոլոր մարդկանց աշխատանքային դաստիարակությունը, աշխատանքի նկատմամբ գիտակցա-



կան, կոմունիստական վերաբերմունքի զարգացումը։ Մենք ձգտում ենք, որ աշխատանքը, որպես բոլոր նյութական ու կուլտուրական բարիքների ստեղծող, դառնա մարդկանց կենսական առաջնային պահանջմունքը» (Խրուշչով)։

Կոմունիստական բարոյականության առաջին պատվիրանը, կոմունիստական վարքագծի կարևորագույն չափանիշը՝ կոմունիստորեն աշխատելն է։ Ով բարոյական է խոսքով, իսկ աշխատանքում պորտաբույծ, անկարգապահ, շահամոլ, նա խախտում է սովետական բարոյականության հիմքերը, մեզ մղում է դեպի անցյալի բարոյականությունը։ Քանի որ սոցիալիզմի լիակատար հաղթանակով մեր երկրում «ազատ մարդու բարոյական բոլոր լավագույն գծերի» զարգացման բարենպաստ հող է ստեղծվել, ապա այդ պատմական նվաճումների ֆոնի վրա ավելի ցայտուն են երևում բուրժուական մորալի գորշ բծերը։

ՍՄԿԿ XXI համագումարը մեր առաջխաղացման կարևորագույն խնդիրը համարեց դաստիարակել ապագայի մարդկանց կոմունիստական բարոյականության վեհ սկզբունքներով, կոմունիստական պարտիայի անձնազոհ մարտիկների վառ տրադիցիաներով։ Այդ ոգով պետք է ներծծված լինի ամբողջ մատաղ սերնդի կրթության և դաստիարակության գործը։

Կոմունիստական էթիկան, որն իր նշանակալի զարգացումը գտավ ՍՄԿԿ XXI համագումարին Ն. Ս. Խրուշչովի տված զեկուցման մեջ, այժմ հրատապ խնդիր է համարում ամեն կերպ զարգացնել սովետական ազատ մարդու բարոյական բոլոր լավագույն գծերը։ Կոմունիզմ կառուցողների բարոյական կոդեքսի հիմքում դրված է այն հոյակապ միտքը, որ այժմ «հարկավոր է սովետական մարդկանց մեջ զարգացնել կոմունիստական բարոյականությունը, որի հիմքում ընկած է նվիրվածությունը կոմունիզմին և անհաշտությունը նրա թշնամիների նկատմամբ, հասարակական պարտքի գիտակցումը, ակտիվ մասնակցությունը աշխատանքին ի բարօրություն հասարակության, մարդկային համակեցության հիմնական կանոնների կամովին պահպանումը, ընկերական փոխօգնությունը, ազնվությունն ու ճշմարտությունը, անհանդուրժողականությունը հասարակական կարգը խախտողների նկատմամբ» (Ն. Ս. Խրուշչով. «ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1959—1965 թվականների կոնտրոլ թվերի մասին», էջ 70)։

Ոչ թե գրքային ճշմարտություններով, այլ պրակտիկ աշխատանքի ընթացքում կիրառելով կոմունիստական բարոյականության վերոհիշյալ գլխավոր հիմունքները, հնարավոր կլինի միլիոնների համար սովորույթ, միս ու արյուն դարձնել կոմունիստական աշխարհզգացման սկզբունքները։ Այս ասպարեզում մեր նվաճումները մեծ են։

Պատմության մեջ առաջին անգամ սոցիալիզմը մարդկանց հասցրեց համագործակցության և կոլեկտիվիզմի, բարեկամության և փոխօգնության բարոյականությանը։ Այս դեպքումն է, որ ժողովրդի և անհատի բարօրության հարցը դրվում է հասարակության ու պետության գործունեության առաջին պլանի վրա։

Մենք ականատես ենք նրան, երբ տասնյակ միլիոնավոր պատանիներ ու երիտասարդներ կրթվելով վերակառուցվող սովետական դպրոցում, դառնում են այնպիսի մարդիկ, որոնց նկատմամբ Լենինն ասում էր, թե նրանք կարող են ամեն բան անել, որովհետև նրանք տոգորված են կոմունիստական բարոյականության սկզբունքներով։

Ամենուր ծայր առած կոմունիստական աշխատանքի բրիգադների հոյա-

կապ շարժումը կոմունիզմի մոտալուտ հաղթանակն է ավետում։ Սովետական բազմահազար երիտասարդներ, որոնք խիզախում են գործի վերածելու ուտոպիստ մարդկանց դարավոր անուրջը՝ մեկն ամենքի համար, ամենքը մեկի համար, հրաշքներ են գործում իրենց անձնազոհությամբ և գիտակցականությամբ։

Վերջերս էր, որ մի վառ օրինակով ևս դրսևորվեց սովետական մարդկանց բարոյական ըմբռնումների անհաղթ ուժը։ Տեքստիլուհի բրիգադավար Վալենտինա Գագանովան հրաժարվելով բարձր աշխատավարձից՝ հանձն առավ ղեկավարել ետ մնացող մի այլ բրիգադա և այդ վեհանձն քայլի շնորհիվ այդ բրիգադան դարձավ առաջավոր։ Ահա թե ինչու աշխատանքային այդ սխրագործության համար նրան շնորհվեց Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի բարձր կոչում։ Այստեղ բնորոշն այն է, որ Գագանովայի օրինակը լայն արձագանք է գտնում հազարավոր սովետական հայրենասերների կողմից, որոնք ընթանալով նրա ճանապարհով, աշխատանքի բարձր արտադրողականության նոր նմուշներ են տալիս։

Ուտոպիստ Սեն-Սիմոնը միայն երազում էր, որ կոմունիստական հասարակության մեջ մարդկանց երջանկությունը բարոյական առումով կլինի ամենակատարյալը, որ նրանց ինտելիգենտության մակարդակը կբարձրանա այն աստիճանի, որ նրանք կարող կլինեն գնահատել նուրբ արվեստները, կգիտենան բնության կառավարման օրենքները և ի վիճակի կլինեն փոխելու դրանք, վերջապես նրանց միջև թագավորելու է բարեկամությունը։ Միայն գիտական կոմունիզմի շնորհիվ մարդկությունը գտավ երջանիկ կյանքի ճիշտ ուղին, որի առաջամարտիկները կոմունիզմ կառուցող սովետական մարդիկ են։

Նայելով մարդկության անցած ուղիներին կոմունիստական հասարակության բարձր դիտակետից, մեզ համար որքան տխուր, նույնքան և հասկանալի են հնչում մեկ այլ երազողի՝ Շարլ Ֆուրյեի խոսքերը. «Մի՞թե կարելի է ավելի դժնի քաոս երևակայել, քան այն կարգը, որը գոյություն ունի մեր աշխարհում։ Աշխարհի մեծ մասը զավթել են ավազակներն ու բարբարոսները, որոնք ստրկացնում են հողագործներին և կանանց, հաստատում են հակաբնական կարգեր։ Աղքատությունը և այլասերվածությունը բարձր աստիճանի են հասել։ Կա՞ նողկալի մի այլ կարգ, քան մեր երկրի վրա հաստատվածը»,— հեգնորեն բացականչում էր Շարլ Ֆուրյեն։

Այդ նողկալի կարգը տապալված է աշխարհի մեկ երրորդ մասում, ուր տապալողների գրոհը ղեկավարում են կոմունիստների պարտիաները, որոնք զինված են ամենակատարյալ բարոյականությամբ։ Այժմ, երբ մեր երկիրն արագորեն կոմունիզմ է կառուցում, ավելի մեծ է դառնում աշխատանքի բարոյական խթանների նշանակությունը։ Բարոյական խթաններն ապագա հասարակության ծաղկման գործոններն են, որոնք օժտված են առաջմղիչ անսպառ էներգիայով։

Կոմունիստական բարոյականության կատարելագործման խոշորագույն ապացույցներից մեկն էլ այն է, որ սովետական պետությունը վիթխարի մասշտաբներով ձեռնամուխ է լինում մարդկանց կյանքի հեշտացման, երեխաների հասարակական խնամքին ու դաստիարակությանը՝ գիշերօթիկ դպրոցների կազմակերպումով, դպրոցականներին նախաճաշով ու ճաշով ապահովելով, մանկապարտեզների և մանկամսուրների ցանցի ծավալումով, աշխատանքային օրվա կրճատումով, ցածր աշխատավարձերի և թոշակների բարձրացու-



մով, հասարակական սննդի բարելավմամբ և այլն։ Սովետական երկրում ստեղծվում են պայմաններ, որոնք հնարավորություն կտան կանանց իրենց «իրավունքները, գիտելիքները, իրենց տաղանդը ավելի լայնորեն օգտագործելու արտադրական, հանրօգուտ գործունեության ասպարեզում»։

Որքան արագ և հաջող ընթանա կոմունիզմի նյութական և տեխնիկական բազայի կառուցումը, այնքան շատ ռեալ նախադրյալներ կստեղծվեն, որպեսզի մանուկների ոչ միայն կրթության ու դաստիարակության, այլև սնուցման ֆունկցիան ամբողջովին կատարվի հասարակության կողմից։ Սրա հետ միաժամանակ հասարակական սննդի և կոմունալ-կենցաղային սպասարկման սիստեմի նպատակահարմար կազմակերպումը խոշոր չափով կթեթևացնի ծնողների ընտանեկան բեռը։ Հոգով հարստացած սովետական քաղաքացիների ընտանեկան հարաբերությունների ոլորտից աստիճանաբար կանհետանան սիրո փութանցիկ կապերը՝ սիրազուրկ ամուսնության դեպքերը։ Ընտանեկան կյանքի հիմքում կդրվի միայն փոխադարձ սերը, մի սեր, որն «էապես տարբերվում է սովորական սեռական հրապուրանքից, հին աշխարհի էրոսից» (էնգելս)։

Այսպիսով, ընտանեկան և սիրո հարաբերությունները, որոնք առավելապես վերաբերում են բարոյականության ոլորտին, ավելի զարգանալու և կատարելագործվելու ազդակներ կստանան։ Սրան մեծապես նպաստելու է և սովետական դեմոկրատիայի, կուլտուրական ռևոլյուցիայի հետագա խորացումը։ Այսպիսով, մեր հասարակության զարգացման բոլոր ուղիները ապահովում են կոմունիստական բարոյականության անկանգ առաջընթացը։ Ահա թե ինչու նրա դերը կոմունիզմի կառուցման գործում՝ անգնահատելի է։

Մենք հաղթեցինք, ասում է Լենինը, որովհետև մասսաները գիտեին, որ կռվում են հարազատ գործի համար։ Դասակարգային կռվի երկարատև տառապանքների գնով ձեռք բերված այդ գիտակցությունը կոփնում է այն բարոյական սկզբունքին՝ որ աշխարհի ամենաբարոյական գործը շահագործման ոչնչացումն է։ Փարիզյան կոմունայից սկսած մինչև կոմունիստական աշխատանքի բրիգադաները, պրոլետարիատը կոմունիստական բարոյականության վեհության հազարավոր, բյուր հազարավոր օրինակներ է տվել։ Այսօր էլ այդ բարոյականությունն է հուրհրատում կոմունիզմ կառուցողների հոծ բանակներում, նոր լիցք և վսեմ իմաստ է հաղորդում մեր երջանիկ այսօրվա և ապագայի սլընթաց երթին։

---

# ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ՆՈՐ ՈՒՐՎԱԳԾԵՐ ՍՏԵՂԾԵԼՈՒ ԱՌԹԻՎ

*Խ. ԲԱՐՍԵՂՅԱՆ*

ՍՄԿՊ Կենտկոմին կից Մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի
Հայկական ֆիլիալի դիրեկտոր

*Սովետական Միության Կոմունիստական պարտիայի պատմությունը մարքսիզմ-լենինիզմն է գործողության մեջ։ Այն հանդիսանում է կոմունիստներին և սովետական բոլոր մարդկանց պարտիայի ռևոլյուցիոն տրադիցիաներով դաստիարակելու, մարքսիստական-լենինյան տեսությամբ զինելու հզոր միջոց։ ՍՄԿՊ պատմության բազմակողմանի ուսումնասիրությունը կոմունիստներին և անպարտիական մասսաներին օգնում է խոր ըմբռնելու սոցիալիզմի համար մղված պայքարի փորձը, է՛լ ավելի է ամրապնդում մեր մարդկանց հավատը կոմունիզմի վերջնական հաղթանակի նկատմամբ։*

*Սովետական Միության Կոմունիստական պարտիայի, լենինյան պարտիայի պատմական հարուստ փորձը մեծ նշանակություն ունի ոչ միայն մեր երկրի աշխատավորների համար, այլև ժողովրդական դեմոկրատիայի երկըրների և ամբողջ աշխարհի կոմունիստական ու բանվորական պարտիաների համար։ Կոմունիստական պարտիան իր զարգացման բոլոր էտապներում վիթխարի ուշադրություն է նվիրել ՍՄԿՊ պատմության գիտական մշակմանը և ուսումնասիրությանը։ Տակավին Սովետական իշխանության առաջին տարիներին ՍՄԿՊ պատմությունը ճանաչում գտավ, որպես հասարակական գիտության կարևորագույն բնագավառներից մեկը, որպես պատմական գիտություն։*

*ՍՄԿՊ պատմության գիտական մշակման գործում անգնահատելի դեր խաղաց պարտիայի XX համագումարը։*

*Համագումարը խնդիր դրեց արմատապես բարելավել գաղափարական աշխատանքի դրվածքը, վճռական պայքար ծավալել դոգմատիզմի, տիրացուականության դեմ, գիտականորեն վեր հանել մեր պարտիայի պայքարի ու հաղթանակների համաշխարհային պատմական նշանակություն ունեցող փորձը, ստեղծագործաբար մշակել նրա պատմությունը։ Համագումարը պահանջեց ստեղծել պարտիայի պատմության հանրամատչելի, պատմական փաստերի վրա հենվող մարքսիստական դասագիրք, որտեղ գիտականորեն ընդհանրացվի կոմունիզմի համար պարտիայի մղած պայքարի համաշխարհային-պատմական փորձը և որտեղ շարադրանքը հասցվի մինչև մեր օրերը։*

*Այսպիսով կարևոր նշանակություն է ստանում ՍՄԿՊ և նրա մարտական*



*ջոկատների՝ ՍՍՌՄ եղբայրական ռեսպուբլիկաների կոմպարտիաների գիտական պատմության ստեղծումը։*

*Ղեկավարվելով համագումարի այդ ցուցումներով, անցած ժամանակաշրջանում Սովետական Միությունում հսկայական աշխատանք է կատարվել Կոմունիստական պարտիայի պատմության հարցերի ուսումնասիրության ուղղությամբ։*

*Այժմ մեր երկրում պատմաբանների մի խոշոր ջոկատ աշխատում է Սովետական Միության Կոմունիստական պարտիայի պատմության հարցերի հետազոտման վրա։ Միայն ՍՄԿՊ Կենտկոմին կից Մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտում և նրա ֆիլիալներում ՍՄԿՊ պատմության հարցերով զբաղվում են 700 գիտական աշխատողներ, բարձրագույն ուսումնական հաստատությունների մարքսիզմ-լենինիզմի ամբիոններում որպես դասախոսներ աշխատում են ավելի քան 5000 հոգի, որոնց կեսը գիտության թեկնածուներ են։ Միայն վերջին երկու-երեք տարիների ընթացքում լույս են տեսել պարտիայի պատմության հարցերին նվիրված հարյուրավոր գրքեր, բրոշյուրներ, հիշողություններ, հոդվածների, փաստաթղթերի ժողովածուներ և այլն, որոնց ընդհանուր տիրաժը կազմում է մոտ 40 միլիոն։ Ամսագրերում, ԲՈՒՀ-երի գիտական աշխատությունների ժողովածուներում տպագրվել են ավելի քան հազար գիտական հոդվածներ՝ նվիրված պարտիայի պատմության հարցերին։ Հեղինակային մի կոլեկտիվ ստեղծել է Սովետական Միության Կոմունիստական պարտիայի պատմության նոր դասագիրք[1], որը մասսայական տիրաժով ռուսերեն լեզվով լույս է տեսել առանձին գրքով։ Նոր դասագիրքը թարգմանված է նաև հայերեն, անցյալ տարվա հոկտեմբերից սկսած նրա առանձին գլուխները հրապարակվում են «Լենինյան ուղիով» ամսագրում, իսկ առանձին գրքով այն լույս կտեսնի առաջիկայում։ Նոր դասագիրքը բովանդակում է ՍՄԿՊ պատմության սեղմ շարադրանքը Ռուսաստանում բանվորական շարժման սկզբից ու մարքսիզմի տարածումից մինչև ՍՍՌՄ-ի թևակոխումը կոմունիստական հասարակարգի ծավալուն կառուցման ժամանակաշրջանը։*

*ՍՄԿՊ պատմության այս նոր դասագիրքը հանդիսանում է հանրամատչելի ձեռնարկ։ Նրանում պարտիայի XX համագումարի որոշումների լույսի տակ վեր է հանված պարտիայի կեսդարյա պատմությունը։ ՍՄԿՊ Կենտկոմին կից Մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտը և նրա ֆիլիալները գործնական աշխատանք են ծավալել Սովետական Միության Կոմունիստական պարտիայի բազմահատոր (նախնական պլանով ենթադրվում է 4 հատորով) պատմությունը ստեղծելու ուղղությամբ։ Միաժամանակ ինստիտուտի ֆիլիալները աշխատանք են կատարում միութենական ռեսպուբլիկաների եղբայրական Կոմպարտիաների պատմության ուրվագծեր ստեղծելու համար։*

---

[1] Դասագիրքը հրատարակության է պատրաստել հեղինակային կոլեկտիվը հետևյալ կազմով. ՍՍՌՄ Գիտությունների ակադեմիայի թղթակից-անդամ Բ. Ն. Պոնոմարյով (ղեկավար), պատմական գիտությունների թեկնածու Վ. Ս. Զայցև, ՍՍՌՄ Գիտությունների ակադեմիայի թղթակից անդամ Վ. Մ. Խվոստով, պատմական գիտությունների դոկտոր Ա. Պ. Կուչկին, ակադեմիկոս Ի. Ի. Մինց, պատմական գիտությունների դոկտոր Ն. Ի. Շատագին, տնտեսական գիտությունների թեկնածու Լ. Ա. Սլեպով, փիլիսոփայական գիտությունների թեկնածու Ա. Ի. Սոբոլև, պրոֆեսոր Ի. Մ. Վոլկով, պատմական գիտությունների թեկնածու Մ. Ս. Վոլին, պատմական գիտությունների թեկնածու Ա. Ա. Տիմոֆեևսկի։

## II

Ներկա հոդվածի նպատակն է համառոտակի շարադրել այն միջոցառումները, որ կապված են Հայաստանի Կոմունիստական պարտիայի պատմության գիտական մշակման՝ նոր «Ուրվագծեր»-ի ստեղծման հետ։

Հայաստանի Կոմպարտիայի պատմության ստեղծման հարցով ՀԿՊ Կենտկոմը զբաղվել է վաղուց։ Առաջին փորձը, մեր կարծիքով, դա 1920 թվականի վերջերին ՀԿՊ առաջին անլեգալ կոնֆերանսի (1920 թ. հունվար) որոշումները առանձին բրոշյուրով հրատարակելն էր։ Այդ բրոշյուրի առաջաբանում ասված է.

«Դա Հայաստանի կոմունիստական կազմակերպությունների առաջին կոնֆերանսն էր, որը դրեց կազմակերպված պարտիայի սկիզբը։

Տեղերում պարտիական կազմակերպություններ հիմնելու երկարատև և համառ աշխատանքն ավարտվեց կոնֆերանսով, որտեղ ներկայացված էին բոլոր շրջանները՝ Երևանը, Ալեքսանդրոպոլը, Սարիղամիշը, Ղարսը, Նոր-Բայազետը, Ղազախ-Շամշադինը, Դիլիջանը, Զեզուր գոտին։

Հայաստանում արագորեն և օբյեկտիվորեն աճող ռևոլյուցիան կարիք էր զգում ուժեղ, կազմակերպված Կոմունիստական պարտիայի, որը կարողանար ոչ միայն ի մի հավաքել և կազմակերպել ցաք ու ցրիվ ռևոլյուցիոն ուժերը, այլև ունենար միասնական և ճիշտ տակտիկա» [1]։

Հունվարյան կոնֆերանսի որոշումները տոգորված են բոլշևիկյան պարտիայի գաղափարական, կազմակերպական, տակտիկական ու տեսական հիմունքների նկատմամբ հավատարմության ոգով, ՌԿ(բ)Պ հետ Հայաստանի Կոմունիստական պարտիայի միասնության և անխզելի կապի ոգով։ Կոնֆերանսը, դնելով Հայաստանի Կոմունիստական պարտիայի փաստական կազմակերպական ձևավորման սկիզբը, ամբողջովին ելնում էր ՌԿ(բ)Պ VIII համագումարի որոշումներից, որտեղ խոսվում էր միասնական կենտրոնացած Կոմունիստական պարտիայի գործունեության մասին՝ միասնական Կենտկոմով հանդերձ, որը պետք է ղեկավարեր պարտիայի ամբողջ աշխատանքը ՌՍՖՍՌ բոլոր մասերում։ Ինչպես որ ՌԿ(բ)Պ VIII համագումարի որոշման համաձայն Ուկրաինայի, Լատվիայի, Բելոռուսիայի, Լիտվայի կոմունիստների Կենտկոմները օգտվում էին պարտիայի մարզային կոմիտեների իրավունքներով և ամբողջությամբ ենթարկվում էին ՌԿ(բ)Պ Կենտկոմին, այդպես էլ Հայաստանի կոմունիստական կազմակերպությունների կոնֆերանսը որոշեց, որ Հայաստանի կոմունիստական կազմակերպությունը օգտվելու է մարզային կազմակերպության իրավունքներով։ Ինչպես գրել է «Պրավդա»-ն իր 1920 թ. ապրիլի 28-ի համարում, «Կոնֆերանսը որոշեց մտնել ՌԿ(բ)Պ մեջ մարզային կազմակերպության իրավունքներով»։ Հունվարյան կոնֆերանսը վճռական հակահարված տվեց Հայաստանի Կոմպարտիայի լիակատար կազմակերպական մեկուսացման կողմնակիցներին, Ա. Ջուրաբյանի անկախ սոցիալ-դեմոկրատական խմբին և ուրիշների։

Հայաստանի Կոմունիստական պարտիայի պատմության ստեղծման ճանապարհին լույս քայլ էր ՀԿՊ Կենտկոմի 1923 թ. մարտի որոշումը ՀԿՊ

[1] ՍՄԿՊ Կենտկոմին կից Մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի Հայկական ֆիլիալի արխիվ, բաղվածքների ֆոնդ։



պատմության շարադրման մասին, որով հիմնադրվում է ՀԿՊ Կենտկոմին կից պարտիայի պատմության ինստիտուտը (Կուսպատ)։ Այն շոշափելի աշխատանք կատարեց Հայաստանի ռևոլյուցիոն շարժումների և կոմունիստական կազմակերպությունների պատմության փաստաթղթերը հավաքելու և գիտական շրջանառության մեջ դնելու ուղղությամբ։ Հետագայում, 1936 թ. փետրվարի 29-ին ՀԿՊ Կենտկոմը որոշում ընդունեց «Հայաստանի ռևոլյուցիոն շարժումների և բոլշևիկյան կազմակերպությունների պատմությունը» ստեղծելու մասին։

Սակայն այս որոշումը մնաց թղթի վրա։

Միայն 1954 թ. հետո ուժեղացվեց աշխատանքը ՀԿՊ պատմության ստեղծման ուղղությամբ։ Վերջին տարիներին այդ աշխատանքը ընթացել է փաստաթղթերի ժողովածուների ստեղծման, Կոմունիստական պարտիայի ականավոր գործիչների աշխատությունների հրատարակման (Ստ. Շահումյան, Ս. Սպանդարյան, Բ. Կնունյանց, Ալ. Մյասնիկյան) մենագրությունների հրատարակման և դիսերտացիաների պաշտպանության ուղղությամբ։ Բավականաչափ նյութ է հավաքված «Ռևոլյուցիոն շարժումները Հայաստանում 1905-1907 թթ.», «Հոկտեմբերյան Սոցիալիստական մեծ ռևոլյուցիան և Սովետական իշխանության հաղթանակը Հայաստանում» փաստաթղթերի ժողովածուներում։

Հայաստանի կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի հանձնարարությամբ ՍՄԿՊ Կենտկոմին կից Մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի Հայկական ֆիլիալը հեղինակային կոլեկտիվի հետ միասին նախապատրաստեց և 1958 թվականի փետրվարին հայերեն լեզվով հրատարակեց «Հայաստանի Կոմունիստական պարտիայի պատմության ուրվագծեր» աշխատությունը, որը ընդգրկում է 1880-ական թվականներից մինչև 1957 թվականը։ Ինչպես հայտնի է, ՀԿՊ Կենտկոմը ֆիլիալի և հեղինակային կոլեկտիվի առջև խնդիր էր դրել ստեղծել ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունների գիտական պատմությունը, օգնել պրոպագանդիստներին և պարտիայի բոլոր անդամներին Հայաստանի Կոմունիստական պարտիայի պատմության ուսումնասիրման գործում։ «Ուրվագծեր»-ի քննարկումները (գիտական հասարակայնության կողմից, ՄԼԻ-ի Հայկական ֆիլիալում և ՀԿՊ Կենտկոմում) ցույց տվեցին, որ «Ուրվագծեր»-ը, իր դրական կողմերով հանդերձ, թերի մշակման և թույլ տրված սխալների պատճառով Հայաստանի Կոմպարտիայի պատմության վերաբերյալ իսկական գիտական աշխատության նշանակություն չստացավ։ ՍՄԿՊ Կենտկոմին կից Մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի դիրեկցիայի 1958 թ. դեկտեմբերի 19-ի, ՀԿՊ Կենտկոմի 1959 թ. մարտի 9-ի որոշումներում և ՀԿՊ Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Ս. Հ. Թովմասյանի՝ 1959 թ. մարտի 17-ին իդեոլոգիական ֆրոնտի աշխատողների ռեսպուբլիկական ժողովում կարդացած զեկուցման մեջ հանգամանորեն ցույց են տրված «Հայաստանի Կոմունիստական պարտիայի պատմության ուրվագծեր» գրքի սխալները։ Հարկ չկա նորից վերհիշել այդ բոլորը, դրանք հայտնի են ընթերցողներին, ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպություններին [1]։

Հաշվի առնելով, որ Հայաստանի Կոմունիստական պարտիայի պատմության «Ուրվագծեր»-ը իր տեսական և գաղափարական մակարդակով չի հա-

[1] «Ուրվագծերի» մասին հանգամանորեն տես, «Լենինյան ուղիով» № 3, 1959 թ., էջ 20—25, № 4, էջ 70—73։

մապատասխանում պարտիայի պատմության վերաբերյալ լուրջ գիտական հետազոտություններին ներկայացվող բարձր պահանջներին, որ նրանում կան լուրջ թերություններ ու սխալներ, ՀԿՊ Կենտրոնական Կոմիտեն որոշել է մոտակա տարիներին ստեղծել լիարժեք գիտական աշխատություն Հայաստանի Կոմունիստական պարտիայի պատմության վերաբերյալ։

Ղեկավարվելով ՀԿՊ Կենտկոմի ցուցումներով, ՍՄԿՊ Կենտկոմին կից Մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի Հայկական ֆիլիալը միջոցառումներ է մշակել Հայաստանի ԿՊ պատմության նոր «Ուրվագծեր»-ի ստեղծման մասին, որոնք արժանացրել են ՀԿՊ Կենտկոմի և ՍՄԿՊ Կենտկոմին կից Մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի հավանությանը։ ՀԿՊ Կենտկոմի բյուրոյի 1959 թ. մայիսի 8-ի նիստում հաստատված «Միջոցառումներում» նախատեսված է առաջիկա երկու-երեք տարիներին ֆիլիալի կոլեկտիվի հիմնական ուշադրությունը կենտրոնացնել նոր «Ուրվագծեր»-ի ստեղծման վրա։ Մեծացվել է նոր «Ուրվագծեր»-ի հեղինակային կոլեկտիվը. (Նախկին 5 հեղինակների փոխարեն այժմ հեղինակներ են հաստատված 36 մարդ), ի հաշիվ ռեսպուբլիկայի բարձրորակ պատմաբանների, փիլիսոփաների, տնտեսագետների, իրավաբանների, պարտիական ղեկավար աշխատողների, Հայրենական Մեծ պատերազմի պատմության գիտակ ռազմիկների։ Հեղինակային կոլեկտիվի հետ միասին ֆիլիալը պատրաստել է Հայաստանի Կոմունիստական պարտիայի պատմության նոր «Ուրվագծեր»-ի սխեմայի նախագիծ, որի համաձայն նախորդ «Ուրվագծեր»-ի 11 գլուխների փոխարեն այժմ նախատեսված է 16 գլուխ։ Նախորդ գրքում 1907 թվականից մինչև 1917 թվականի մարտը տրված էր մի գլխով (գլուխ երրորդ), նոր «Ուրվագծերում» նախատեսվում է տալ 3 գլխով։ Այսպես.

1) Հայաստանի բոլշևիկները ռեակցիայի տարիներին (1907—1910 թթ.)։

2) Հայաստանի բոլշևիկները ռևոլյուցիոն նոր վերելքի տարիներին (1910—1914 թթ.) և

3) Հայաստանի բոլշևիկները առաջին համաշխարհային պատերազմի տարիներին։ Փետրվարյան ռևոլյուցիան Ռուսաստանում (1914—1917 թթ. փետրվար)։

Նախկին չորրորդ գլխի փոխարեն (1917-1920 թթ.) այժմ նախատեսված է տալ 2 գլուխ՝

1) Հայաստանի բոլշևիկյան կազմակերպությունները Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի նախապատրաստման և իրագործման ժամանակաշրջանում (1917 թ. մարտ—1917 թ. նոյեմբեր) և

2) Հայաստանի կոմունիստական կազմակերպությունների պայքարը Սովետական իշխանության հաղթանակի համար (1917 թ. նոյեմբեր—1920 թ. դեկտեմբեր)։

Նախկին 6-րդ գլխի փոխարեն, որը վերնագրված էր, «Հայաստանի Կոմունիստական պարտիան երկրի ինդուստրացման և գյուղատնտեսության կոլեկտիվացման համար մղված պայքարում։ Սոցիալիստական էկոնոմիկայի ֆունդամենտի կառուցումը (1926—1932 թթ.)», նոր «Ուրվագծերում» նախատեսվում է տալ երկու գլուխ՝

1) Հայաստանի Կոմունիստական պարտիան երկրի սոցիալիստական ինդուստրացման և գյուղատնտեսության համատարած կոլեկտիվացման նախապատրաստման ժամանակաշրջանում (1926—1929 թթ.)։

2) Հայաստանի Կոմունիստական պարտիան ամբողջ ճակատով սոցիալիզմի հարձակման ժամանակաշրջանում։ Կոլտնտեսային կարգի ստեղծումը (1929—1932 թթ.)։



Փոփոխություններ են մտցված հաջորդ գլուխների պերիոդիզացիայի մեջ։ Հայաստանի կոմունիստական պարտիայի 1958 թ. հետո ընկած ժամանակաշրջանի պատմությունը տրվելու է առանձին գլխով՝ գլուխ XVI «Հայաստանի կոմունիստական պարտիան կոմունիստական հասարակարգի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում» խորագրով։ Արմատական փոփոխություններ են կատարվել ենթավերնագրերի (պարագրաֆների) մեջ։

ՀԿՊ պատմության նոր «Ուրվագծեր» գրքի պերիոդիզացիայի մեջ կատարված փոփոխությունների ընթացքում ֆիլիալն ու հեղինակային կոլեկտիվը ելակետ են ունեցել Վ. Ի. Լենինի ««Ձախության» մանկական հիվանդությունը կոմունիզմի մեջ» հռչակավոր աշխատությունում տրված պարտիայի պատմության լենինյան պերիոդիզացիան, ՍՄԿՊ պատմության նոր դասագիրքը, Հայաստանի Կոմունիստական պարտիայի անցած ուղու փորձը, հրապարակված «Ուրվագծեր»-ի առթիվ եղած քննադատական արդարացի դիտողությունները։ Քանի որ սխեման որոշակի նշանակություն ունի գրքի հաջող շարադրանքի համար, նպատակահարմար ենք գտնում ստորև հրապարակել այն, դրանով իսկ հնարավորություն ընձեռելով լայն հասարակայնությանը վաղօրոք հայտնելու իր ցանկություններն ու դիտողությունները, որոնք կքննարկվեն ֆիլիալի գիտական խորհրդի նիստում։ Ինքնին հասկանալի է, որ առաջարկվող սխեման նյութի շարադրման և մշակման ընթացքում ենթարկվելու է փոփոխությունների։ Բայց որքան հստակ լինի գրքի սխեման, որքան ճիշտ ընդգծված լինեն նյութի շրջանակները, այնքան լավ։

ՍԽԵՄԱՅԻ ՆԱԽԱԳԻԾ

ԱՌԱՋԱԲԱՆ

# ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ՈՒՐՎԱԳԾԵՐ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

## ԳԼՈՒԽ ԱՌԱՋԻՆ

### Մարքսիզմի տարածումը և սոցիալ-դեմոկրատական կազմակերպությունների ձևավորումը Հայաստանում (1880-ական թվականներից մինչև 1904 թվականը)։

1. Կապիտալիզմի զարգացումը և ժողովրդական մասսաների դրությունը Անդրկովկասում և Հայաստանում։
2. Բանվորական շարժման առաջին քայլերը։ Մարքսիզմի տարածումը և սոցիալ-դեմոկրատական առաջին խմբակների ստեղծումը։
3. Լենինյան իսկրայական կազմակերպությունները Անդրկովկասում և Հայաստանում։ Հայ սոցիալ-դեմոկրատների Միությունը և «Պրոլետարիատ» թերթը։ Վ. Ի. Լենինը Հայ սոցիալ-դեմոկրատների Միության «Մանիֆեստ»-ի մասին։
4. ՌՍԴԲՊ Կովկասյան Միության ստեղծումը։ «Պրոլետարիատի կռիվը» թերթը։
5. Բոլշևիկների պարտիայի առաջացումը և բոլշևիկյան կազմակերպությունների գործունեությունը Հայաստանում։ Պայքարը մենշևիզմի ու բուրժուական նացիոնալիզմի դեմ։ Համառոտ եզրակացություններ։

## ԳԼՈՒԽ ԵՐԿՐՈՐԴ

### Հայաստանի բոլշևիկյան կազմակերպությունները ռուսական առաջին ռևոլյուցիայի ժամանակաշրջանում (1905—1907 թթ.)։

1. Ռևոլյուցիոն շարժումների աճը Անդրկովկասում և Հայաստանում հունվարի 9-ի դեպքերից հետո։ ՌՍԴԲՊ III համագումարը Անդրկովկասում ռևոլյուցիոն շարժումների մասին։
2. Ռևոլյուցիայի վերելքը։ Հոկտեմբերյան քաղաքական գործադուլները։ Դեկտեմբերյան զինված ապստամբության արձագանքները Հայաստանում։
3. Հայաստանի բոլշևիկների գործունեությունը աշխատավոր մասսաների նվաճման, նրանց ինտերնացիոնալ համախմբման համար։
4. Ռևոլյուցիայի լենինյան տակտիկայի և ստրատեգիայի պաշտպանությունը Հայաստանի բոլշևիկների կողմից։ Բոլշևիկյան հայ պարբերական մամուլը։
5. Ռևոլյուցիոն շարժումները Հայաստանում 1906—1907 թթ.։

Համառոտ եզրակացություններ։

## ԳԼՈՒԽ ԵՐՐՈՐԴ

### Հայաստանի բոլշևիկները ռեակցիայի տարիներին (1907—1910 թթ.)։

1. Ստոլիպինյան ռեակցիան։ Հայաստանի սոցիալ-տնտեսական դրությունը։
2. Հայաստանի բոլշևիկների գործունեությունը ռեակցիայի ժամանակաշրջանում։
3. Պայքար հակալենինյան հոսանքների դեմ, հանուն մարքսիստական թեորիայի անաղարտության։

Համառոտ եզրակացություններ։

## ԳԼՈՒԽ ՉՈՐՐՈՐԴ

### Հայաստանի բոլշևիկները ռևոլյուցիոն նոր վերելքի տարիներին (1910—1914 թթ.)։

1. Ռևոլյուցիոն ելույթները Հայաստանում։ Պայքար Պրագայի կոնֆերանսի որոշումների կենսագործման համար։
2. Բոլշևիկյան «Պրավդա» թերթը և նրա տարածումը Հայաստանում։ Բոլշևիկյան հայ մամուլը ռևոլյուցիոն շարժման նոր վերելքի տարիներին։
3. Հայաստանի բոլշևիկների պայքարը ազգային հարցի մարքս-լենինյան թեորիայի ու ծրագրի պաշտպանության համար, ընդդեմ բուրժուական նացիոնալիզմի։ Ստ. Շահումյանի «Ազգային կուլտուրական-ավտոնոմիայի մասին» գիրքը։

Համառոտ եզրակացություններ։

## ԳԼՈՒԽ ՀԻՆԳԵՐՈՐԴ

### Հայաստանի բոլշևիկները առաջին համաշխարհային պատերազմի տարիներին։ Փետրվարյան ռևոլյուցիան Ռուսաստանում (1914թ. 1917 թ. փետրվար)։

1. Առաջին համաշխարհային պատերազմը։ Հայաստանի բոլշևիկների վերաբերմունքը դեպի պատերազմը։
2. Հայաստանի բոլշևիկների գործունեությունը առաջին համաշխարհային պատերազմի ժամանակ։
3. Փետրվարյան բուրժուա-դեմոկրատական ռևոլյուցիան։ Սովետների ստեղծումը Հայաստանում։

Համառոտ եզրակացություններ։



## ԳԼՈՒԽ ՎԵՑԵՐՈՐԴ

### Հայաստանի բոլշևիկյան կազմակերպությունները Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի նախապատրաստման և իրագործման ժամանակաշրջանում (մարտ–նոյեմբեր 1917 թ.)։

1. Իրադրությունը Հայաստանում փետրվարյան ռևոլյուցիայից հետո։ Հայաստանի բոլշևիկյան կազմակերպությունների աշխատանքը նոր պայմաններում։
2. ՌՍԴԲՊ Ապրիլյան կոնֆերանսը։ Հայաստանի բոլշևիկյան կազմակերպությունները ռևոլյուցիայի խաղաղ զարգացման, մասսաների նվաճման համար մղվող պայքարում։
3. Պարտիայի VI համագումարը։ Ռևոլյուցիոն շարժման վերելքը Հայաստանում 1917 թ. ամռանը և աշնանը։
4. Բոլշևիկյան կազմակերպությունների Կովկասյան երկրային I համագումարը։
5. Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի հաղթանակը։

Համառոտ եզրակացություններ։

## ԳԼՈՒԽ ՅՈԹԵՐՈՐԴ

### Հայաստանի Կոմունիստական կազմակերպությունների պայքարը Սովետական իշխանության հաղթանակի համար (1917 թ. նոյեմբերից մինչև 1920 թ. դեկտեմբերը)։

1. Իրադարձությունները Անդրկովկասում և Հայաստանում Հոկտեմբերյան ռևոլյուցիայից հետո։
2. Հայաստանի կոմունիստական կազմակերպությունները հակասովետական բլոկի և օտարերկրյա ինտերվենտների դեմ մղված պայքարում։
3. Հայաստանի կոմունիստական կազմակերպությունները դաշնակցության տիրապետության դեմ մղվող պայքարի կազմակերպիչներ։
4. Հայաստանի Կոմունիստական պարտիայի կազմակերպական ձևավորումը։
5. 1920 թ. մայիսյան զինված ապստամբությունը Հայաստանում։
6. Սովետական իշխանության հաղթանակը Հայաստանում։ Կոմունիստական պարտիան հայ ժողովրդի ազատարար։

Համառոտ եզրակացություններ։

## ԳԼՈՒԽ ՈՒԹԵՐՈՐԴ

### Հայաստանի Կոմունիստական պարտիան ժողովրդական տնտեսության վերականգնման ժամանակաշրջանում (1921—1925 թթ.)։

1. Սովետական իշխանության սոցիալիստական առաջին միջոցառումները։
2. Հայաստանի կոմունիստական կազմակերպությունների ամրապնդումը։
3. Հայաստանի Կոմունիստական պարտիայի պայքարը սովետական կարգերի ամրապնդման համար։ Կոմունիստական պարտիան Հայաստանի քաղաքացիական կռիվների հաղթանակի կազմակերպիչ։
4. Պարտիայի X համագումարը և Կոմունիստական պարտիայի նոր տնտեսական քաղաքականությունը։ Վ. Ի. Լենինի նամակը Կովկասի կոմունիստներին։ ՀԿՊ պայքարը ժողովրդական տնտեսության վերականգնման համար։
5. Հայաստանի կոմպարտիայի I համագումարը։ Սովետական Հայաստանի առաջին կոնստիտուցիան։ Անդրկովկասի Կոմունիստական պարտիայի I համագումարը։ Անդրերկրմի ստեղծումը։
6. Անդրկովկասյան ֆեդերացիայի և ՍՍՌՄ-ի կազմավորումը։ Հայաստանի Կոմպարտիայի II համագումարը։
7. Պարտիայի XII համագումարը։ Պայքար լենինյան ազգային քաղաքականության հաղթանակի համար։ ՀԿՊ III համագումարը։

8. Վ. Ի. Լենինի մահը, լենինյան կոչը, պարտիայի XIII համագումարը, պարտիայի շարքերի միասնության հետագա ամրապնդումը։
9. Հայաստանի կոմպարտիայի IV համագումարը։ Ժողովրդական տնտեսության վերականգնման հանրագումարները։
Համառոտ եզրակացություններ։

## ԳԼՈՒԽ ԻՆՆԵՐՈՐԴ

Հայաստանի Կոմունիստական պարտիան երկրի սոցիալիստական ինդուստրացման և գյուղատնտեսության համատարած կոլեկտիվացման նախապատրաստման ժամանակաշրջանում (1926—1929 թթ.)։

1. Պարտիայի XIV համագումարը։ Երկրի սոցիալիստական ինդուստրացման կուրսը։ ՀԿՊ-ի խնդիրների նոր էտապում։
2. ՀԿՊ V համագումարը։ Ինդուստրացման առաջին հաջողությունները ռեսպուբլիկայում։ Ներպարտիական պայքարի սրումը, տրոցկիստական-զինովևական օպոզիցիայի ջախջախումը։
3. Պարտիայի XV համագումարը։ Գյուղատնտեսության կոլեկտիվացման կուրսը։ Պարտիայի XV համագումարի որոշումների կենսագործումը։
4. Պայքար աջ օպորտունիզմի դեմ։ Բուրժուական նացիոնալիզմի և նացիոնալ-ուկլոնիզմի ռեցիդիվների ջախջախումը ՀԿՊ-ում։ ՀԿՊ VI համագումարը։
5. Ժողովրդական տնտեսության զարգացման առաջին հնգամյա պլանը։ Հայկական ՍՍՌ ժողովրդական տնտեսության զարգացման հիմնական խնդիրները առաջին հնգամյակում։
6. Մասսայական սոցիալիստական մրցության սկիզբը։ ՀԿՊ պայքարը ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության, կուլտուրայի ու գիտության նոր վերելքի համար։
Համառոտ եզրակացություններ։

## ԳԼՈՒԽ ՏԱՍՆԵՐՈՐԴ

Հայաստանի Կոմունիստական պարտիան ամբողջ ճակատով սոցիալիզմի հարձակման ժամանակաշրջանում։ Կոլտնտեսային կարգի ստեղծումը (1929—1932 թթ.)։

1. Գյուղատնտեսության համատարած կոլեկտիվացումը ռեսպուբլիկայում։ Անցումը կուլակության որպես դասակարգ լիկվիդացնելու քաղաքականությանը։ ՀԿՊ VII համագումարը։ Պայքար պարտիայի XVI համագումարի որոշումների կատարման համար։
2. ՀԿՊ կազմակերպական ու քաղաքական աշխատանքը ամբողջ ճակատով սոցիալիզմի հարձակման պայմաններում։
3. ՀԿՊ պայքարը ժողովրդական տնտեսության տեխնիկական վերազինման համար։ ՀԿՊ VIII համագումարը։ Առաջին հնգամյակի հանրագումարները։
Համառոտ եզրակացություններ։

## ԳԼՈՒԽ ՏԱՍՆՄԵԿԵՐՈՐԴ

Հայաստանի Կոմունիստական պարտիայի պայքարը ժողովրդական տնտեսության սոցիալիստական վերակառուցումն ավարտելու համար (1933—1937 թթ.)։

1. Ժողովրդական տնտեսության երկրորդ հնգամյակը և պարտիայի պայքարը սոցիալիստական էկոնոմիկայի ամրապնդման և զարգացման համար։ Քաղբաժինների ստեղծումը։ Պարտիական-քաղաքական աշխատանքների ուժեղացումը մասսաների մեջ։
2. ՀԿՊ IX համագումարը։ Պայքար պարտիայի XVII համագումարի որոշումների կենսագործման համար։
3. Սոցիալիզմի հաղթանակը ՍՍՌՄ-ում։ Հայկական ՍՍՌ-ի երկրորդ հնգամյակի վերջում։



4. Սովետական նոր Կոնստիտուցիան։ Անդրֆեդերացիայի վերացումը։ Հայկական ՍՍՌ Միութենական ռեսպուբլիկա։ Հայկական ՍՍՌ նոր Կոնստիտուցիան։
Համառոտ եզրակացություններ։

## ԳԼՈՒԽ ՏԱՍՆԵՐԿՈՒԵՐՈՐԴ

Հայաստանի Կոմունիստական պարտիան սոցիալիստական հասարակարգի ամրապնդման ու զարգացման համար մղվող պայքարում։ Երկրի պաշտպանունակության ուժեղացումը (1937—1941 թթ. հունիս)։

1. ՀԿՊ պարտիական-քաղաքական աշխատանքը հաղթանակած սոցիալիզմի պայմաններում։ ՀԿՊ X և XI համագումարները։
2. Պարտիայի XVIII համագումարը։ ՀԿՊ պայքարը ժողովրդական տնտեսության հետագա զարգացման և երկրի պաշտպանունակության ուժեղացման համար։
3. ՀԿՊ XIII համագումարը։
4. Հայաստանի պարտիական կազմակերպությունների գործունեությունը աշխատավորների նյութական ու կուլտուրական մակարդակի բարձրացման, նրանց գաղափարական դաստիարակության ուղղությամբ։
Համառոտ եզրակացություններ։

## ԳԼՈՒԽ ՏԱՍՆԵՐԵՔԵՐՈՐԴ

Հայաստանի Կոմունիստական պարտիան Հայրենական Մեծ պատերազմի ժամանակաշրջանում (1941 թ. հունիս — 1945 թ.)։

1. Ֆաշիստական Գերմանիայի ուխտադրուժ հարձակումը Սովետական Միության վրա։ Սովետական ժողովրդի Հայրենական Մեծ պատերազմի սկիզբը։
2. Հայաստանի Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ ռեսպուբլիկայի աշխատավորության ուժերի ու միջոցների մոբիլիզացիան թշնամուն հակահարված տալու համար։
3. Պարտիական-քաղաքական, կազմակերպական աշխատանքների և ժողովրդական տնտեսության վերակառուցումը պատերազմի պահանջների համապատասխան։ Համաժողովրդական օգնություն ռազմաճակատին։
4. Հայաստանի Կոմունիստական պարտիայի աշխատանքը ազգային զորամասերի կազմակերպման, ռազմիկների մարտական-քաղաքական դաստիարակության ուղղությամբ.
5. Հայ ժողովրդի զավակների հերոսական սխրագործությունները ռազմաճակատներում։
6. Պատերազմի հաղթական ավարտումը։
Համառոտ եզրակացություններ։

## ԳԼՈՒԽ ՏԱՍՆՉՈՐՍԵՐՈՐԴ

Հայաստանի Կոմունիստական պարտիայի պայքարը հետպատերազմյան շրջանում ժողովրդական տնտեսության վերականգնման ու զարգացման համար (1945—1953 թթ.)։

1. Պարտիան պատերազմից խաղաղ տնտեսական շինարարության անցնելու ժամանակաշրջանում։ Հայկական ՍՍՌ ժողովրդական տնտեսության վերականգնման ու զարգացման հիմնական խնդիրները 4-րդ հնգամյակում։
2. Պարտիայի միջոցառումները իդեոլոգիական ճակատում։ ՀԿՊ XIV համագումարը։
3. Չորրորդ հնգամյակի հանրագումարները։ ՀԿՊ XV համագումարը։
4. Հայաստանի Կոմպարտիայի պայքարը 5-րդ հնգամյակի խնդիրները ռեսպուբլիկայում կենսագործելու համար։ ՀԿ(բ)Պ XVI համագումարը։
5. Հայաստանի պարտիական կազմակերպությունների աշխատանքը ՍՄԿՊ XIX համագումարի դիրեկտիվների կենսագործման ուղղությամբ։
Համառոտ եզրակացություններ։

## Գ Լ Ո Ւ Խ Տ Ա Ս Ն Հ Ի Ն Գ Ե Ր Ո Ր Դ

Հայաստանի Կոմունիստական պարտիայի պայքարը ժողովրդական տնտեսության հզոր վերելքի, սոցիալիզմի կառուցումն ավարտելու համար (1953—1958 թթ.)։

1. *Հայաստանի Կոմունիստական պարտիայի աշխատանքի վերակառուցումը պարտիական կյանքի լենինյան նորմաների հիման վրա։ Անձնի պաշտամունքի հետ կապված սխալների ու թերությունների վերացումը։ ՀԿՊ XVII համագումարը։*
2. *Հայաստանի Կոմպարտիան գյուղատնտեսության շեշտակի վերելքը ապահովելու համար մղված պայքարում։*
3. *ՀԿՊ XVIII համագումարը։ Հայաստանի կոմպարտիայի գործունեությունը ՍՄԿՊ XX համագումարի որոշումների կենսագործման բնագավառում։*
4. *Պարտիայի ղեկավար դերի բարձրացումը և նրա շարքերի միասնության ամրապնդումը։*
5. *Հայաստանի Կոմպարտիայի աշխատանքը արդյունաբերության ու շինարարության կառավարումը վերակառուցելու ուղղությամբ։ Պարտիայի միջոցառումների կենսագործումը կոլտնտեսային շինարարության բնագավառում։*
6. *Մեծ Հոկտեմբերի 40-ամյա նվաճումների հանրագումարները։ Լենինյան ազգային քաղաքականության հաղթանակը։*
7. *ՀԿՊ XIX համագումարը։*
   *Համառոտ եզրակացություններ։*

## Գ Լ Ո Ւ Խ Տ Ա Ս Ն Վ Ե Ց Ե Ր Ո Ր Դ

Հայաստանի Կոմունիստական պարտիան կոմունիստական հասարակարգի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում։

1. *ՍՍՌՄ-ի թևակոխումը կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանը։ 7-ամյա պլանի թեզիսների համաժողովրդական քննարկումը։ ՀԿՊ XX համագումարը։*
2. *ՍՄԿՊ XXI համագումարը։ Հայաստանի Կոմպարտիայի պայքարը XXI համագումարի դիրեկտիվների կենսագործման համար։*
3. *Համաժողովրդական պայքար յոթնամյա պլանը ժամկետից շուտ կատարելու համար։*
4. *Հայաստանի Կոմունիստական պարտիայի 40-ամյակը և Հայկական ՍՍՌ 40-ամյա նվաճումների հանրագումարները։*
5. *Կոմունիստական պարտիան սովետական ժողովրդի ղեկավար և կազմակերպող ուժն է կոմունիզմի հաղթանակի համար մղվող պայքարում։*
   *Համառոտ եզրակացություններ։*
   *ԱՄՓՈՓՈՒՄ*

### III

*Հայտնի է, որ նախորդ «Ուրվագծեր»-ում Հայաստանի ռևոլյուցիոն շարժումների և կոմունիստական կազմակերպությունների պատմության կարևոր նշանակություն ունեցող բազմաթիվ հարցեր տեսականորեն չեն ընդհանրացվել, իսկ մի շարք հարցեր հեղինակների կողմից կամ շրջանցվել են կամ սխալ լուսաբանվել։ Խոր և հստակ չեն պարզաբանվել այնպիսի հարցեր, ինչպիսիք են՝ մասսաների նվաճման և նացիոնալիստական պարտիաների ազդեցությունից նրանց զերծ պահելու համար Անդրկովկասի բոլշևիկյան կազմակերպությունների պայքարի դժվարությունները, 1920 թվականի մայիսյան ապստամբության պարտության պատճառները, Հայաստանում բանվորների ու զինվորների դեպուտատների Սովետների ստեղծումն ու նրանց դերը, տարբեր քաղաքական պարտիաների ու խմբերի գործունեությունը՝ Սովետական իշխանության հաստատման համար Հայաստանի Կոմունիստական պարտիայի մղած պայքարի ժամանակաշրջանում։ Տեսական ցածր մակարդակով են լուսաբանված ՀԿՊ կազմակերպական ձևավորման հարցը, Սովետական իշխա-*



*նության հաստատման համար Հայաստանի Կոմպարտիայի մղած պայքարի պայմանները, մասնավորապես Ադրբեջանում Սովետական իշխանության հաղթանակի նշանակությունը, Կոմունիստական պարտիայի քաղաքականությունը գյուղում և բանվոր դասակարգի ու գյուղացիության դաշինքի հարցերը, երկրի ինդուստրացման և գյուղատնտեսության կոլեկտիվացման քաղաքականության կենսագործումը և այլ հարցեր, որոնց մասին իրավացիորեն նշված է ՀԿՊ Կենտկոմի որոշման մեջ։*

*Այս և նման թերությունները ու սխալները կանխելու, շրջանցված և վիճելի պրոբլեմները ճիշտ լուծելու նպատակով դրանք պարբերաբար կքննարկվեն ֆիլիալի գիտական խորհրդի նիստերում։ Այսպես, օրինակ, առաջիկայում այդ պրոբլեմներից քննության կառնվեն. 1) Հայաստանի Կոմունիստական պարտիայի կազմակերպական ձևավորումը,*

*2) Այսպես կոչված «Հայաստանի Կոմունիստական կուսակցությունը» խմբի մասին (1918—1920 թթ.),*

*3) 1920 թ. մայիսյան ապստամբության բնույթն ու պարտության պատճառները,*

*4) Սովետները Հայաստանում (1917—1920 թթ.) և այլն։*

*Անդրկովկասի բոլշևիկյան կազմակերպությունների պատմության և ռևոլյուցիոն շարժումների արմատական մի շարք հարցեր քննության են առնվելու ՍՄԿՊ Կենտկոմին կից Մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտում։ Առանձին հարցեր ճիշտ լուծելու և դրանց լուսաբանման մեջ եղած տարակարծությունները, իրարամերժ տեսակետները վերացնելու նպատակով համագործակցված աշխատանք է կատարվելու Վրացական, Ադրբեջանական ֆիլիալների և Անդրկովկասի պատմաբանների հետ, լրացուցիչ հետազոտություններ են կատարվելու արխիվներում՝ նոր նյութեր հայտաբերելու ուղղությամբ և այլն։*

*Անդրկովկասյան ֆիլիալների և մասնագետների ուժերով հատկապես համատեղ քննության կառնվեն ՌՍԴԲՊ Թիֆլիսի, Բաքվի, Բաթումի, Ալեքսանդրապոլի և այլ կոմիտեների առաջացման, ՌՍԴԲՊ Կովկասյան Միութենական Կոմիտեին, Կովկասյան բյուրոյին, Կովկասյան երկրային կոմիտեին, քաղաքական առանձին գործիչներին տրված տարբեր կարծիքները, մինչև 1920 թ. Անդրկովկասի բոլշևիկյան կազմակերպությունների համատեղ գործունեության լուսաբանման հետ կապված մի շարք կարևոր հարցեր։*

*«Ուրվագծեր»-ի յուրաքանչյուր պատրաստի գլուխ քննարկվելու է պարտիայի պատմության սեկտորում, հրապարակվելու է ինստիտուտի «Գիտական աշխատություններ» ժողովածուում, կամ «Լենինյան ուղիով» ամսագրում, իսկ «Ուրվագծեր»-ը ամբողջությամբ նախքան հրատարակության ներկայացնելը քննարկվելու է մակետի ձևով։*

*«Ուրվագծեր»-ի տեքստը նախապատրաստվելու է հայերեն և ռուսերեն լեզուներով, մակետը ևս տրվելու է երկու լեզվով, դրանով իսկ հնարավորություն է ընձեռվելու ռեսպուբլիկայից դուրս գտնվող մասնագետներին, ռևոլյուցիոն գործիչներին, պատմաբաններին իրենց դիտողություններն ու ցանկությունները հայտնելու։*

*Նոր «Ուրվագծեր»-ը նախատեսված է հրատարակել մեկ գրքով, մինչև 30 մամուլ ծավալով։*

Հաշվի առնելով յուրաքանչյուր հեղինակային կոլեկտիվի առաջարկությունները, առաջիկայում ինստիտուտը կկազմի «Ուրվագծեր»-ի շարադրման գրաֆիկ պլան, այն հաշվով, որպեսզի 1960 թվականի առաջին կեսին ստացվեն նախնական ձեռագրերը քննարկման համար։ Առաջին հերթին քննարկման կդրվեն Հայաստանի Կոմպարտիայի մինչև 1920 թ. պատմությանը նվիրված բաժինները, իհարկե, դա չի խանգարում, որ սովետական շրջանի պատմությանը նվիրված պատրաստի բաժինները ևս այդ ժամանակ քննարկվեն։ Ճիշտ է, նախատեսված է «Ուրվագծեր»-ը ստեղծել առաջիկա երկու-երեք տարում։ Բայց միաժամանակ պետք է նշել, որ եթե պահանջված տեսական-գաղափարական մակարդակով (առանց ավելորդ շտապողականության և գռեհայնության) մենք ավելի շուտ տանք գիրքը, ավելի լավ կլինի և գործնական աշխատանքով պատասխանած կլինենք ՀԿՊ Կենտկոմի որոշմանը։

Հեղինակային կոլեկտիվին օգնելու նպատակով ինստիտուտը կոնկրետ միջոցառումներ է մշակել արխիվային նոր նյութերի և փաստաթղթերի հայտաբերման ուղղությամբ։ Ուժեղացվելու է կապը երկրի պարտիական արխիվների միջև բոլշևիկյան կազմակերպությունների գործունեությունը արտացոլող փաստաթղթերի և նյութերի մասին փոխադարձ ինֆորմացիա ստանալու նպատակով։

Ինստիտուտի գիտա-հետազոտական աշխատանքների առաջիկա 7-ամյա պլանը կազմվել է այն հաշվով, որ նպաստի «Ուրվագծեր»-ի ստեղծմանը։ Պլանում նախատեսված է հետազոտել ՀԿՊ պատմության մի շարք պրոբլեմներ, հրատարակության պատրաստել փաստաթղթերի մի քանի ժողովածուներ, այդ թվում՝ Վ. Ի. Լենինը Հայաստանի մասին, Վ. Ի. Լենինի աշխատությունների հայերեն հրատարակությունների բիբլիոգրաֆիան, հայերեն ռևոլյուցիոն պրոկլամացիաներ և կոչեր (1900-1920 թթ. ). Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան և Սովետական իշխանության հաղթանակը Հայաստանում, Հայաստանի Կոմպարտիայի կազմակերպական ձևավորումը, Ս. Սպանդարյանի Երկերը, հին բոլշևիկների հիշողությունների երկրորդ գիրքը, ՀԿՊ-ն համագումարների, կոնֆերանսների և պլենումների որոշումներում և բանաձևերում, գիտական աշխատությունների ժողովածուներ։

«Հայաստանի մասին» ժողովածուում զետեղվելու են հայ ժողովրդի մեծ բարեկամ, մարդկության հանճարեղ առաջնորդ Վ. Ի. Լենինի այն բոլոր աշխատությունները, որոնցում խոսվում է հայ իրականության, Հայաստանի և հայ ժողովրդի ազատագրական պայքարի, հայ ականավոր մարքսիստների և քաղաքական-հասարակական գործիչների հետ ունեցած կապերի մասին։ Երկրի տարբեր արխիվներից հայտաբերվել և տպագրության է պատրաստվել 1900-1920 թվականներին հայատառ լույս տեսած ռևոլյուցիոն, բոլշևիկյան կոչերը, պրոկլամացիաներն ու թռուցիկները, թվով մոտ 150 հատ, որոնք պատմում են ՌՍԴԲՊ Կենտկոմի, ՌՍԴԲՊ Թիֆլիսի, Բաքվի, Ալեքսանդրոպոլի, Երևանի, Բորչալուի, Ղարսի, Շուշու և այլ կոմիտեների, ինչպես նաև ՌՍԴԲՊ Կովկասյան Միության կատարած քաղաքական-մասսայական աշխատանքի, ռուսական երեք ռևոլյուցիաների և Հայաստանի՝ 1917—1920 թվականների սովետական կարգերի հաղթանակի համար մղված հերոսական պայքարի մասին։

«Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան և Սովետական իշխանության հաղթանակը Հայաստանում» փաստաթղթերի ժողովածուն, որը



ռուսերեն լեզվով լույս է տեսել 1957 թ., հարստացվել է մի շարք նորահայտ փաստաթղթերով և զերծ է այնտեղ տեղ գտած որոշ ավելորդ նյութերից։

Հայաստանի Կոմունիստական պարտիայի և ռևոլյուցիոն շարժումների պատմության լուսաբանության գործում արժեքավոր են մեմուարային գրականությունը, հին բոլշևիկների, ռևոլյուցիայի վետերանների հիշողությունները։ Վերջին տարիներին լայն զարգացում է ստացել այդ ժանրը։ Հրապարակ են եկել ոչ քիչ թվով հիշողությունների ժողովածուներ, որոնք որոշակի գիտական-քաղաքական հետաքրքրություն են ներկայացնում և հարստացնում են Սովետական պատմագիտությունը։ Ուշագրավ են ֆիլիալի կողմից տպագրության պատրաստված «Հին բոլշևիկների հիշողությունները» գրքի առաջին մասում զետեղված Ալ. Մյասնիկյանի, Ա. Մռավյանի, Ս. Մարտիկյանի, Աս. Կախոյանի, Գ. Մելիք-Գրիգորյանի, Ա. Կարինյանի, Ս. Սահակյանի, Մ. Սարգըսյանի, Լ. Հովսեփյանի, Սիրուշ Հակոբյանի, Գ. Աթարբեկյանի հիշողությունները։ Դրանք լրջորեն նպաստում են Անդրկովկասի ռևոլյուցիոն շարժումների պատմության ուսումնասիրությանը։ Սակայն քիչ չեն այն մեմուարային ժողովածուներն ու գործերը, որոնք տառապում են լուրջ արատներով, չունեն նպատակասլացություն, գրված են հապճեպ, երկրորդական, պատմության համար առանձին արժեք չներկայացնող նյութերի հիման վրա։ Ցավալին այն է, որ որոշ հեղինակներ հետին թվով ինքնակոչ պատմաբաններ են դարձել և փորձում են սեփական ձեռքերով կերտել իրենց պատմությունը։ Այդ դեռ բոլորը չէ։ Նրանց հաջողվում է իրենց հորինած պատմությունները հրատարակել, իսկ մեր որոշ պատմաբաններ էլ անքննադատաբար օգտագործելով նմանօրինակ հիշողությունները, իրենց աշխատություններով չփոթ են ստեղծում այս կամ այն հարցի լուսաբանման գործում։ Հենց նախկին «Ուրվագծեր»-ի թերություններից մեկն էլ նմանօրինակ հիշողությունների առատաձեռն և անքըննադատ օգտագործումն է։ Եթե դատելու լինենք մի քանի ընկերների գրած հիշողություններով, ստացվում է, որ 1880-ական թվականներից մինչև 1920 թվականը Հայաստանի յուրաքանչյուր գյուղում, ձեռնարկությունում բոլշևիկյան կազմակերպություններ են եղել, որոնք նույնիսկ ռեակցիայի տարիներին ոչ միայն տեղի չեն տվել, այլ ավելի են ակտիվացրել իրենց գործունեությունը։ Պարզ է, որ իրականում այդպես չի եղել։ Նոր «Ուրվագծեր»-ի ստեղծման ժամանակ հարկավոր է զգուշորեն օգտագործել հիշողությունները, նրանցում եղած փաստերը ստուգել, ճշտել պատմական վավերագրերով և այլ կողմնակի նյութերով։

«Ուրվագծեր»-ի հեղինակային կոլեկտիվը, հաշվի առնելով անցյալի փորձը, պետք է խուսափի ՀԿՊ պատմության հետ ուղղակի առնչություն չունեցող ավելորդ մանրամասնություններից, հարկավոր է խուսափել երկու ծայրահեղություններից՝ մի կողմից ՀԿՊ պատմության «Ուրվագծեր»-ը չվերածել հայ ժողովրդի պատմության ձեռնարկի, անհարկի ծանրաբեռնել ընդհանուր պատմության նյութերով, իսկ մյուս կողմից՝ չաղքատացնել պարտիայի պատմության շարադրանքը և այն չկտրել Հայաստանի աշխատավորության մղած պայքարի, հայ ժողովրդի պատմության հարցերից։

Անհրաժեշտ է լիովին բացահայտել Վ. Ի. Լենինի ականավոր դերը Սովետական Միության Կոմպարտիայի և նրա մարտական ջոկատների ստեղծման ու կոփման գործում, նրա բացառիկ դերը աշխարհում առաջին սոցիալիստական պետության ստեղծման ու ամրապնդման, միջազգային պրոլետա-

րիատի ռևոլյուցիոն շարժումների, հարստահարված ժողովուրդների ազգային-ազատագրական պայքարի, մարքսիզմի հետագա զարգացման գործում։ Ինքնին պարզ է, որ «Ուրվագծեր»-ում պետք է լայնորեն լուսաբանվի մեծ Լենինի դերը հայ ժողովրդին կործանումից փրկելու, Հայաստանի Կոմպարտիայի ստեղծման ու ամրապնդման գործում։

Հայաստանի Կոմունիստական պարտիան իր ձևավորման առաջին իսկ օրից աճել և ամրապնդվել է լենինիզմին խորթ ու թշնամական հոսանքների, բուրժուա-նացիոնալիստական կազմակերպությունների, բուրժուական ռեակցիոն գաղափարախոսության դեմ մղած անհաշտ պայքարում։ Նա ջախջախել և իր շարքերից դուրս է շպրտել պարտիայի մեջ խցկված ամեն գույնի օպորտունիստներին ու հաշտվողականներին, կոմունիստի բարձր կոչումը արատավորողներին։ Նոր «Ուրվագծեր»-ում պետք է ամբողջ ուժով բացահայտել Հայաստանի Կոմպարտիայի անհաշտ պայքարը նացիոնալիզմի ռեցիդիվների և նրան արվող զիջումների դեմ, որ թույլ են տվել անցյալում Հայաստանի Կոմպարտիայի որոշ ղեկավար գործիչներ։

Առաջվա նման ինստիտուտի գլխավոր խնդիրը մնում է Հայաստանի Կոմունիստական պարտիայի պատմության գիտական լիարժեք ձեռնարկի ստեղծումը, որի համար կան բոլոր հնարավորությունները։ Ինստիտուտի ստեղծագործական կոլեկտիվի և հեղինակների պատվի գործն է ստեղծել նոր «Ուրվագծեր», որը գիտականորեն լուսաբանի ՍՄԿՊ մարտական ջոկատներից մեկի՝ Հայաստանի Կոմպարտիայի բեղմնավոր գործունեությունը և տոգորված լինի լենինյան պարտիականության ու խոր գաղափարականության ոգով։

---

# ՏՆՏԵՍԱԿԱՆ ՀԱՇՎԱՐԿԻ ԱՐՄԱՏԱՎՈՐՈՒՄԸ ԿՈԼՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՒՄ

Զ. ԶԱՔԱՐՅԱՆ

Տնտեսական հաշվարկը սոցիալիստական ձեռնարկությունների տնտեսավարման մեթոդն է։ Այն պահանջում է, որ ամեն մի ձեռնարկություն իր արտադրանքի հաշվին վերականգնի տնտեսական գործունեության հետևանքով կատարած ծախսերը, կուտակումներ տա ընդլայնված վերարտադրության համար և ապահովի արտադրության եկամտաբերությունը։ Լենինը մատնանշում է, որ սոցիալիզմը կառուցել կարելի է «ոչ թե անմիջական խանդավառության վրա, այլ հենվելով անձնական շահագրգռվածության, տնտեսական հաշվարկի վրա»։

Սոցիալիստական արդյունաբերության, արհեստագործական կոոպերացիայի ձեռնարկություններն ու սովխոզներն աշխատում են տնտեսական հաշվարկի սկզբունքով։ Այժմ խնդիր է դրված, որպեսզի կոլտնտեսություններն էլ գործեն տնտեսական հաշվարկի հիմունքներով։

Պարտիայի և կառավարության վերջին տարիների իրականացրած միջոցառումները մեծ հնարավորություն են ստեղծել գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացման, կոլտնտեսություններում ապրանքա-դրամային հարաբերությունների զարգացման, աշխատանքի արտադրողականության հետագա բարձրացման, արտադրանքի ինքնարժեքի իջեցման, կոլտնտեսությունների եկամտաբերության բարձրացման և տնտեսական հաշվարկի արմատավորման համար։

Տնտեսական հաշվարկը պայմանավորված է արժեքի օրենքի գործողությամբ։ Այն հիմնված է դրամական արտահայտությամբ համարժեքային փոխանակության վրա։ Այսպիսով, տնտեսական հաշվարկի արմատավորման գլխավոր պայմանը ապրանքա-դրամային հարաբերությունների առկայությունն է։ Ամեն մի ձեռնարկության մեջ տնտեսական հաշվարկի արմատավորման գլխավոր պայմանը նրա արտադրության, տնտեսական գործունեության ընդլայնումն է, ինչպես նաև արդյունքի վերջնական իրացումի դրամական հաշվառումը՝ ռուբլու հսկողությամբ։

Սակայն մեր կոլտնտեսություններում առկա նատուրալ և կիսանատուրալ տնտեսական հարաբերությունները արգելք էին հանդիսանում տնտեսական հաշվարկի արմատավորմանը։ Այժմ էլ, բացառությամբ առաջավոր կոլտնտեսությունների, աշխօրերի վարձատրության հիմնական մասը կատարվում է բնամթերքով։ Մինչև 1956 թվականը աշխօրերի դիմաց բաշխված բերքը դրամական գնահատություն չէր ստանում։ Բայց չէ՞ որ աշխօրի դիմաց բաշխված բերքը կոլտնտեսության եկամուտների մի զգալի մասն է կազմում։ Այսպես,

օրինակ, 1950 թվականին Հոկտեմբերյանի շրջանի կոլտնտեսությունները իրենց սեփական արտադրությունից ստացած 38 084 ցենտներ հացահատիկից ըստ աշխօրերի բաշխել են 16 010 ցենտներ, կամ բերքի 42 տոկոսից ավելին, իսկ 1958 թվականին՝ 77 697 ցենտներից ըստ աշխօրերի բաշխվել է 41 815 ցենտներ։ Բացի հացահատիկից, կոլտնտեսությունները 1950 թվականին աշխօրերի դիմաց բաշխել են 2 048 ցենտներ բանջարեղեն, 5 198 ցենտներ խաղող, յուղ, պանիր և այլ մթերքներ։ Իսկ 1957 թվականին, բացի հացահատիկից, ըստ աշխօրերի բաշխել են 9 160 ցենտներ անասնակեր, 218 ցենտներ եգիպտացորեն, 305 ցենտներ յուղ, 413 ցենտներ պանիր, 17 800 լիտր գինի և այլն [1]։

Նատուրալ կարգով են գոյանում նաև կոլտնտեսության այլ ֆոնդերը՝ սերմացուն, անասնակերը, պարենային ֆոնդը, հաշմանդամների և այլ օգնության ֆոնդերը։

Քանի դեռ կոլտնտեսություններում աշխօրերի վարձատրությունը և արտադրության ծախքերը, ինչպես նաև ՄՏ կայանների բնավարձը դրամական գնահատություն չէին ստանում, կոլտնտեսության արտադրանքի ինքնարժեքի հաշվառման գործը դժվար էր։ Իսկ առանց ինքնարժեքի դրամական հաշվառման հնարավոր չէ պարզել արտադրանքի արժեքը և սահմանել, թե արտադրության ո՞ր ճյուղն է ավելի եկամտաբեր. առանց դրա տնտեսական հաշվարկ գոյություն չունի։

Կոլտնտեսություններում տնտեսական հաշվարկի արմատավորմանն արգելք էին հանդիսանում գյուղատնտեսական մթերքների մթերումների բազմազանությունը, կոլտնտեսությունների նշանակալի մասի տնտեսապես դեռ ցածր մակարդակը։

Լենինը տնտեսավարներից պահանջում էր, որպեսզի նրանք խոր թափանցեն սոցիալիստական ձեռնարկության էկոնոմիկայի մեջ, տնտեսությունը վարեն խնայողաբար՝ տնտեսական հաշվարկի սկզբունքով։ Ցիմժողկոմին ուղղած մի նամակում Վլադիմիր Իլյիչը գրել է. «Ձեռնարկությունները հիմնըված են տնտեսական հաշվարկի վրա հենց նրա համար, որպեսզի նրանք պատասխանատու լինեն և ընդսմին ամբողջապես պատասխանատու լինեն իրենց ձեռնարկությունների շահաբերության համար» (Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 35, էջ 589)։

Կոմունիստական պարտիան և Սովետական պետությունը, ղեկավարվելով Լենինի այդ ցուցումով, կոլտնտեսային շարժման դեռ առաջին տարիներին գտնում էին, որ կոլտնտեսությունները, անկախ նրանց ձևից, կազմակերպված պետք է լինեն տնտեսական հաշվարկի հիման վրա։ Պարտիայի XIV կոնֆերենցիայի «Գյուղատնտեսական և վարկային կոոպերացիայի մասին» բանաձևում ասված է. «Ամեն տեսակ կոլտնտեսությունների (ընկերությունների, արտելների, կոմունաների) կազմակերպումը պետք է ապահովի դրանց ապրանքայնության զարգացումը և կառուցվի տնտեսական հաշվարկի սկզբունքներով»։

ՍՄԿՊ XX համագումարը գյուղատնտեսության շեշտակի վերելք ստեղծելու կարևորագույն միջոցառումներից մեկը համարեց գյուղատնտեսական ար-

[1] Թվական տվյալները վերցրված են Հոկտեմբերյանի շրջանի կոլտնտեսությունների հաշվետվություններից։



տադրության արտադրանքի մեկ միավորի վրա նյութական միջոցների և ծախսումների խիստ կրճատումը։ «Հասել է ժամանակը, որպեսզի կոլտնտեսությունների, ՄՏ կայանների և սովխոզների աշխատանքները գնահատվեն ոչ թե արտադրած մթերքների քանակով, այլ նաև դրանց ինքնարժեքով»,—ասում է ընկ. Ն. Ս. Խրուշչովը։ Մի այլ զեկուցման մեջ ընկ. Խրուշչովը խնդիր դրեց, որ այսուհետև վերանորոգման-տեխնիկական և մեքենա-տրակտորային կայանները աշխատեն տնտեսական հաշվարկի սկզբունքով, իսկ կոլտնտեսությունները պետությանն ազատ գնման գների կարգով վաճառված գյուղատնտեսական մթերքների դիմաց ստացած գումարներով կարող են վերականգնել իրենց արտադրության ծախքերը և ստանալ եկամուտներ, որոնց հաշվին կարող են առանձնացնել ֆոնդերը՝ տեխնիկա գնելու, արտադրական և կոմունալ շենքեր կառուցելու ու ընդլայնված վերարտադրություն վարելու համար։

Այս ամենից բխում է կոլտնտեսությունների գործունեությունը տնտեսական հաշվարկի հիմքերի վրա դնելու անհրաժեշտությունը։

Սոցիալիստական պետությունն իրականացնում է պետական ձեռնարկությունների պլանային ղեկավարությունը։ Նա ժողովրդական տնտեսության պլանաչափ, պրոպորցիոնալ զարգացման օրենքի պահանջներին համապատասխան արտադրական ձեռնարկությունները տեղաբաշխում է երկրի տարբեր տնտեսական շրջաններում, հոգ է տանում նրանց մասնագիտացման համար, սահմանում է այդ ձեռնարկությունների արտադրական պլանը և կապը տարբեր ձեռնարկությունների ու տնտեսական շրջանների միջև պետական կայուն գների հիման վրա։ Սոցիալիստական պետությունը ձեռնարկությունների նկատմամբ իրականացնում է ռուբլով հսկողությունը՝ պլանները նշված ժամկետում, քանակապես և որակապես կատարելու համար։

Սոցիալիստական ձեռնարկությունների ամբողջ գործունեության արդյունքը հաշվի է առնվում դրամական ցուցանիշներով, որի շնորհիվ էլ կարելի է սահմանել նրանց ինքնարժեքը, արժեքը և եկամտաբերությունը։ Սոցիալիստական ամեն մի ձեռնարկություն, նրա կոլեկտիվը, ղեկավարող անձնակազմը նյութապես պատասխանատու են պետության առաջ պլանների կատարման, արտադրության անընդհատ աճի, միջոցների խնայողության և ռացիոնալ օգտագործման ու ձեռնարկության եկամտաբերության համար։ Սա է տնտեսական հաշվարկի էությունը։

Որո՞նք են տնտեսական հաշվարկի խնդիրները կոլտնտեսային արտադրության ասպարեզում։

Տնտեսական հաշվարկի սկզբունքների զգալի մասն արդեն իրականացվում է կոլտնտեսություններում։ Կոլտնտեսություններն իրենց բնույթով տնտեսական հաշվարկային ձեռնարկություններ են։ Ամեն մի կոլտնտեսություն ունի ինքնուրույն տնտեսական հաշվեկշիռ, իր հիմնական և շրջանառու արտադրական ֆոնդերը, անբաժանելի ֆոնդը—արտադրության ընդլայնման համար, շրջանառու միջոցներ, ֆինանսական պլան և հաշվարկային հաշիվ պետական բանկում։ Սոցիալիստական պետությունը կոլտնտեսությունների, ինչպես և արդյունաբերական ձեռնարկությունների նկատմամբ իրականացնում է պետական կենտրոնացված ղեկավարություն։ Սոցիալիստական պետությունը, ելնելով երկրի բնակլիմայական պայմաններից, պլանավորում է կոլտնտեսային սիստեմի ապրանքային արտադրանքը, թե յուրաքանչյուր կոլտնտեսություն, պետական միասնական կայուն գների հիման վրա, պետական գնում-

ների կարգով, ըստ հեկտարի ինչպիսի և որքան գյուղատնտեսական մթերքներ պետք է վաճառի պետությանը։ Դրանով նա նպաստում է կոլտնտեսությունների մասնագիտացմանը և տնտեսական տարբեր շրջանների զարգացմանը։

Ամեն մի կոլտնտեսություն իր տնտեսական գործունեությունը իրականացնում է պետության հանդեպ իր պարտավորությունների կատարմամբ, որի համար պայմանագիր է կնքում ՆՏ կայանների, ՄՏ կայանների, կոոպերացիայի, արդյունաբերական ձեռնարկությունների, շինարարական և այլ կազմակերպությունների հետ՝ իր տնտեսությունը մեքենաներով, սարքավորումով, վառելիքով, պարարտանյութով և այլ անհրաժեշտ նյութերով ապահովելու համար։ Պայմանագրային պարտականությունները ժամանակին չկատարելու համար կոլտնտեսությունը նյութական պատասխանատվություն է կրում։ Յուրաքանչյուր կոլտնտեսություն ինքն է հոգ տանում իր տնտեսությունը աշխատողներով ապահովելու, վարձատրության պրոգրեսիվ ձևերը կիրառելու մասին։ Կոլտնտեսություններն էլ, արդյունաբերական ձեռնարկությունների նման, պետական բանկում ունեն ընթացիկ հաշիվ, որտեղ պահում են իրենց դրամական միջոցները։ Նրանք ՆՏ կայանների և ՄՏ կայանների, կոոպերացիայի, արդյունաբերական և շինարարական կազմակերպությունների հետ տնտեսական հարաբերություններն իրականացնում են դրամական հաշիվներով՝ Պետական բանկի փոխանցումների միջոցով։

Տնտեսական հաշվարկի սկզբունքներից մեկն էլ՝ ձեռնարկության գործունեության ռուբլով հսկողությունն է, որի միջոցով երևան է գալիս արժեքի օրենքի գործողությունը։ Կոլտնտեսության արտադրության ասպարեզում մոտ անցյալում մասսայաբար չէր կիրառվում տնտեսական հաշվարկի այս կարևոր սկզբունքը։ Կոլտնտեսություններում տնտեսական հաշվարկի արմատավորման գլխավոր պայմաններից մեկը՝ մթերքների դրամական գնահատությունն է, որը կվերացնի նատուրալ տնտեսական հարաբերությունները և հնարավորություն կտա իրականացնել ռուբլով հսկողությունը կոլտնտեսային արտադրության ասպարեզում։

ՍՄԿՊ Կենտկոմի 1958 թվականի Հունիսյան պլենումի որոշման հիման վրա ՍՍՌՄ Մինիստրների Սովետի կողմից 1958 թվականի հուլիսի մեկից պարտադիր պետական մթերումների վերացման և գյուղատնտեսական մթերքների միասնական գներ սահմանելու շնորհիվ բարձրացել է աշխատավորների նյութական շահագրգռվածությունը և պայմաններ ստեղծվել կոլտնտեսություններում տնտեսական հաշվարկի արմատավորման համար։

Այժմ, երբ գյուղատնտեսական մթերքների գների բազմազանությունը վերացել է և գոյություն ունի գնումների մեկ միասնական սիստեմ և միասնական գին, կոլտնտեսային արտադրության համախառն արտադրանքի պահեստային գնահատման հաշվառման հիմքը կհանդիսանա պլանային ինքնարժեքը։ Սեփական արտադրության համար օգտագործվող սերմացուն, անասնակերը, աշխօրերի դիմաց բաշխված եկամուտները, ներկոլտնտեսային-պարենային օգնության և այլ ֆոնդեր կգոյանան ինքնարժեքի գնահատմամբ, իսկ ապրանքային արտադրանքի գինը սահմանելիս կառաջնորդվեն արժեքի օրենքով։ Այսպիսով, այժմ ստեղծված են բոլոր հնարավորությունները կոլտնտեսություններում տնտեսական հաշվարկի արմատավորման համար։

Տնտեսական հաշվարկի գլխավոր պահանջն է՝ ապահովել արտադրության աճող եկամտաբերությունը։ Ձեռնարկության եկամտաբերությունը չափվում է



զուտ եկամտի մեծությամբ։ Կոլտնտեսությունը պետք է տա այնքան արտադրանք, որպեսզի հնարավոր լինի կատարել գյուղատնտեսական մթերքների պետությանը վաճառելու պլանը, կոլտնտեսության հանրային տնտեսության ընդլայնումը և բավարարի կոլտնտեսականների պահանջները։ Կոլտնտեսության արտադրության պլանավորման գործող կարգը հնարավորություն է տալիս կոլտնտեսություններին՝ ռացիոնալ օգտագործել հողը, մշակել այն կուլտուրաները, որոնք տվյալ բնակլիմայական պայմաններում ավելի եկամուտ են բերում։ Որպեսզի կոլտնտեսությունները եկամտաբեր դառնան, անհրաժեշտ է եկամտաբեր դարձնել նրանց արտադրության ամեն մի ճյուղ, ամեն մի մշակվող կուլտուրա։ Այդ սկզբունքի հիման վրա պետք է սահմանել տնտեսության այս կամ այն ճյուղի ստրուկտուրան, մասնագիտացումը, ագրոտեխնիկական միջոցառումները, մեքենաների տեսակների օգտագործման, կառուցվածքների, աշխատանքների կազմակերպման ու վարձատրության ձևերը։

Ձեռնարկության եկամտաբերությունը որոշելուն նախորդում է արտադրանքի ինքնարժեքի հաշվարկումը, որը պետք է ընդգրկի այն իրական ծախսումները, որոնք անհրաժեշտ են այս կամ այն կուլտուրայի արտադրության համար։ Այն պետք է ճիշտ արտահայտի աշխատանքի արտադրողականության փոփոխությունները։

Տնտեսական հաշվարկը կոլտնտեսություններում արմատավորելու համար կարևոր նշանակություն ունի գյուղատնտեսական մթերքների ինքնարժեքի հաշվարկման հարցը։

Ինչպես հայտնի է, արդյունաբերական արտադրանքի ինքնարժեքը արտադրանքի արժեքի (դրամական ձևով արտահայտված), այն մասն է, որը ներկայացնում է արտադրանքի վրա կատարված բոլոր ծախսումները և աշխատավարձը։ Այլ խոսքով՝ ինքնարժեքը բաղկացած է հումքի, օժանդակ նյութի, վառելիքի, էլեկտրաէներգիայի արժեքից, ամորտիզացիոն հատկացումներից, բանվորների և ծառայողների աշխատավարձից, նրա վրաեկից ու զանազան դրամական ծախսերից (վարչա-տնտեսական կարիքների համար) և վարկի համար վճարումներից։

Կոլտնտեսային արտադրության արտադրանքի ինքնարժեքն էլ նույն բովանդակությունն ունի։ Այն ներկայացնում է արտադրության պրոցեսում ծախսված միջոցների և նոր ծախսված աշխատանքի այն մասը, որն արդյունք է ստեղծում իր համար։ Կոլտնտեսային արտադրության արդյունքի ինքնարժեքը կազմված է հետևյալ կարևոր էլեմենտներից.

1. Հումքի և նյութի, սերմացուի, անասնակերի, պարարտանյութի, գյուղատնտեսական վնասատուների դեմ պայքարելու համար քիմիկատների, վառելիքի, էլեկտրաէներգիայի արժեքից։

2. Գյուղատնտեսական մեքենաների, գործիքների, բանող անասունների համար ամորտիզացիոն հատկացումներից։

3. Կոլտնտեսության արտադրության մեջ աշխատող կոլտնտեսականների և մասնագետների աշխօրերի դիմաց կատարած վճարումներից։

4. Վարչա-տնտեսական նպատակներով կատարած զանազան դրամական ծախսերից (գործուղում, գրասենյակային ծախսեր, ղեկավար աշխատողների վարձատրությունը և այլն) և վարկի համար կատարած վճարումներից։

5. Եթե կոլտնտեսությունը սպասարկվում է ՆՏ կայանների, ՄՏ կայանների կողմից, նրանց աշխատանքների դիմաց տրված վարձատրությունից։

Կոլտնտեսային արտադրության արտադրանքի ինքնարժեքը արդյունաբե-
րական ձեռնարկության արտադրանքի ինքնարժեքից տարբերվում է նրանով,
որ այստեղ ինքնարժեքի աշխատավարձ էլեմենտի տեղ մենք ունենք աշխորե-
րի դիմաց փաստացի բաշխած եկամտի արժեքը և դրամական միջոցները,
որոնք նորմավորված չեն: Աշխօրերի փաստացի վարձատրության չափը կոլ-
տնտեսություններում շատ տարբեր է: Այդ բանը դժվարացնում է միատեսակ
բնակլիմայական պայմաններում գտնվող տարբեր կոլտնտեսությունների ար-
տադրանքի ինքնարժեքի միմյանց հետ համեմատելու գործը: Հոկտեմբերյանի
շրջանի կոլտնտեսությունները գտնվում են միատեսակ բնակլիմայական պայ-
մաններում, մշակում են միատեսակ կուլտուրաներ, բայց որովհետև տնտեսա-
տեխնիկական տարբեր մակարդակներ ունեն, արտադրանքի ինքնարժեքն էլ
տարբեր է: Վերցնենք հացահատիկի և բամբակի մեկ ցենտների ինքնարժեքը
1958 թվականին: Հոկտեմբեր գյուղի կոլտնտեսությունում հացահատիկի մեկ
ցենտների ինքնարժեքը կազմում էր 27 ռուբլի 80 կոպեկ, բամբակի մեկ ցենտ-
ների ինքնարժեքը՝ 121 ռուբլի, Բամբակաշատի կոլտնտեսությունում համա-
պատասխանաբար՝ 38 ռուբլի 50 կոպեկ և 136 ռուբլի 60 կոպեկ, Մրգաշատ
գյուղի կոլտնտեսությունում՝ 31 ռուբլի 90 կոպեկ և 131 ռուբլի 60 կոպեկ,
Ջանֆիդա գյուղի կոլտնտեսությունում՝ 23 ռուբլի 70 կոպեկ և 104 ռուբլի 20
կոպեկ: Ինքնարժեքի այս տարբերությունը բացատրվում է նրանով, որ տար-
բեր կոլտնտեսություններում աշխօրերի վարձատրության չափերը տարբեր են,
տարբեր է նաև ծախսված աշխօրերի քանակը և բերքատվությունը:

Կոլտնտեսության արտադրության արտադրանքի ինքնարժեքը հաշվելու
գործում ամենադժվար խնդիրը աշխօրերի վարձատրության սահմանումն է:
Տնտեսապես թույլ կոլտնտեսություններում, որտեղ աշխօրերի վարձատրու-
թյունը ցածր է, արտադրանքի ինքնարժեքն էլ ցածր է, և ընդհակառակը, տըն-
տեսապես ամուր կոլտնտեսություններում, որտեղ աշխօրերի վարձատրությու-
նը բարձր է, բարձր է նաև արտադրանքի ինքնարժեքը: Այդ պատճառով էլ,
նախ՝ ճիշտ չի լինի կոլտնտեսության աշխատանքները գնահատել միայն ար-
տադրանքի ինքնարժեքով, մյուս կողմից՝ այդպիսի ինքնարժեքը ճիշտ չի ար-
տացոլի իրերի դրությունը, կտեղծի տնտեսական գործունեության թյուր
պատկերացում: Դրա համար էլ պահանջվում է, որպեսզի կոլտնտեսություն-
ներում անցնեն ավելի պրոգրեսիվ վարձատրության ձևերի: Վարձատրության
պրոգրեսիվ ձևերն են.

ա) ամեն ամիս աշխօրերի դիմաց ավանսավորման կարգը, լրացուցիչ
վարձատրություն արտապլանային արտադրանքի համար:
բ) երաշխավորված մինիմումով ամեն ամիս վարձատրությունը, եկա-
մուտների լրացուցիչ բաշխումը տարեվերջին:
գ) դրամական վարձատրությունը ըստ աշխատանքի նորմաների գնահատ-
ման և ցենտներ արտադրանքի համար:
Վարձատրության վերոհիշյալ ձևերը կիրառվում են առանձին կոլտնտե-
սություններում, Սովետական Միության տարբեր շրջաններում ու Հայաստա-
նում: Կիրառելով վերոհիշյալ վարձատրության ձևերից որևէ մեկը, հնարավոր
կլինի տարեսկզբին կազմել արտադրանքի պլանային ինքնարժեք, իսկ տարե-
վերջին հաշվետվականը (փաստացի) և դրանց համեմատելով երևան բերել
կոլտնտեսային արտադրության առանձին ճյուղերի և ամբողջ կոլտնտեսության
եկամտաբերությունը: Դրամական վարձատրությունը ըստ աշխատանքի նոր-



մաների ամենապրոգրեսիվ ձևն է, որի իրականացման հետևանքով կոլտնտեսականը ամեն օր, ամեն ամիս կարող է տեսնել, շոշափել իր աշխատանքի արդյունքը:

Քանի որ կոլտնտեսային արտադրության ամբողջ արտադրանքը գնահատվելու է դրամական արտահայտությամբ, կոլտնտեսականն իր աշխատանքի դիմաց կարող է ստանալ ինչպես մթերքներ, այնպես էլ դրամ: Այդ բոլորը կոլտնտեսականի վարձատրությունը մոտեցնում է սովխոզների բանվորների վարձատրությանը: Նա զգալի չափով կվերացնի նատուրալ տնտեսական հարաբերությունները կոլտնտեսություններում: Կոլտնտեսականն իր կարիքների բավարարման համար կոլտնտեսությունից փողով կգնի անհրաժեշտ մթերքներ:

Կոլտնտեսության դրամական եկամուտների հիմնական աղբյուրը դաշտավարության և անասնապահության մթերքների իրացումն է: Այժմ կոլտնտեսությունները իրենց դաշտավարության և անասնապահության մթերքները պետական կայուն, միասնական գներով վաճառելու են պետությանը: Դրա շնորհիվ աճել և էլ ավելի են աճելու կոլտնտեսությունների դրամական եկամուտները: Այսպես, օրինակ, Հոկտեմբերյանի շրջանի կոլտնտեսությունների դրամական եկամուտները 1951 թվականին հավասար են եղել 53 559 836 ռուբլու: Այդ գումարից՝ դաշտավարությունից և անասնապահությունից ստացած դրամական եկամուտները կազմում են 46 365 825 ռուբլի, որից 34 131 300 ռուբլին կոլտնտեսությունները ստացել են պետությունից՝ մթերումների դիմաց:

1957 թվականին Հոկտեմբերյանի շրջանի կոլտնտեսությունների դրամական եկամուտները կազմել են 65 581 700 ռուբլի: Դաշտավարության և անասնապահության մթերքների իրացումից ստացված է եղել 60 454 100 ռուբլի: Այդ գումարից 48 203 400 ռուբլին կոլտնտեսությունները ստացել են պետական մթերումների դիմաց: Այժմ, երբ կոլտնտեսությունները դաշտավարության և անասնապահության մթերքները նոր գներով են վաճառում պետությանը, էլ ավելի կաճեն նրանց դրամական միջոցները: 1958 թ. նրանց դրամական եկամուտները կազմել են 96 279 600 ռ., որից պետական վաճառքից ստացած գումարը՝ 81 050 900 ռ.: Կոլտնտեսությունները հնարավորություն կունենան այդ դրամական միջոցները պլանային կարգով օգտագործելու տնտեսության զարգացման համար, կայուն դարձնելով այն գումարը, որը բաշխվելու է կոլտնտեսականներին աշխօրերի դիմաց կամ իրականացնելու դրամական վարձատրությունը: Բայց կոլտնտեսային դրամական եկամուտների մուտքը, հատկապես դաշտավարությունից, մնում է սեզոնային: Քանի որ կոլտնտեսությունները իրենց արտադրանքը ազատ գնումների կարգով վաճառում են պետությանը, նրանք մթերման օրգաններից կարող են ավանս վերցնել, կոլտնտեսականների վարձատրության գումարը կայուն դարձնել և ամեն ամիս աշխատանքների դիմաց վարձատրել:

Այս վերջին միջոցառումը կոլտնտեսություններին հնարավորություն կտա իրենց դրամական միջոցները ռացիոնալ և էֆեկտավոր օգտագործելու: Կոլտնտեսությունները պլանային կարգով կարող են առանձնացնել ինչպես աշխատանքների դիմաց վարձատրության գումարը, այնպես էլ հոգալ արտադրական ծախքերը: Այս միջոցառումը հնարավորություն կտա կոլտնտեսություններում էլ իրականացնել ռուբլով հսկողության սկզբունքը, կոլտնտեսության պլանները ժամանակին և որակով կատարելու համար բարձրացնել ինչ-

պես կոլտնտեսության ղեկավարող անձնակազմի, այնպես էլ կոլտնտեսականների և ամբողջ կոլտնտեսության նյութական պատասխանատվությունը։ Լրիվ չափով երևան կգա ամեն մի կոլտնտեսականի շահագրգռվածությունը իր աշխատանքի արդյունքով։ Ինքնարժեքը պայմանական բնույթ կրելուց կդառնա կոլտնտեսային արտադրության գործունեության կարևոր ցուցանիշը, տնտեսական հաշվարկի արմատավորման կարևոր գործոնը։

Տնտեսական հաշվարկի արմատավորման համար խոշոր նշանակություն ունի կոլտնտեսության պլանների մշակման հարցը։ Մինչև վերջերս կոլտնտեսություններում պլան կազմելիս բազմակողմանի տնտեսական գնահատություն չէին ստանում արտադրության կազմն ու ծավալը, ագրոտեխնիկական միջոցառումները, աշխատանքի արտադրողականությունը, ինքնարժեքը և եկամտաբերությունը։ Տնտեսական հաշվարկի արմատավորման համար մեծ նշանակություն ունի պլանավորման գործում դրամական ցուցանիշների ընդարձակումը և դրանց դոկումենտացիան։ Դա հնարավորություն կտա հաշվի առնել, թե զուտ եկամտի որ մասը որտեղ պետք է ծախսել, ամորտիզացիոն հատկացումներից հետո որ մասը պետք է ուղղել դեպի արտադրության ընդլայնումը, ռեզերվները, հանրային և սպառման ֆոնդերը։ Դրամական ցուցանիշները հնարավորություն կտան տնտեսական հաշվարկի պահանջները իրականացնելու համար կոլտնտեսություններում կազմել եկամուտների և ծախսերի բալանս և միացնել դրամական ու նատուրալ միջոցների հաշվառման, ծախսման լուրջ գործը։

Տնտեսական հաշվարկի նորմալ արմատավորման շնորհիվ հնարավոր կլինի սահմանել կոլտնտեսության տարբեր ճյուղերի եկամտաբերությունը։

Սովետական Միության տարբեր ռեսպուբլիկաներում, մարզերում, երկրամասերում առանձին կոլտնտեսություններ տարբեր ձևերով իրականացնում են տնտեսական հաշվարկը։ Այն, օրինակ, լրիվ արմատավորված է Ամուրի մարզի «Պրիամուրե» կոլտնտեսությունում. այստեղ կազմում են կոլտնտեսության տեղական արտադրական ֆինանսական պլան, որի հիման վրա սահմանվում է արտադրանքի պլանային ինքնարժեքը դրամային արտահայտությամբ, իրականացնելով երաշխավորված դրամային վարձատրությունը։

• Տարեկան արտադրական-ֆինանսական պլանը հանդիսանում է կոլտնտեսության ամբողջ գործունեության հիմքը, որի միջոցով պարզ երևում է նրա տնտեսության բոլոր ճյուղերի պատկերը։ Այն բաղկացած է հետևյալ բաժիններից՝ 1) կոլտնտեսային արտադրական պլանից, 2) ագրո-զոոտեխնիկական միջոցառումների պլանից, 3) արտադրանքի ինքնարժեքի կալկուլյացիայից, 4) ֆինանսական պլանից, 5) շինարարական պլանից, 6) կազմակերպական-տնտեսական միջոցառումների պլանից։

Կոլտնտեսության արտադրական ֆինանսական պլանում ի մի են բերվում նրա եկամուտները և ծախքերը ըստ ամիսների, եռամսյակների, որը հնարավորություն է տալիս ապահովելու կոլտնտեսության կողմից նշված միջոցառումների ֆինանսավորումը և ամեն ամիս կոլտնտեսականներին վարձատրելու դրամական երաշխավորված մինիմումով, ինչպես սովխոզներում է կատարվում։

Հիշված կոլտնտեսությունում արտադրական բրիգադները, անասնապահական ֆերմաները և օժանդակ ձեռնարկությունները անցել են ներկոլտնտեսային տնտեսական հաշվարկի։ Կոլտնտեսության տարեկան արտադրական ֆինանսական պլանի հիման վրա կազմվում է բրիգադների, ֆերմաների և օժանդակ ձեռնարկությունների համար տեղական արտադրական ֆինանսական առաջադրանք։ Այդ առաջադրանքի մեջ ցույց են տրվում բրիգադային, ֆերմային ամրացրած հիմնական արտադրության միջոցները, արտադրանքի պլանը, տրակտորային աշխատանքների ծավալը, ագրո-զոոտեխնիկական միջոցառումները, մեկ միավոր արտադրանքի ինքնարժեքը, աշխատանքների ծախսումը և այլն։



Ներկոլտնտեսային տնտեսական հաշվարկի գլխավոր նպատակն է վերացնել դիմազրկությունը, բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը և իջեցնել արտադրանքի ինքնարժեքը։ Բայց արտադրական բրիգադները, ֆերմաները մնում են որպես կոլտնտեսության մի անբաժանելի մասը։ Նրանք ինքնուրույն տնտեսական հաշվեկշիռ չունեն, ինչպես նաև բանկում չունեն հաշվարկային հաշիվ։

Արտադրական բրիգադների, ֆերմաների և օժանդակ ձեռնարկությունների արտադրական ֆինանսական առաջադրանքները պայմանավորված են տրակտորների և կոմբայնների աշխատանքների ծավալով, աշխատանքային այլ ծախքերի պլանով, արտադրանքի ինքնարժեքով և այլն։ Բոլոր հաշվարկումները կատարվում են դրամական արտահայտությամբ, որից պարզվում է այս կամ այն կուլտուրայի արդյունավետությունը կամ ոչ արդյունավետությունը։ Եթե բրիգադն ստացել է արտապլանային արտադրանք, նրա որոշ մասը առանձնացվում է բրիգադային անդամներին լրացուցիչ վարձատրելու համար, իսկ եթե վնասով է աշխատել, համապատասխան կարգով իջեցվում է բրիգադայի վարձատրության չափը, բայց ոչ ավելին, քան 10 տոկոսը։ Կոլտնտեսությունը ամեն ամիս դրամական վարձատրության ժամանակ կոլտնտեսականներին վճարում է փաստացի վաստակած աշխատավարձի 70 տոկոսը, իսկ 30 տոկոսը թողնում է տարեվերջին վերջնական հաշվարկ կատարելու համար։

Տնտեսական հաշվարկի արմատավորումը խոշոր և կարևոր կազմակերպական-տնտեսական մի սիստեմ է, որի նպատակն է մինիմում ծախսումների միջոցով ստանալ մաքսիմում արտադրանք, ստեղծել նյութական բարիքների առատություն, որը սոցիալիզմից կոմունիզմին անցնելու կարևոր պայմանն է։

---

# ԼԵՀԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅԻ 15 ՏԱՐԻՆ

*Վ. ՆՆԳԻԲԱՐՈՎ*

*Տասնհինգ տարի առաջ, 1944 թվականի հուլիսի 22-ին նոր էջ բացվեց լեհ ժողովրդի պատմության մեջ, ծնունդ առավ ժողովրդական Լեհաստանը։ Սովետական Բանակը, որի հետ ուս-ուսի տված կռվում էր Լեհական ժողովրդական բանակը, Լեհաստանն ազատագրեց գերմանա-ֆաշիստական զավթիչներից։ Ազատագրված հողում Ազգային ազատագրության Լեհական Կոմիտեն լեհ ժողովրդին ուղղած իր մանիֆեստում հռչակեց դեմոկրատական ու անկախ լեհական պետության ստեղծումը։ Հուլիսի 22-ը դարձավ Լեհաստանի ազգային վերածննդի օրը։ Այս տարի լեհ ժողովուրդը, սոցիալիստական բոլոր երկրների ժողովուրդները տոնեցին Լեհական ժողովրդական ռեսպուբլիկայի 15-րդ տարեդարձը։*

*Շնորհիվ ֆաշիստական Գերմանիայի դեմ Սովետական բանակի տարած համաշխարհային-պատմական հաղթանակի, հաղթանակով պսակվեց նաև լեհ բանվորների և գյուղացիների հերոսական պայքարը։ Տապալվեց կապիտալիստների ու կալվածատերերի տիրապետությունը։ Իշխանությունն իր ձեռքը վերցնելով և վերականգնելով իր հայրենիքի անկախությունը, լեհ ժողովուրդը Լեհական Միացյալ բանվորական պարտիայի ղեկավարությամբ նոր կյանք է կառուցում, վստահորեն ընթանալով դեպի սոցիալիզմի բարձունքները։*



*Սոցիալիզմի համաշխարհային սիստեմը տարեց-տարի ավելի ակնառու կերպով է ցուցադրում իր գերազանցությունը կապիտալիզմի հանդեպ։ Ներկայումս սոցիալիստական երկրները միասին վերցրած հինգ անգամ ավելի շատ արդյունաբերական արտադրանք են արտադրում, քան մինչ երկրորդ համաշխարհային պատերազմը։ Կապիտալիստական սիստեմի երկրները այդ նույն ժամանակամիջոցում չկարողացան նույնիսկ կրկնապատկել արդյունաբերական արտադրությունը։ «Բարձր տեմպերը,— ընդգծել է ընկ. Ն. Ս. Խրուշչովը ՍՄԿՊ XXI համագումարում,— սոցիալիզմի ընդհանուր օրինաչափությունն են, որ ներկայումս հաստատվել է սոցիալիստական լագերի բոլոր երկրների փորձով»։*

*Սոցիալիստական սիստեմի առավելության վառ ապացույցն այն վիթխարի նվաճումներն են, որ լեհ ժողովուրդը ձեռք է բերել պատմական կարճ ժամանակում՝ քաղաքական, տնտեսական ու կուլտուրական կյանքի բոլոր բնագավառներում։*



*Տնտեսության պլանավորման ու կառավարման սոցիալիստական մեթոդների կիրառման, լեհ բանվորների ու գյուղացիների հերոսական աշխատանքի, ինչպես նաև սոցիալիստական երկրների հետ տնտեսական համագործակցության և այն օգնության շնորհիվ, որ Լեհական Ժողովրդական Ռեսպուբլիկան ստացել ու շարունակում է ստանալ ՍՍՌՄ-ից և մյուս սոցիալիստական երկրներից, ապահովվեց երկրի էկոնոմիկայի արագ զարգացումը։ Լեհաստանը հետամնաց, ագրարային երկրից, ինչպիսին էր նա պատերազմից առաջ, վերածվեց ինդուստրիալ-ագրարային երկրի։ Տնտեսության սոցիալիստական ինդուստրացումը լիովին փոխեց երկրի դեմքը, վճռական կերպով բարձրացավ ժողովրդական մասսաների նյութական ու կուլտուրական մակարդակը։*

*Արագ տեմպերով է զարգանում Լեհաստանի սոցիալիստական արդյունաբերությունը։ 1950—1958 թթ. ժամանակամիջոցում արդյունաբերական արտադրանքի տարեկան աճը միջին հաշվով կազմել է մոտավորապես 14 տոկոս։ Վերջին տասնամյակում զարգացման նման տեմպեր չգիտե կապիտալիստական և ոչ մի երկիր։ Դեռևս 1957 թվականի վերջին ժողովրդական Լեհաստանի արդյունաբերության համախառն արտադրանքն ավելի քան հինգ անգամ գերազանցեց մինչպատերազմյան՝ 1938 թվականի մակարդակը։*

*Ամեն մի երկրի էկոնոմիկայի զարգացման գնահատության առավել ցուցադրականը՝ դա ազգային եկամտի աճի դինամիկան է։ Լեհաստանի ազգային եկամուտը 1958 թվականին 2,7 անգամ գերազանցեց 1938 թվականի մակարդակը։ Իսկ եթե նկատի առնենք, որ այդ աճը ձեռք է բերվել բնակչության զգալիորեն ավելի քիչ թվի պայմաններում, քան մինչև պատերազմն էր, ապա ազգային եկամտի չափերը բնակչության մեկ շնչի հաշվով 1958 թվականին 3,2 անգամ ավելի էին, քան 1938 թվականին։*

*Առավել ուշադրություն է հատկացվել ծանր արդյունաբերության ճյուղերի զարգացման վրա։ Այսպես. 1958 թվականին արտադրվել է 23,9 մլրդ կվտժ էլեկտրաէներգիա, այսինքն 6,6 անգամ ավելի, քան 1937 թվականին։ Ներկայումս Լեհաստանում մոտավորապես նույնքան էլեկտրաէներգիա է արտադրվում, որքան արտադրում են այնպիսի զարգացած կապիտալիստական երկրներ, ինչպիսիք են Բելգիան ու Ավստրիան միասին վերցրած։ Էլեկտրաէներգիայի արտադրության աճը հնարավորություն տվեց մեկ աշխատողի հաշվով նրա սպառումը բարձրացնել արդյունաբերության առաջատար ճյուղերում՝ 1950 թվականի 3724 կվտժ-ից մինչև 6755 կվտժ-ի՝ 1958 թվականին։ Այժմ արդեն բնակչության մեկ շնչին ընկնող էլեկտրաէներգիայի արտադրությամբ Լեհաստանը հասել է Իտալիային և Ճապոնիային։ Առաջիկա տարիներին շահագործման կհանձնվեն մի շարք խոշոր էլեկտրակայաններ, այդ թվում Տուրովի էլեկտրակայանը, որն իր կարողությամբ հավասար է նախապատերազմյան Լեհաստանի բոլոր էլեկտրակայանների կարողությանը միասին վերցրած։*

*Մետալուրգիական հին գործարանների վերակառուցումը և այնպիսի նոր խոշոր ձեռնարկությունների կառուցումը, որպիսիք են՝ Վ. Ի. Լենինի անվան մետալուրգիական կոմբինատը Նովայա Գուտայում և Բերուտի անվան կոմբինատը, զգալիորեն ընդլայնեցին Լեհաստանի մետալուրգիական արդյունաբերությունը։ Համեմատաբար կարճ ժամանակամիջոցում կառուցվեցին վեց դոմնային վառարաններ՝ 800-ից մինչև 1000 խորանարդ մետր ծավալով։ Լենինի անվան կոմբինատում վերջերս շարք մտավ 1386 խորանարդ մետր ծավալով դոմնային մի վառարան, որն աշխարհում ամենախոշոր վառարան-*

ներից մեկն է։ Գործարկվել են նորագույն սիստեմի և մեծ կարողության երկու բլյումինգ, խողովակագլանման ցեխեր, թերթային պողպատի սառը և տաք գլանման ցեխ ու այլ ձեռնարկություններ։ Դրա շնորհիվ 1958 թվականին ձուլվել է 5,6 մլն տոննա պողպատ, այսինքն 3,8 անգամ շատ, քան 1937 թվականին։ Արտադրանքի քանակի ավելացման հետ զուգընթաց արտադրվում են զանազան տեսակավոր պողպատներ և համաձուլվածքներ։ Որոշակի հաջողություններ են ձեռք բերվել գունավոր մետաղների արտադրության բնագավառում։

Արագորեն զարգանում է քիմիական արդյունաբերությունը։ Սկսված է ֆենոլի, մեթանոլի, քացախաթթվի, պոլիքլորվինելի և սինթետիկ այլ նյութերի, սինթետիկ թելի արտադրությունը, ընդարձակվել է անտիբիոտիկների և դեղորայքների թողարկումը։

Արտադրության խոշոր աճ է նկատվում նաև արդյունաբերության մյուս ճյուղերում։ Այսպես, 1958 թվականին արտադրվել է 21 հազար հատ մետաղահատ հաստոց, այսինքն 4,9 անգամ ավելի շատ, քան 1957 թվականին։ Այդ նույն ժամանակամիջոցում ցեմենտի արտադրությունն ավելացել է 3,9 անգամ, ծծմբաթթվինը՝ 3,2 անգամ և այլն։

Զգալի հետաքրքրություն է ներկայացնում բնակչության մեկ շնչին ընկնող ծանր արդյունաբերության մի քանի հիմնական արտադրանքների համեմատությունը մի կողմից Լեհաստանի և մյուս կողմից ԳՖՌ-ի և Ֆրանսիայի հետ։ Եթե 1937 թվականից մինչև 1958 թվականն ընկած ժամանակամիջոցում ԳՖՌ-ում և Ֆրանսիայում էլեկտրաէներգիայի արտադրությունը համապատասխանորեն աճել է 233 և 288 տոկոսով, ապա Լեհաստանում այդ աճը կազմել է 785 տոկոս։ Այդ նույն երկրների համեմատությամբ Լեհաստանը նման բարձր աճ է ունեցել նաև քարածխի արդյունահանման, պողպատի ձուլման և այլ բնագավառներում։

Ծանր արդյունաբերության հզոր աճման բազայի վրա մեծ զարգացում է ապրում թեթև և սննդի արդյունաբերությունը։ 1958 թվականին թողարկվել է 209 հազար տոննա բրդյա, բամբակյա և արհեստական մետաքսի մանվածք, որը կազմում է 1937 թվականի մակարդակի 177 տոկոսը. կրկնակի չափով աճել է շաքարի ու մսի արտադրությունը։

Այդ տարիներին զգալի զարգացում է ստացել Լեհաստանի գյուղատնտեսությունը, թեպետ նրա աճման տեմպերը ետ են մնացել արդյունաբերության զարգացման տեմպերից։ Լեհաստանի Միացյալ Բանվորական պարտիայի III համագումարին տված զեկուցման մեջ ընկ. Վլադիսլավ Գոմուլկան նշել է, որ գյուղատնտեսական արտադրանքի աճն արդյունաբերության աճի համեմատությամբ անբավարար էր և անհամաչափ, որ պարտիայի II համագումարից հետո «պարտիան ավելի շատ ուշադրություն է դարձնում գյուղատնտեսական արտադրության զարգացման հարցերին, այդ զարգացման ճանապարհին եղած խոչընդոտների վերացմանը և գյուղի համար նախատեսված նյութական և ֆինանսական միջոցների ավելացմանը»։

Պարտիայի ձեռնարկած միջոցառումների շնորհիվ արդեն 1958 թվականին գյուղատնտեսության համախառն արտադրանքը 30,5 տոկոսով ավելի բարձր էր, քան 1949 թվականին։ Անցյալ տարի գյուղատնտեսական արտադրության նախապատերազմյան մակարդակը գերազանցվեց մոտավորապես 19 տոկոսով, իսկ բնակչության մեկ շնչի հաշվով այդ աճը կազմեց 41 տոկոս։



Սոցիալիստական վերափոխման է ենթարկվում լեհական գյուղը։ Երկրի ամբողջ հողատարածության 15 տոկոսը գտնվում է սոցիալիստական սեկտորի՝ պետական գյուղատնտեսական տնտեսությունների և արտադրական կոոպերատիվների տնօրինության ներքո։

Ժողովրդական տնտեսության արագաթափ զարգացման բազայի վրա տարեցտարի բարձրանում է լեհ աշխատավորների նյութական ու կուլտուրական մակարդակը։ Լիկվիդացված է գործազրկությունը։ Անցած տարիներին բանվորների և ծառայողների ռեալ աշխատավարձը բարձրացել է միջին հաշվով 24,8 տոկոսով։ Աշխատավարձի աճման զուգընթաց բարձրացել են նաև աշխատավորների մյուս եկամուտները (ընտանեկան նպաստներ, ձեռնարկության ֆոնդեր և այլն), ինչպես նաև զգալի չափով ավելացել են թոշակները։ Միայն վերջին երեք տարում 2,5 անգամ ավելացել են թոշակների գծով պետական ծախսերը։ Նկատելիորեն աճել են գյուղացիների դրամական եկամուտները։ Երեք տարում գյուղի լրիվ եկամուտները (գյուղացիական տնտեսությունների բնամթերային սպառումների հետ միասին) ավելացել են՝ 57,5-ից մինչև 76 մլրդ զլոտիով, այսինքն ավելի քան 32 տոկոսով։

Քիչ բան չի արվում բնակչության բնակարանային պայմանների բարելավման ուղղությամբ։ Տարեց-տարի ավելանում է պետական վարկերի օգնությամբ կառուցվող բնակարանների թիվը։ Այսպես, 1958 թվականին կառուցված և բնակչության օգտագործմանը հանձնված սենյակների թիվը կազմում է 235 հազար, 1955 թվականի 165,9 հազար սենյակների դիմաց։

Բնակչության կենցաղային պայմանների բարելավման համար մեծ նշանակություն ունեցան նաև սոցիալական ապահովագրության և սոցիալական օգնության, ընտանիքներին տրվող նպաստների, հանգստյան տների, մսուրների և մանկապարտեզների վրա կատարվող ծախսերի ավելացումը։

Աշխատավորների նյութական դրության բարելավման զուգընթաց արագ թափով բարձրանում է նրանց կուլտուրական մակարդակը։ Համարյա բոլոր երեխաները ընդգրկված են տարրական ուսուցման մեջ, իսկ յոթնամյա ուսուցման մեջ ընդգրկված է երեխաների 91 տոկոսը։ Բարձրագույն ուսումնական հաստատությունների ուսանողների թվով Լեհաստանը ներկայումս գրավում է առաջատար տեղերից մեկը. այստեղ 10,000 բնակչին ընկնում է 43 ուսանող։ Սա ավելի է, քան Եվրոպայի կապիտալիստական որևէ երկրում։ Լեհաստանում գործում են մինչև 3000 կինո-թատրոն և 143 թատրոն ու երաժըշտական հատուկ հիմնարկներ։ Նախապատերազմյան տարիների համեմատությամբ մոտ երեք անգամ ավելացել է հրատարակվող գրքերի տիրաժը։

Լեհական Ժողովրդական Ռեսպուբլիկան իր արժանի տեղն է գրավում սոցիալիստական երկրների եղբայրական մեծ ընտանիքում։ Ռեսպուբլիկայի տնտեսության ու կուլտուրայի հզոր վերելքը, արտադրության բարձր տեմպերը պայմանավորված են նրանով, որ Լեհաստանը անխզելիորեն կապված է սոցիալիստական երկրների հետ, հենվում է սոցիալիզմի համաշխարհային սիստեմի և, առաջին հերթին, Սովետական Միության ինդուստրիալ հզորության վրա և փոխադարձաբար նրանց հետ համագործակցում քաղաքական, տնտեսական ու կուլտուրական բնագավառներում։ ԼԺՌ-ն Փոխադարձ օգնության Տնտեսական խորհրդի լիիրավ անդամն է և Վարշավայի պայմանագրի մասնակից։ Եվ դա էլ հանդիսանում է ժողովրդական Լեհաստանի ազգային անկախության ու սոցիալիզմի ուղիով նրա առաջընթացի հուսալի գրավականը։

Աճում և ամրապնդվում է լեհ-սովետական բարեկամությունն ու համագործակցությունը, որը հիմնված է երկու երկրների միջև 1945 թվականի ապրիլի 21-ին կնքված բարեկամության, փոխադարձ օգնության և հետպատերազմյան համագործակցության պայմանագրի վրա։

Ելնելով պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքներից և ղեկավարվելով ժողովրդական Լեհաստանին օգնելու ցանկությամբ, Սովետական Միությունը զանազան երկարատև վարկեր տրամադրելուց բացի, անվճար կերպով նրան հանձնեց արդյունաբերական ձեռնարկությունների բազմաթիվ տեխնիկական փաստաթղթեր և սարքավորումներ։ Այդ հիման վրա Լեհաստանում կառուցվեցին արդյունաբերական շատ օբյեկտներ, ինչպես Վ. Ի. Լենինի անվան մետալուրգիական մեծ կոմբինատը, բարձրորակ պողպատների մետալուրգիական «Վարշավա» գործարանը, մի քանի էլեկտրակայաններ և մի շարք առանձին ցեխեր Օսվենցիմի քիմիական կոմբինատում, ինչպես նաև մարդատար ավտոմեքենաների գործարանը Ժերանում և այլն։ Լեհական Ժողովրդական Ռեսպուբլիկային են հանձնվել ավելի քան 100 զանազան արդյունաբերական կոմպլեքսային լրիվ սարքավորումներ, 300 մեքենաների և սարքերի արտադրության և համարյա 200 տեխնոլոգիական պրոցեսների տեխնիկական փաստաթղթեր։ ՍՍՌՄ-ը Լեհաստանին օգնում է խաղաղ նպատակներով ատոմային էներգիան օգտագործելու հարցերում։

Լեհական Ժողովրդական Ռեսպուբլիկայի արտաքին առևտրական շրջանառության համարյա մեկ երրորդը կապված է ՍՍՌՄ-ի հետ։ Ամեն տարի Լեհաստանի մետալուրգիական գործարանները Սովետական Միությունից ստանում են 4 մլն. տոննա բարձրորակ երկաթահանք։ Սովետական մատակարարումների հաշվին է ծածկվում լեհական նավթի ամբողջ ներմուծման ավելի քան 90 տոկոսը։ Երկրի էկոնոմիկայի համար նույնպիսի կարևոր նշանակություն ունեն բամբակը, ապատիտները, մարգանեցը, նիկելը, մոլիբդենը, վոլֆրամը և սովետական այլ մատակարարումները։

Իրենց հերթին տարեցտարի ավելանում են կապիտալ սարքավորումների, այդ թվում նաև կոմպլեքսային արդյունաբերական օբյեկտների լեհական մատակարարումները ՍՍՌՄ-ին։ 1958 թվականին այդ մատակարարումների արժեքը գերազանցեց 400 միլիոն ռուբլուց, իսկ այս տարի այն կհասնի 560 միլիոն ռուբլու։ Սովետական Միությունում օգտագործվում է ածխահանույթի լեռնահանքային մեքենաների և սարքավորումների, երկաթուղային վագոնների և քիմիական մի շարք նյութերի արտադրության լեհական փորձը։

Հաջողությամբ զարգանում է Լեհաստանի տնտեսական, կուլտուրական և տեխնիկական համագործակցությունը նաև սոցիալիզմի լագերի և այլ երկրների հետ։



ՍՄԿՊ XXI արտահերթ համագումարից անմիջապես հետո, 1959 թվականի մարտին կայացավ Լեհաստանի Միացյալ Բանվորական պարտիայի III համագումարը, որը հանրագումարի բերելով անցած ժամանակամիջոցում կատարված աշխատանքի արդյունքները, ուրվագծեց Լեհաստանի ժողովրդական տնտեսության հեռանկարային զարգացումը։

Սոցիալիստական շինարարության բնագավառում ձեռք բերված մեծա-



գույն հաջողությունների հիմքի վրա համագումարը ընդունեց ԼԺՌ-ի տնտեսության հուժկու զարգացման ու աշխատավորների բարեկեցության մակարդակի հետագա բարձրացման ծրագիրը։ Անկասկած, 1959—1965 թվականների տնտեսական առաջադրանքների կատարումն ու գերակատարումը Լեհաստանի տնտեսության տեխնիկական ու տնտեսական ցուցանիշները կմոտեցնեն Սովետական Միության և սոցիալիստական լագերի մյուս երկրների նվաճումների մակարդակին։ Շատ ցուցանիշներով Լեհաստանը կհասնի և կանցնի Արևմտյան Եվրոպայի զարգացած կապիտալիստական երկրներից։

1965 թվականին տասն անգամ կգերազանցվի արդյունաբերական արտադրանքի 1938 թվականի մակարդակը։ 1965 թվականին, 1958 թվականի համեմատությամբ, էլեկտրաէներգիայի արտադրությունը 23,9 միլիարդ կվտ/ժամից հասնելու է 43,5 միլիարդ կվտ/ժամի, այդ նույն ժամանակամիջոցում ձուլվելու է 9 միլիոն տոննա պողպատ (5,6 միլիոնի դիմաց), արդյունահանվելու է 112—113 միլիոն տոննա քարածուխ (95 միլիոնի դիմաց)։

Յոթ տարի հետո ժողովրդական Լեհաստանում բնակչության մեկ շնչի հաշվով կձուլվի երկու անգամ ավելի շատ պողպատ, քան Իտալիայում ու Ճապոնիայում 1958 թվականին։ Իսկ մեկ շնչին ընկնող էլեկտրաէներգիայի արտադրությամբ Լեհաստանը կանցնի Ֆրանսիայից և կմոտենա Արևմտյան Գերմանիային։ Զգալի չափով կընդլայնվի մեքենաշինական արտադրանքի արտադրությունը։ Մետաղահատ հաստոցների արտադրությունը կաճի համարյա 60 տոկոսով, շոգետուրբիններինը՝ ավելի քան 11 անգամ, տրակտորների արտադրությունը կավելանա գրեթե 5 անգամ, ծովային նավերինը՝ ավելի քան 2 անգամ։ Հզոր զարգացում կապրի հատկապես քիմիական արդյունաբերությունը։ 1959—1965 թվականներին ծանր արդյունաբերության առավել զարգացման պայմաններում կընդլայնվեն թեթև ու սննդի արդյունաբերության ճյուղերի արտադրական կարողությունները։ 1965 թվականի վերջին Լեհաստանը կդառնա բրդյա գործվածքների ու կոշիկի արտադրությամբ Եվրոպայում գլխավոր երկրներից մեկը։

«Սոցիալիստական շինարարության ասպարեզում Լեհական Ժողովրդական Ռեսպուբլիկայի բոլոր հաջողությունները,—ասված էր այս տարվա հուլիսի 24-ի Սովետա-Լեհական համատեղ հայտարարության մեջ,—ձեռք են բերվել լեհ ժողովրդի անձնվեր աշխատանքի շնորհիվ՝ Լեհաստանի Միացյալ բանվորական պարտիայի ղեկավարությամբ, Սովետական Միության և սոցիալիստական լագերի մյուս երկրների աջակցությամբ ու եղբայրական օգնությամբ»։

Ժողովրդական Լեհաստանը հանդիսանալով սոցիալիզմի համաշխարհային մեծ ընտանիքի անբաժան մասը, իր արժանի ավանդն է ներդնում այն մեծ պայքարում, որ մղվում է կապիտալիզմի հետ խաղաղ մրցության մեջ սոցիալիստական համաշխարհային սիստեմի վճռական հաղթանակն ապահովելու համար։ Ինչպես Լեհաստանի, այնպես էլ սոցիալիստական մյուս երկրների զարգացման բարձր տեմպերը հնարավորություն են տալիս, որպեսզի սոցիալիզմի երկրները միասնական ճակատով ընթանան դեպի կոմունիզմ։

---

# ՍՄԿՊ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵՈՒՄ

## ԱՐՏԱԴՐԱԿԱՆ ԵՎ ԱՌԵՎՏՐԱԿԱՆ ՁԵՌՆԱՐԿՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՍԿԶԲՆԱԿԱՆ ՊԱՐՏԻԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՒՄ ՁԵՌՆԱՐԿՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱԴՄԻՆԻՍՏՐԱՑԻԱՅԻ ԳՈՐԾՈՒՆԵՈՒԹՅԱՆ ՆԿԱՏՄԱՄԲ ՊԱՐՏԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԿՈՂՄԻՑ ՎԵՐԱՀՍԿԵԼՈՒ ԻՐԱՎՈՒՆՔԸ ԻՐԱԿԱՆԱՑՆՈՂ ՀԱՆՁՆԱԺՈՂՈՎՆԵՐ ՍՏԵՂԾԵԼՈՒ ՄԱՍԻՆ

ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի 1959 թվականի հունիսի 26-ի որոշումը

*Մեր երկրում Կոմունիստական հասարակարգի ծավալուն կառուցման համար ՍՄԿՊ XXI համագումարի առաջադրած պատմական խնդիրների հաջող իրագործումը հնարավոր է սոցիալիստական դեմոկրատիայի, ժողովրդական լայն զանգվածների ստեղծագործական նախաձեռնության ու ինքնագործունեության հետագա զարգացման, պետական գործերի կառավարմանը, տնտեսական և կուլտուրական շինարարության ղեկավարմանը հասարակական կազմակերպություններին, բոլոր աշխատավորներին է՛լ ավելի ակտիվորեն ներգրավելու պայմաններում։*

*Նոր խնդիրները պահանջում են բարձրացնել պարտիական կազմակերպությունների դերն ու պատասխանատվությունը պետական պլանների իրականացման, ներպարտիական դեմոկրատիայի հետագա ծավալման, պարտիական մասսաների ակտիվության ուժեղացման գործում։ ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանի կատարման բնագավառում պարտիական կազմակերպությունների աշխատանքի բացառիկ կարևոր խնդիրն է ամեն կերպ ուժեղացնել պարտիայի ու կառավարության դիրեկտիվների կատարման վերահսկողությունն ու կազմակերպումը։ Այս կապակցությամբ հասարակական վերահսկողության ընդլայնումը, որպես պետական և տնտեսական կառավարման բոլոր օրգանների աշխատանքի բարելավման փորձված մեթոդ, այժմ հատուկ նշանակություն է ստանում։ Վ. Ի. Լենինը նշել է, որ առանձին ղեկավարների միանձնյա կարգադրողական իշխանությունը պետք է անպայման զուգակցվի ներքևից վերահսկելու բազմազան ձևերի ու եղանակների հետ։*

*ՍՄԿՊ Կենտկոմը նշում է, որ արտադրական և առևտրական ձեռնարկությունների սկզբնական պարտիական կազմակերպությունները անբավարար են օգտագործում ձեռնարկությունների ադմինիստրացիայի գործունեությունը վերահսկելու՝ պարտիայի Կանոնադրությամբ նրանց վերապահված իրավունքը, իսկ վերահսկողության ստեղծված կազմակերպական ձևերը պատշաճ չափով չեն համապատասխանում ՍՄԿՊ XXI համագումարի առաջադրած պահանջներին ու խնդիրներին։ Հաճախ վերահսկողությունը հանգում է միայն արտադրական պլանների կատարման արդյունքների մասին տնտեսական ղեկավարների ընդհանուր հաշվետվությունները լսելուն, իսկ այդ նույն ժամանակ ձեռնարկությունների աշխատանքի կարևոր շատ հարցեր մնում են պարտիական կազմակերպությունների տեսադաշտից դուրս։ Ձեռնարկություններում հասարակական վերահսկողությունը իրականացնելու գործում դեռևս թույլ են ներգրավվում արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունները։*



### ՍՄԿՊ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵՆ ՈՐՈՇՈՒՄ Է՝

*1. Նպատակ ունենալով վերացնել եղած թերությունները և ավելի լրիվ իրագործել ձեռնարկությունների ադմինիստրացիայի գործունեությունը վերահսկելու՝ ՍՄԿՊ Կանոնադրությամբ վերապահված իրավունքը, անհրաժեշտ համարել արտադրական և առևտրական ձեռնարկությունների սկզբնական պարտիական կազմակերպություններում ՍՄԿՊ անդամներից և անդամության թեկնածուներից ստեղծել հանձնաժողովներ, որոնք պետք է իրագործեն պարտկազմակերպությունների կողմից ադմինիստրացիայի գործունեությունը վերահսկելու իրավունքը։*

*Ձեռնարկությունների աշխատանքի բնույթին ու պայմաններին համապատասխան, պարտիական կազմակերպությունները կարող են ստեղծել վերահսկողության հանձնաժողովներ՝ տնտեսական-վարչական մյուս շրջաններին, ինչպես նաև արտահանման համար, պաշտպանական արդյունաբերության համար արտադրանքի մատակարարման պլանների ու առաջադրանքների ժամանակին և որակով կատարման, արտադրանքի որակի, նոր տեխնիկայի և տեխնոլոգիայի արմատավորման, արտադրության մեքենայացման ու ավտոմատացման և այլ հարցերի վերաբերյալ։ Առևտրական ձեռնարկություններում ստեղծվում են հանձնաժողովներ, որոնք վերահսկում են ապրանքների անխափան տեղափոխման ապահովումը, սովետական առևտրի կանոնների պահպանումը, շրջանառության ու արտադրության ծախքերի կրճատումը և այլն։*

*Հաստատել արտադրական ու առևտրական ձեռնարկությունների սկզբնական պարտիական կազմակերպություններին կից՝ ադմինիստրացիայի գործունեությունը պարտկազմակերպությունների կողմից վերահսկելու իրավունքը իրականացնող հանձնաժողովների կանոնադրությունը (կցվում է)։*

*2. Պարտավորեցնել միութենական ռեսպուբլիկաների Կոմպարտիաների Կենտկոմներին, պարտիայի երկրամասային կոմիտեներին, մարզկոմներին, քաղկոմներին ու շրջկոմներին՝ սկզբնական պարտիական կազմակերպություններին անհրաժեշտ օգնություն ցույց տալ ձեռնարկությունների աշխատանքը նրանց կողմից վերահսկելու գործում, ընդհանրացնել ու տարածել հանձնաժողովների աշխատանքի փորձը։ Ժողտնտխորհների, ձեռնարկությունների և այլ սովետական ու տնտեսական կազմակերպությունների ղեկավարներին պարտավորեցնել՝ անհապաղ քննարկել սկզբնական պարտիական կազմակերպությունների ու հանձնաժողովների առաջարկները և անհրաժեշտ միջոցներ ձեռնարկել ձեռնարկությունների գործունեությունը բարելավելու համար։*

ՍՄԿՊ Կենտկոմի քարտուղար՝ Ն. ԽՐՈՒՇՉՈՎ

## ԿԱՆՈՆԱԴՐՈՒԹՅՈՒՆ

### ԱՐՏԱԴՐԱԿԱՆ ԵՎ ԱՌԵՎՏՐԱԿԱՆ ՁԵՌՆԱՐԿՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՍԿԶԲՆԱԿԱՆ ՊԱՐՏԻԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐԻՆ ԿԻՑ՝ ՁԵՌՆԱՐԿՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱԴՄԻՆԻՍՏՐԱՑԻԱՅԻ ԳՈՐԾՈՒՆԵՈՒԹՅԱՆ ՆԿԱՏՄԱՄԲ ՊԱՐՏԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԿՈՂՄԻՑ ՎԵՐԱՀՍԿԵԼՈՒ ԻՐԱՎՈՒՆՔԸ ԻՐԱԿԱՆԱՑՆՈՂ ՀԱՆՁՆԱԺՈՂՈՎՆԵՐԻ

*Նպատակ ունենալով բարձրացնել սկզբնական պարտիական կազմակերպությունների պատասխանատվությունը պետական պլանների կատարման գործում, ավելի լրիվ իրագործել տնտեսական գործունեությությանը վերահսկելու՝ ՍՄԿՊ Կանոնադրությամբ նախատեսված իրավունքը, ինչպես նաև ներպարտիական դեմոկրատիայի հետագա ընդլայնման, արտադրական և առևտրական ձեռնարկությունների սկզբնական պարտիական կազմակերպու-*

*թյուններում պարտիական մասսաների նախաձեռնության ու ինքնագործունեության զարգացման համար ՍՄԿՊ անդամներից և անդամության թեկնածուներից ստեղծվում են ձեռնարկությունների ադմինիստրացիայի գործունեությունը վերահսկելու իրավունքն իրականացնող հանձնաժողովներ։*

## ՊԱՐՏԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՀԱՆՁՆԱԺՈՂՈՎՆԵՐԻ ԽՆԴԻՐՆԵՐԸ, ՆՐԱՆՑ ԻՐԱՎՈՒՆՔՆԵՐԸ ԵՎ ՊԱՐՏԱԿԱՆՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

*1. Ելնելով այն բանից, որ սկզբնական պարտիական կազմակերպությունների կարևորագույն խնդիրը մասսաների մեջ տարվող ամենօրյա կազմակերպական աշխատանքն է, որն ուղղված է ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման պլանները հաջողությամբ կենսագործելու նպատակին, պարտիական կազմակերպությունների հանձնաժողովները պետք է սիստեմատիկ վերահսկողություն ապահովեն ձեռնարկությունների կողմից արտադրական առաջադրանքները, պետական պատվերները և մատակարարումները ժամանակին կատարելու նկատմամբ՝ արտադրանքի ամբողջ նոմենկլատուրայի, բարձր որակի հետ միասին, հետևեն, որ ձեռնարկության բոլոր աշխատողները խստիվ պահպանեն պետական կարգապահությունը, պայքարեն տեղայնության դրսևորումների և նեղ գերատեսչական մոտեցման դեմ, որոնք վնաս են հասցնում համապետական շահերին։ Հանձնաժողովները պարտիական կազմակերպությանը զուգահեռ ինչ-որ հատուկ գոյություն ունեցող վերահսկիչ օրգան չեն, դրանք մեկն են այն կազմակերպական ձևերից, որոնց միջոցով սկզբնական պարտիական կազմակերպությունները իրականացնում են ադմինիստրացիայի գործունեությունը վերահսկելու՝ ՍՄԿՊ Կանոնադրությամբ վերապահված իրավունքը։ Հանձնաժողովները աշխատում են պարտիական կոմիտեների, պարտբյուրոների և սկզբնական պարտկազմակերպությունների քարտուղարների ղեկավարությամբ։*

*2. Արդյունաբերության, տրանսպորտի և շինարարության ձեռնարկությունների, ինչպես նաև ձեռնարկությունների ու կառույցների համար պատվերներ կատարող նախագծային կազմակերպությունների, կոնստրուկտորական բյուրոների և գիտահետազոտական ինստիտուտների ամբողջ բազմազան գործունեության նկատմամբ պարտիական վերահսկողությունը հաջողությամբ իրագործելու համար՝ պարտկազմակերպությունների հայեցողությամբ, արտադրության բնույթին համապատասխան, կարող են ստեղծվել.*

*— պետական պատվերների և մյուս ձեռնարկությունների ու տնտեսական վարչական շրջանների կոոպերատիվ մատակարարումների կատարմանը վերահսկող հանձնաժողովներ.*

*— հատուկ, առանձնահատուկ մատակարարումների և արտահանման պատվերների կատարմանը վերահսկող հանձնաժողովներ.*

*— թողարկվող արտադրանքի որակը վերահսկող հանձնաժողովներ.*

*— շինարարական աշխատանքների արժեքի իջեցմանը և որակի բարելավմանը վերահսկող հանձնաժողովներ.*

*— տրանսպորտի տեխնիկական միջոցների արդյունավետ օգտագործմանը վերահսկող հանձնաժողովներ.*

*— նոր տեխնիկայի արմատավորման, արտադրական պրոցեսների մեքենայացման ու ավտոմատացման պլանների կատարմանը վերահսկող հանձնաժողովներ։*

*Առևտրի և հասարակական սննդի ձեռնարկությունների պարտիական կազմակերպությունները կարող են ստեղծել հանձնաժողովներ.*

*— ապրանքների անխափան տեղափոխումը ապահովելուն վերահսկելու համար.*

*— սովետական առևտրի կանոնների պահպանմանը վերահսկելու համար.*



*— շրջանառության և արտադրության ծախսերի կրճատմանը վերահսկելու համար։*

*Արդյունաբերական, տրանսպորտային, շինարարական և առևտրական ձեռնարկությունների, ինչպես նաև ձեռնարկությունների և կառույցների համար պատվերներ կատարող նախագծային կազմակերպությունների, կոնստրուկտորական բյուրոների և գիտահետազոտական ինստիտուտների սկզբնական պարտիական կազմակերպությունները անհրաժեշտության դեպքում ստեղծում են հանձնաժողովներ նաև այլ հարցերի գծով, ելնելով տեղական պայմաններից և այն խնդիրների կարևորությունից, որոնք լուծում է տվյալ ձեռնարկությունը, ցեխը, կազմակերպությունը, ինստիտուտը։*

*3. Հանձնաժողովները պետք է ուշադրությամբ ուսումնասիրեն գործերի վիճակը այն տեղամասերում, որոնց նկատմամբ նրանք անմիջական վերահսկողություն են իրագործում, ձեռնարկության (ցեխի, կազմակերպության, ինստիտուտի) աշխատանքում թերություններ հայտաբերելիս պետք է ստուգման արդյունքների մասին անհապաղ հայտնեն ձեռնարկության (ցեխի, կազմակերպության, ինստիտուտի) պարտիական կոմիտեին (պարտիական բյուրոյին) կամ պարտիական ժողովին, տնտեսական ղեկավարությանը և նրանց հետ միասին պետք է տեղում միջոցներ ձեռնարկեն հայտաբերված աննորմալությունները վերացնելու համար։*

*Այն դեպքում, երբ տնտեսական ղեկավարությունը ժամանակին չի վերացնում հանձնաժողովների հայտաբերած թերությունները, պարտիական կոմիտեն (պարտիական բյուրոն) կամ պարտիական ժողովը, իրագործելով տնտեսական գործունեությանը վերահսկելու պարտիական կազմակերպությանը տրված իրավունքը, այդ հարցը քննարկում է իր նիստում կամ ժողովում և տնտեսական կազմակերպության նկատմամբ ձեռնարկում է պարտիական ներգործության միջոցներ։ Եթե հիշյալ միջոցները բավական չեն, պարտիական կազմակերպությունը աջակցություն է խնդրում շրջանային, քաղաքային, մարզային և ռեսպուբլիկական պարտիական ու սովետական օրգաններից, տնտեսական վարչական շրջանի ժողովրդական տնտեսության խորհրդից։*

*Եթե հիշյալ ղեկավար օրգանները պատշաճ միջոցներ չեն ձեռնարկում սկզբնական պարտիական կազմակերպության ահազանգերի առթիվ, ապա վերջինս այդ մասին կարող է հայտնել ՍՄԿՊ Կենտկոմին կամ ՍՍՌՄ Մինիստրների Սովետին։*

*4. Հանձնաժողովը իրավունք ունի պարտկոմների կամ պարտբյուրոների միջոցով բանվորների և ծառայողների ժողովների քննարկմանը ներկայացնել ցեխի, գործարանի, ձեռնարկության, ինստիտուտի աշխատանքի բարելավման հարցեր, նպատակ ունենալով կոլեկտիվը մոբիլիզացնել թերությունները վերացնելու համար, կարող է առանձին հարցեր դնել իր նիստերում՝ նախնական քննարկման և առաջարկների մշակման համար։ Հենվելով հասարակայնության և լայն ակտիվի աջակցության վրա, հանձնաժողովները պետք է հաստատակամորեն ձգտեն, որպեսզի իրենց հարուցած հարցերի որոշումը հասցվի մինչև վերջ, իսկ հայտաբերված թերությունները լիովին վերացվեն։*

*5. Պարտիական կոմիտեները, պարտբյուրոները և պարտկազմակերպությունների քարտուղարները պետք է հետևեն, որպեսզի հանձնաժողովների գործունեությունը չվերածվի ոչ պիտանի թղթաբանության։ Անհրաժեշտ է ապահովել օպերատիվությունը հանձնաժողովների աշխատանքում, այնպես, որպեսզի կանխվի ձեռնարկության կողմից այս կամ այն առաջադրանքի ձախողումը, թույլ չտրվի թերությունների կուտակում, ժամանակին միջոցներ ձեռնարկվեն դրանք վերացնելու համար։ Հանձնաժողովներն իրենց աշխատանքի մասին պարբերաբար հաշիվ են տալիս պարտկոմին, պարտբյուրոյին կամ պարտիական կազմակերպության կոմունիստների ընդհանուր ժողովին։*

*6. Սկզբնական պարտիական կազմակերպությունների հանձնաժողովները, ստուգելով արտադրության վիճակը, չեն կարող վերացնել կամ անել որևէ*

վարչական կարգադրություն, քանի որ դա միանձնյա ղեկավարության սկզբունքի խախտում կլինի։ Դրա հետ միասին, տնտեսական ղեկավարները պետք է ամեն կերպ օգնեն հանձնաժողովներին՝ աշխատանքը կատարելիս, նրանց հետաքրքրող հարցի վերաբերյալ, ծանոթանալու համար, տրամադրել անհրաժեշտ նյութեր ու տվյալներ և օբյեկտիվ կերպով իրազեկ դարձնել գործերի վիճակի մասին, անհապաղ քննարկել հանձնաժողովների առաջարկները և ժամանակին միջոցներ ձեռնարկել նրանց հայտաբերած թերությունները վերացնելու համար։

## ՀԱՆՁՆԱԺՈՂՈՎՆԵՐԸ ՍՏԵՂԾԵԼՈՒ ԵՎ ՀԱՇՎԵՏՎՈՒԹՅԱՆ ԿԱՐԳԸ

7. Հանձնաժողովների անդամների թվական և անձնական կազմը որոշվում է, ելնելով աշխատանքի ծավալից ու բնույթից, և ընտրվում է բաց քվեարկությամբ, սկզբնական պարտիական կազմակերպության կոմունիստների ընդհանուր պարտիական ժողովում կամ պարտիական կոնֆերանսում։ Հանձնաժողովները ընտրվում են մեկ տարի ժամկետով և նորից վերընտրվում են պարտիական օրգանների հերթական հաշվետվությունների ու ընտրությունների ժամանակ։

Եթե հաշվետու ժամանակաշրջանի ընթացքում անհրաժեշտություն է ծագում ստեղծել նոր հանձնաժողով կամ փոխել գոյություն ունեցող հանձնաժողովների կազմը, ապա այդ հարցերը ներկայացվում են հերթական պարտիական ժողովի քննարկմանը, իսկ խոշոր պարտկազմակերպություններում, որտեղ պարտիական կոնֆերանսները հրավիրվում են տարին մեկ անգամ, լուծվում են պարտկոմիտեների նիստերում։

Հանձնաժողովների կազմի մեջ անհրաժեշտ է ընտրել առավել պատրաստված, սկզբունքորեն կայուն, ակտիվ կոմունիստների՝ բանվորների, ծառայողների, ինժեներա-տեխնիկական աշխատողների, որոնք ընդունակ են իսկական վերահսկողություն կազմակերպել պարտիայի ու կառավարության դիրեկտիվների կատարման նկատմամբ։

8. Պաշտպանական, ռեժիմային ձեռնարկություններում և հատուկ ցեխերում պետք է ամենախստագույն ձևով պահպանվեն պետական գաղտնիքը չհրապարակելու մասին գոյություն ունեցող հրահանգները։ Այդպիսի հանձնաժողովների բոլոր անդամները ընտրվում են միայն տվյալ տեղամասում աշխատողներից և տվյալ տեղամասում աշխատելու թույլտվություն ունեցող կոմունիստներից։ Ռեժիմային ձեռնարկությունների և ցեխերի հանձնաժողովների գործունեությունը պետք է լիովին համապատասխանի արտադրության պետական գաղտնիությունը պահպանելու պահանջներին և պետք է բացառի պետական գաղտնիքը հրապարակելու ամեն մի հնարավորություն։

9. Սակավաթիվ սկզբնական պարտիական կազմակերպություններում հանձնաժողովներ ստեղծվում են ընդհանուր պարտիական ժողովի հայեցողությամբ։ Այնտեղ, որտեղ նպատակահարմար չի համարվի հանձնաժողովներ ստեղծել, տնտեսական գործունեության վերահսկողությունը իրագործում են բոլոր կոմունիստները՝ սկզբնական պարտիական կազմակերպության քարտուղարի ղեկավարությամբ։

10. Այն ձեռնարկություններում, որտեղ սկզբնական պարտիական կազմակերպություններ չկան, վերահսկողության և պետական կարգապահության եղած խախտումների մասին պարտիական օրգաններին ահազանգելու ֆունկցիաները կատարում են արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունները։ Ինչպես այդ նախատեսված է արհմիութենական կազմակերպությունների աշխատանքի համապատասխան կանոնադրություններում, ինչպես նշված է ՍՄԿՊ Կանոնադրության մեջ՝ կոմերիտմիության վերաբերյալ։

11. Պարտիական կոմիտեներն ու պարտիական բյուրոները հանձնաժողովների աշխատանքում լայնորեն ներգրավում են արհմիութենական և կոմերիտական ակտիվը, լավագույն անպարտիական բանվորներին, մասնագետներին, արտադրությունը լավ իմացող մարդկանց, հանձնաժողովների աշխատանքում ապահովում են փոխադարձ սերտ կապը հասարակական վերահսկողության՝ իրենց արդարացրած մյուս ձևերի հետ, որոնք գոյություն ունեն պարտիական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպություններում (պարտիական ժողովներում տնտեսական ղեկավարների հաշվետվությունները լսելը, մշտապես գործող արտադրական խորհրդակցությունները, արհմիութենական կոմիտեների արտադրական-մասսայական հանձնաժողովները, «Թեթև հեծելազորի» կոմերիտական պոստերն ու ռեյդերը և այլն)։ Պարտիական և հասարակական վերահսկողության տարբեր ձևերի միջև միասնությունն ու համաձայնեցվածությունը պետք է նպաստի զանազան ստուգումների ավելորդ խճողումը, տնտեսական կառավարման ապարատը ավելորդ կերպով թափահարելը վերացնելուն և նրա ֆունկցիաների կատարման համար նորմալ պայմաններ ստեղծելուն։

12. Պարտկազմակերպությունների պարտիական կոմիտեները և պարտիական բյուրոները, այն դեպքում, եթե կոոպերատիվ մատակարարումները ձախողվում են մյուս ձեռնարկությունների կամ հիմնարկների հանցանքով, կարող են այդ մասին հայտնել այդ ձեռնարկությունների կամ հիմնարկների պարտիական կազմակերպություններին։ Նման տեղեկություն ստացած պարտկազմակերպությունները պարտավոր են առանց հետաձգելու քննարկել այն, տեղում պատշաճ միջոցներ ձեռնարկել ու անհապաղ պատասխանել ըստ գործի էության։

«Պարտիյնայա ժիզն», № 13, 1959 թ.։

# ՊԱՐՏԻԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՍԵՓԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՊԱՀՊԱՆՈՒՄԸ

Ս. ՈՍԿԱՆՅԱՆ

ՀԿՊ Երևանի քաղկոմի քարտուղար

*Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XXI համագումարի որոշումները մարտական, ամենօրյա աշխատանքային ծրագիր են մեր պարտիայի ու ժողովրդի համար։ Մեր մեծ Հայրենիքի ամեն մի ազնիվ քաղաքացի, լինի դա բանվոր, գյուղացի, գիտության և արվեստի աշխատող, պատասխանատվության բարձր զգացումով է պայքարում համագումարի առաջադրած հոյակապ խնդիրների իրագործման համար։*

*Երևան քաղաքի աշխատավորությունը, մեր ռեսպուբլիկայի աշխատավորության հետ մեկտեղ, աշխատանքային բարձր ոգևորությամբ է կատարում ու գերակատարում յոթնամյակի առաջին տարվա պլանները։ Ամենուրեք մարդիկ փնտրում են չօգտագործված հնարավորություններ, խնայում ամեն ինչը, լրացնում ու հարստացնում են համաժողովրդական ունեցվածքը, որը տարբեր ճանապարհներով գնում է էլ ավելի բարձրացնելու սովետական մարդկանց նյութական ու կուլտուրական կյանքի մակարդակը։*

*Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիան վերացնելով արտադրության միջոցների մասնավոր սեփականությունը, այն հայտարարեց համաժողովրդական, պետական սեփականություն։ Սովետական պետությունն իր առաջին իսկ դեկրետով սոցիալիստական սեփականությունը համարեց սրբազան և անձեռնմխելի։*

*Մեծ Հոկտեմբերի հաղթանակի առաջին օրերին Լենինը դիմելով աշխատավորությանը ասել է. «...աչքի լույսի պես պահեցեք ու պահպանեցեք հողը, հացը, ֆաբրիկաները, գործիքները, մթերքները, տրանսպորտը—այդ ամենը այսուհետև ամբողջովին ձեր, համաժողովրդական սեփականությունը պիտի լինի» (հատ. 26, էջ 360)։*

*Սոցիալիստական սեփականությունը մեր ամբողջ հասարակության նյութական ու կուլտուրական կյանքի աղբյուրն է։ Այդ սեփականությունը աչքի լույսի պես պահպանելը համաժողովրդական գործ է, որը պարտիական կազմակերպությունները համարում են իրենց առաջնակարգ խնդիրներից մեկը։ Երբ այս կամ այն պարտիական կազմակերպություն հետևողականորեն զբաղվում է այդ խնդրով, նրան հաջողվում է ամբողջ կոլեկտիվում ստեղծել կոմունիստական վերաբերմունք դեպի համաժողովրդական ունեցվածքը։*



*Մի ժամանակ Նուբբ մահուդի (Կամվոլնի) կոմբինատը վատ համբավ ուներ. այնտեղ տեղի էին ունենում պետական գույքի հափշտակման դեպքեր։ Բանը նրանում չէ, թե պարտիական կազմակերպությունը և նրա բյուրոյի քարտուղարը չէին գիտակցում սոցիալիստական սեփականության պահպանման անհրաժեշտությունը, այդ մասին ժողովներում չէին խոսում կամ չէին ընդունում որոշումներ։ Բանն այն էր, որ նրանք այդ անախորժ երևույթների դեմ պայքարելու ուժը չէին փնտրում իրենց մեջ։ Պարտբյուրոյի քարտուղար ընկ. Ա. Վեսելովան նոր աշխատող լինելով, այս ամենից որոշ հիասթափություն էր ապրում, միշտ օգնություն էր խնդրում դրսից։ Սակայն երբ կոմբինատի պարտիական կազմակերպությունը, նրա քարտուղարը, դիրեկցիան պայքարի ուժը տեսան իրենց կոլեկտիվի մեջ և այն գործի դրին, պատկերը սկսվեց փոխվել։ Պարզվեց, որ ինչպես պահեստներում, այնպես էլ ցեխերում չափազանց վատ էր դրված նյութերի հաշվառման վիճակը, որի հետևանքով ստեղծվում էին հաշվառման չենթարկվող ավելցուկներ, որոնք տարբեր ճանապարհներով հափշտակվում էին։ Պարզվեց նաև, որ արտադրության մեջ աշխատում էին վարպետներ, որոնք վստահություն չէին ներշնչում։ Նման աշխատողներից կոլեկտիվը ազատվեց, արտադրություն ուղարկվեցին ավելի վստահելի անձիք, այդ թվում բանակից վերադարձած ընկերներ։ Նրանք կարճ ժամանակում տիրապետելով արտադրության կազմակերպման հիմնական սկզբունքներին, հաջողությամբ փոխարինեցին նախկին վարպետներին։*

*Գործի դրվեցին պարտիական-կազմակերպական ու քաղաքական աշխատանքի բոլոր մեթոդները, ցեխերում ստեղծվեցին երգիծական պատի թերթեր, ամեն մի, թեկուզ փոքրիկ դեպք քննարկման առարկա էր դառնում կոմերիտական և պրոֆմիութենական կազմակերպությունների ժողովներում։ Ձեռնարկվեցին նաև մի շարք այլ միջոցառումներ. հատուկ ուշադրություն դարձվեց հումքի, նյութերի ու արտադրանքի հաշվառմանը, կարգավորվեց կադրերի ընդունման գործը։ Աստիճանաբար փոխվեց նաև կոլեկտիվի վերաբերմունքը դեպի գողերը։ Եթե առաջներում, երբ քննարկվում էր պետական ունեցվածքը հափշտակող որևէ մեկի հարցը, կոլեկտիվի և պարտկազմակերպության ժողովներում գտնվում էին նրան պաշտպանողներ, ապա ներկայումս կոլեկտիվի, պարտիական կազմակերպության ներգործության շնորհիվ նման դեպքերը չքանում են։*

*Բերենք մի այլ օրինակ։ Տարիներ շարունակ խոսվում էր Գինու կոմբինատում տեղի ունեցող սոցիալիստական սեփականության հափշտակման դեպքերի մասին, որից կոմբինատը կրում էր զգալի վնասներ։ Այդ վիճակը խիստ անհանգստացրեց պարտիայի Սպանդարյան շրջանային կոմիտեին։ Շրջանային կոմիտեն բազմակողմանիորեն և խոր ուսումնասիրություն կատարեց ու անցած տարվա հունվար ամսին շրջկոմի բյուրոյում քննարկեց այդ հարցը և ընդունեց կոնկրետ որոշում։*

*Գինու կոմբինատի պարտիական կազմակերպությունը ձեռնամուխ եղավ շրջկոմի որոշման կատարմանը, իրագործեց մի շարք միջոցառումներ։ Պետական գույքի պահպանությունը դարձավ օրակարգի մշտական հարց, որը տարբեր առիթներով քննարկվում էր պարտիական բյուրոյի նիստերում, կոմերիտական ու կոլեկտիվի ժողովներում։ Այս հարցի մասին անցած տարի դատախազական և միլիցիայի աշխատողների կողմից կոլեկտիվում կարդացվել է 6 դասախոսություն։*

*Կոմբինատում գործում են պարտիական-կոմերիտական հերթապահություններ։ Փոխվեցին նյութական պատասխանատվություն կրող աշխատողները, որոնք վստահություն չէին ներշնչում և արատավորել էին իրենց։ Բարելավվեց գինու և սպիրտի հաշվառման կարգը։ Անհանդուրժողական վերաբերմունք ստեղծվեց դեպի շռայլման երևույթները։ Այդ ամենը չէր կարող ապարդյուն անցնել։ Եվ իրոք, եթե գինու կոմբինատը նախորդ տարիներին կորուստների հետևանքով մեծ վնասներ էր կրում, ապա 1958 թվականը փակեց մոտ 4300 դեկալիտր գինու և 630 դեկալիտր սպիրտի տնտեսումով։*

*Չպետք է ենթադրել, թե նշված կազմակերպություններում ամեն ինչ արդեն կարգին է և պետական գույքի պահպանման գործը դրված է իդեալական վիճակում։ Դեռևս ոչ։ Դրականն այն է, որ այս կոլեկտիվներում պարտիական կազմակերպությունների սիստեմատիկ աշխատանքի շնորհիվ ստեղծվել է առողջ մթնոլորտ, ակտիվացել է ամբողջ կոլեկտիվի հսկողությունը պետական ունեցվածքի նկատմամբ, պետական ունեցվածքը հափշտակող անձիք այստեղ չեն գտնում պարարտ հող, նրանք շուտ մերկացվում և ստանում են արժանի պատիժ։*

*Ցավոք սրտի, ամենուրեք չէ, որ սոցիալիստական սեփականության պահպանման գործը դրված է պատշաճ բարձրության վրա։ Առանձին ձեռնարկություններում (հատկապես սննդի, փայտամշակման, Հայարդ խորհրդի, շինարարական վարչություններում), ինչպես նաև առևտրական կազմակերպություններում պարտիական կազմակերպությունների և հիմնարկ-ձեռնարկությունների առանձին ղեկավարներ չափազանց թույլ են պայքարում այդ այլանդակ, մեր հասարակությանը խորթ երևույթների դեմ։*

*Զարաշահումները մեծ մասամբ կատարվում են այնտեղ, ուր խճճված վիճակում է գտնվում նյութական արժեքների հաշվառումը, օրենքով սահմանված ժամկետներում չի կատարվում ֆինանսական փաստաթղթերի ստուգում և նյութական արժեքների գույքագրում, ժամանակին չեն կանխվում պետական միջոցների հափշտակման, յուրացման դեպքերը։ Օգտվելով այդպիսի վիճակից, առանձին հակահասարակական տարրեր կարողանում են յուրացնել պետական ունեցվածքը և մնալ անպատիժ։*

*Ժողտնտխորհի Սննդի արդյունաբերության վարչության Շահումյանի շըրջանի լիմոնադի գործարանում տարիներ շարունակ նյութական արժեքների հաշվառման գործը եղել է բարձիթողի վիճակում։ Միայն 1953 թվականից մինչև 1956 թվականը գործարանում փոխվել է 6 գլխավոր հաշվապահ, որոնցից մեկը՝ Անուշավան Ստեփանյանը նախկինում 2 անգամ դատված է եղել պետական ունեցվածքը հափշտակելու համար։ Օգտվելով բարենպաստ պայմաններից, գործարանի առաքիչներ Լիպարիտ Խաչատրյանը և Ազատ Զաքարյանը կապերի մեջ են մտնում առևտրական որոշ օբյեկտների աշխատողների հետ և դատարկ շշեր ընդունելու անվան տակ անարգել կերպով յուրացնում են մեծ գումարներ։*

*Հաշվառման ու հսկողության բացակայության մասին է խոսում այն փաստը, որ Հայկական ՍՍՌ Շինարարության մինիստրության 3-րդ տրեստում կատարվել են շինանյութերի մեծ յուրացումներ։ Ցավն այն է, որ այս շինարարական տրեստի պարտիական կազմակերպությունը չի խորանում արտադրական հարցերի մեջ, չի իրականացնում իր վերահսկողության ֆունկցիան ադմինիստրացիայի նկատմամբ, կոմունիստներին չի դաստիարակում ատելության ոգով դեպի այն մարդիկ, որոնք հանդգնում են ձեռք մեկնել համաժողովրդական ունեցվածքին։*



*Փաստերը ցույց են տալիս, որ շինանյութերի հաշվառման, նրա պահպանման գործը անհանդուրժելի վիճակում է գտնվում քաղաքի շինարարական և տրանսպորտային շատ կազմակերպություններում։*

*Սոցիալիստական սեփականության հափշտակումները կանխելու, հանցագործներին հայտաբերելու և պատասխանատվության ենթարկելու գործում որոշակի դեր ունեն կատարելու գերատեսչական հաշվային աշխատողները, ռևիզորները։ Ռևիզորների մի ստվար մասը կամ ձևական, ինչպես իրենք են ասում, «պլանային» ռևիզիաներ են անցկացնում, չխորանալով հաշվառման բոլոր մանրուքների մեջ, իսկ որոշ դեպքերում էլ ուղղակի թաքցնում են տեղերում գոյություն ունեցող իրական վիճակը։ Այլապես ինչո՞վ կարելի է բացատրել այն, որ Երևան քաղաքում պետական գույքի հափշտակման համար դատարան մտած գործերի մի չնչին մասն է, որ հայտաբերված է վարչությունների, մինիստրությունների ռևիզորական կամ հաշվապահական կադրերի կողմից։*

*Ժողտնտխորհի Սննդի վարչությունում երկար ժամանակ աշխատել են ռևիզորներ Խ. Գևորգյանը և Կ. Խաչատրյանը, որոնք տարիներ շարունակ թաքցրել են իրենց կողմից հայտաբերված հափշտակումների փաստերը։ Կաշառվելով հանրային գույքի հափշտակիչների կողմից, այդ «ռևիզորները» երկար ժամանակ փաստորեն հովանավորել են գողերին։ Նույն ձևով է վարվել և Հայպտուղբանջարի վարչության «ռևիզորը», որի անազնիվ վերաբերմունքի հետևանքով № 8 խանութի վարիչ Հարությունյանը կարողացել է յուրացնել պետական գումարներ։*

*Այս ամենը բավական լուրջ ահազանգ է, որը պետք է անհանգստացնի բոլոր հիմնարկ-ձեռնարկությունների ղեկավարներին և սկզբնական պարտիական կազմակերպություններին։*

*Պարտիան ու կառավարությունը մշտապես հիշեցրել են, որ պետք է հատուկ ուշադրություն դարձնել նյութական պատասխանատու անձանց՝ պահեստապետների, առաքիչների, ինչպես նաև հաշվառման և հաշվապահական սիստեմում աշխատող կադրերի ընտրությանը։ Սակայն բոլոր դեպքերում չէ, որ հիմնարկ-ձեռնարկությունների ղեկավարների և պարտիական կազմակերպությունների ուշադրության կենտրոնում է այդ հարցը։ Նրանք նոմենկլատուրային կադրեր չեն, մեծ պաշտոն չեն զբաղեցնում և թվում է թե «աննշան» աշխատողներ են. Նրանց հիշում են միայն այն ժամանակ, երբ արդեն հափշտակված են բավական մեծ գումարների արժեքներ, որի կողքից անցնել այլևս անհնարին է։ Այս անտարբեր և անպատասխանատու վերաբերմունքի շնորհիվ հաճախ այս կամ այն նյութական արժեքների հետ գործ ունեցող պաշտոնների են նշանակվում մարդիկ, ովքեր ոչ միայն վստահություն չեն ներշնչում, այլև սոցիալիստական սեփականության հափշտակության համար եղել են դատված։ Նման դեպքեր եղել են կաթի գործարանում, Երևանի կենտրոնական ունիվերմագում։*

*Պարտիայի Կիրովյան շրջանային կոմիտեն քննարկելով Յուվելիրտորգի հարցը, պարզել է, որ նրա դիրեկտոր Զ. Դանիելյանը իր շուրջն է հավաքել նախկինում դատված, վստահություն չունեցող կադրեր, խախտել է գոյություն ունեցող առևտրական կանոնները, թանկարժեք և մեծ պահանջ ունեցող ապ-*

րանքները վաճառել է ինչպես իր անձնական ունեցվածքը, տեղիք տալով սպեկուլյացիայի։ Դանիելյանը կրել է իր արժանի պատիժը, իսկ խանութի վարիչներ՝ Մինասյանը և Հակոբյանը հեռացվել են պարտիայի շարքերից՝ առևտրի կանոնների կոպիտ խախտման և սպեկուլյացիայի համար։

Պրակտիկան ցույց է տալիս, որ այնտեղ, որտեղ գործարանի, ձեռնարկության, հիմնարկության ղեկավարը սրտացավ է դեպի գործը, պայքարում է սոցիալիստական սեփականության պահպանման համար, այնտեղ այդ առումով դրությունը բարվոք է։ Եվ հակառակը, եթե հիմնարկի ղեկավարը այս կամ այն կերպ չարաշահում է իր պաշտոնական դիրքը, խախտում է կարգ ու կանոնը, իսկ որոշ դեպքերում՝ ուղղակի մասնակից է դառնում պետական միջոցների հափշտակմանը, այստեղ սոցիալիստական ունեցվածքի պահպանման մասին խոսք լինել չի կարող։

Վերջերս պարտիայի քաղաքային կոմիտեի բյուրոն քննեց կոշիկի ֆաբրիկայի հարցը և նշեց չարաշահումների բազմաթիվ փաստեր։ Ֆաբրիկայի նախկին դիրեկտոր Ա. Ներսիսյանը, որը մի քանի անգամ հանվել է պատասխանատու աշխատանքից, ոչ միայն չէր պայքարում այդպիսի երևույթների դեմ, այլև հովանավորում էր գործարանի ունեցվածքը հափշտակողներին, նյութական պատասխանատու աշխատանքի էր վերցնում մարդկանց, որոնք դատված են եղել գողության համար։ Իսկ այն մարդիկ, ովքեր հանդգնում էին քննադատական խոսք ասել նրա հասցեին, նա կեղտոտ նպատակով և կողմնակի ձևերով լռեցնում էր նրանց։

Սոցիալիստական սեփականության հափշտակումների տեղիք տալու համար Երևանի քաղաքային կոմիտեն պաշտոնից և պարտիայի շարքերից հեռացրեց նաև լիմոնադի գործարանի դիրեկտոր Սահակյանին։ Փաստերը ցույց են տալիս, որ վերը նշված մարդիկ իրենց արժանիքներով երբեք էլ չէին կարող այդպիսի պատասխանատու տեղերում աշխատել, մանավանդ որ նրանք նախկինում հանվել են աշխատանքից զանազան հանցանքների համար։ Բայց դրանք օգտվելով որոշ պարտիական օրգանների բարեհոգությունից, նորից կարողացել են այս կամ այն ձեռնարկության, հիմնարկության ղեկավար դառնալ։

Պարտիական կազմակերպությունները և տնտեսական ղեկավարները պետք է վերջ տան աշխատանքում իրենց չարդարացրած, արատավորված մարդկանց պատասխանատու պոստերում նշանակելու դատապարտված պրակտիկային, նրանց չվստահեն նյութական բարիքների պահպանման և տնտեսության ղեկավարման պատվավոր գործը։ Համարձակորեն պետք է առաջ քաշել երիտասարդ կադրերին, որոնք ունեն համապատասխան մասնագիտություն, նորի զգացում և աշխատանքում իրենց արդարացնում են։

«Անհրաժեշտ է,—ինչպես ասել է ընկ. Ն. Ս. Խրուշչովը պարտիայի XXI համագումարում,—ղեկավար աշխատանքի առաջ քաշել պատրաստված, գործիմաց, ձեռներեց մարդկանց, այնպիսիներին, որոնք բոլոր ուժերն ու գիտելիքները նվիրաբերեն ժողովրդի բարօրությանը, աշխատանքում մտցնեն ռևոլյուցիոն ավյունի, բոլշևիկյան կրքոտության, սկզբունքայնության ոգի, ունենան նորի զգացում»։

Սոցիալիստական սեփականության պահպանման գործում թե բացատրական-մասսայական աշխատանքի, և թե կազմակերպչական միջոցառումնե-



րի ձեռնարկման ուղղությամբ լուրջ անելիքներ ունեն նաև պրոֆմիութենական և կոմերիտական կազմակերպությունները։

Անհրաժեշտ է նշել, որ արհմիութենական կազմակերպությունների որոշ աշխատողներ, մասնավորապես տրանսպորտի և առևտրի հիմնարկներում, ճիշտ չեն հասկացել իրենց ֆունկցիաները։ Նրանք մտածում են, որ իրենց իրավունքները մեծացել են միայն վերահսկելու ուղղությամբ, հատկապես աշխատակիցների ազատման կամ տեղադրման ժամանակ։ Տեղկոմների որոշ անդամներ չեն ուզում հասկանալ, որ մեծացել է նաև պրոֆմիութենական կազմակերպությունների պատասխանատվությունը տվյալ օբյեկտի, հիմնարկ-ձեռնարկության ամբողջ գործունեության համար, կադրերի ճիշտ ընտրության և դաստիարակության, ինչպես նաև պետական գույքի պահպանման համար։ Մեր շարքերում դեռևս կան կոմունիստներ, որոնց գիտակցությունը չի հասել այն աստիճանին, որպեսզի իրենց անձնական և պետական գույքի պահպանությանը վերաբերվեն միակերպ։ Այդպիսի ընկերները իրավացիորեն դժգոհում են, որ քաղաքում տեղի են ունենում գողության դեպքեր. նրանք ամենայն կրքոտությամբ քննադատում են միլիցիայի, դատախազական օրգանների, դատարանների անբավարար աշխատանքը այդ երևույթների դեմ պայքարելու գործում։ Սակայն, օրինական հարց է ծագում. այդպես մտածող ընկերները նույնպիսի վերաբերմունք ունե՞ն արդյոք դեպի պետական գույքի պահպանման գործը։ Ցավոք սրտի ոչ բոլորն են այդպես։

Պետական գույքը հափշտակողները անհայտ մարդիկ չեն։ Նրանցից շատերը աշխատում են գործարաններում, հիմնարկ-ձեռնարկություններում, շրջապատված են պարտիականներով, որոնք տեսնում են նրանց արատավոր նիստ ու կացը, բայց իրենց պասիվ ու անտարբեր վերաբերմունքով փաստորեն օժանդակում են այդ հակահասարակական տարրերին։ Այլապես ինչով կարելի է բացատրել այն փաստը, որ ծխախոտի ֆաբրիկայում տեղի ունեցած մի շարք գողության դեպքերից միայն մեկն է հայտաբերվել ֆաբրիկայի աշխատողների կողմից։

Բանը նույնիսկ հասնում է այնտեղ, որ որոշ ձեռնարկությունների ղեկավար աշխատողներ իրենց պաշտպանության տակ են առնում պետական գույքը հափշտակողներին, ամեն կերպ ձգտում են ազատել նրանց քրեական պատասխանատվությունից։ Այսպես, օրինակ, երբ Լենինյան շրջանի միլիցիան գողություն հայտաբերեց Հավաքովի երկաթ-բետոնի առաջին գործարանում, գործարանի դիրեկտոր Ա. Գ. Քոչարովը, գլխավոր հաշվապահ Ռ. Սարգսյանը, գործարկոմի նախագահ Բ. Զաքարյանը, հափշտակումը թաքցնելու միտումով, հետին թվով փաստաթղթեր ձևակերպեցին, որ արդարացնեն հանցավորին։

Այս բնույթի մի փաստ ևս։ Վերջերս Երևանի «Պոբեդա» կահույքի ֆաբրիկայում հասարակական գույքի հափշտակման մեջ բռնվեցին մատակարարման բաժնի պետ Ս. Հարությունյանը և ֆաբրիկայում չորս պաշտոն վարող (ցեխի պետ, տեխնիկական հսկողության բաժնի պետ, անտառանյութի պահեստապետ և կադրերի բաժնի վարիչ) Կ. Հակոբյանը։ Ֆաբրիկայի դիրեկտոր Վ. Զաքարյանը գործադրեց շատ միջոցներ այս հափշտակիչներին փրկելու նպատակով։

Սոցիալիստական սեփականության պահպանման համար առաջին պայքարողները միշտ էլ պետք է լինեն կոմունիստները։ Այս հարցում թեկուզ ամենափոքր շեղումն անգամ չպետք է վրիպի պարտիական կազմակերպու-

թյան տեսադաշտից։ Սակայն քիչ չեն այն փաստերը, երբ խախտվում են պարտիայի կանոնադրական պահանջները և այս կամ այն կոմիտեն կոմունիստի անհանդուրժելի արարքը չի քննարկում։

Սովետական օրինականության խախտողները, պետական գույքը հափշտակողները ոչ մի իրավունք չունեն լինելու պարտիայի շարքերում, նրանք պետք է կրեն նաև դատական պատասխանատվություն։ Կոմունիստ լինելու իրավունք ունի այն մարդը, որն իր բախտը աղնվորեն կապել է մեր ժողովրդի բախտի հետ և պատվով ծառայում է նրա շահերին։ Բոլոր նրանք, ովքեր իրենց պարտիականությունն օգտագործում են կարիերիստական, անձնական շահ ստանալու նպատակով, տեղ չպետք է ունենան մեր շարքերում։

Որոշ պարտիական կազմակերպություններում առանձին կոմունիստների մոտ նկատվում են պարտիայի կազմակերպական սկզբունքին հակասող տրամադրություններ, որոնք բացասական ազդեցություն են թողնում շարքային կոմունիստների և անպարտիականների դաստիարակման վրա։ Հաճախ այս կամ այն կոմունիստի անվայել վարքագիծը քննարկելիս բամավոր դատապարտում են նրան, իսկ երբ գործը հասնում է եզրակացությանը, կազմակերպչական միջոցառումների կիրառմանը, ներում կամ այսպես ասած «մարդասիրություն» են ցուցաբերում և գործն ավարտվում է միայն խրատական զրույցով։

Կոմունիստը, լինի նա շարքային թե ղեկավար աշխատող, մարդկանց գնահատելիս միշտ պետք է ելնի պարտիայի հեղինակության և սովետական օրինականության շահերից։

Սոցիալիստական սեփականության պահպանման գործում մարդկանց ճիշտ դաստիարակելու համար որոշակի նշանակություն ունի պարտիական ինֆորմացիայի դրվածքը։ Պարտիական ինֆորմացիան ինչպես վերադաս, այնպես էլ ստորադաս օղակներին հնարավորություն է տալիս աշխատանքում ճիշտ կողմնորոշվելու։ Բազմաթիվ են դեպքերը, երբ քաղաքային և շրջանային կոմիտեները քննարկելով այս կամ այն կոմունիստի հարցը, դրա մասին տեղյակ չեն պահում սկզբնական կազմակերպությանը, կոլեկտիվին, չեն օգտագործում այդ օրինակները մարդկանց դաստիարակելու գործում։

Սոցիալիստական սեփականության պահպանման, մարդկանց պետականորեն մտածելու, ընդհանուրի շահերը պաշտպանելու ոգով դաստիարակման գործը պարտիական, պրոֆմիութենական, կոմերիտական կազմակերպությունների պատվավոր խնդիրն է։ Միայն ընդհանուր ջանքերով, միասնական պայքարով, արտադրողների անմիջական մասնակցությամբ կարելի է կանխել պետական գույքի հափշտակման երևույթները, անցյալից եկած այդ այլանդակ սովորությունները։ Միայն համբերատար աշխատանքի միջոցով կարելի է հասնել նրան, որ յուրաքանչյուր քաղաքացի համաժողովրդական ունեցվածքը պահպանի այնպես, ինչպես իր ունեցվածքը, հիշելով, որ հանրային հարստությունից է կախված յուրաքանչյուրի անձնական հարստությունը, նյութական ու կուլտուրական կյանքի բարվոք վիճակը։

---

# ԿՈՄՈՒՆԻԶՄԻ ՀԵՏԱԽՈՒՅԶՆԵՐԸ

## Վ. ՍԱՐԳՍՅԱՆ

ՍՄԿՊ XXI համագումարի թեզիսների համաժողովրդական քննարկման պատմական օրերն էին։ Կոմունիստական շինարարության հոյակապ ծրագիրը համակել էր միլիոններին, թևավորել ու նպատակամղել նրանց հերոսական նոր սխրանքների։ Սովետական մարդիկ ջանում էին ստեղծագործական աշխատանքի նորանոր գործերով նշանավորել հարազատ պարտիայի համագումարը, նոր էպոխայի սկիզբը։ Մեծ նպատակը առաջ էր բերել մասսաների մեծ էներգիա։ Եվ հենց այդ օրերին էլ երիտասարդ լենինյանների նախաձեռնությամբ ծնունդ առավ կոմունիստական աշխատանքի բրիգադների շարժումը, որը տարածվեց ամբողջ երկրով մեկ։

— Մենք էլ ենք ուզում աշխատել ու ապրել կոմունիստաբար,— այսպես որոշեցին Երևանի Ֆ. Է. Ձերժինսկու անվան հաստոցաշինական գործարանի բազմաթիվ երիտասարդ բանվորներ։

Ընդառաջելով նրանց ցանկությանը, ձեռնարկության տարբեր ցեխերում կազմակերպվեցին չորս բրիգադաներ, որոնք պայքարի մեջ մտան կոմունիստական աշխատանքի բրիգադայի պատվավոր կոչումը նվաճելու համար։ Ո՞վ առաջինը կնվաճի այդ կոչումը. այդ հարցը խիստ հուզում էր երիտասարդ առաջավորներին, և ինչու միայն նրանց։ Հիրավի, մի քանի ամիս անց, գործարանում տարածվեց մի լուր՝ Մուշեղ Ավետիսյանի ղեկավարած բրիգադան արժանացել է կոմունիստական աշխատանքի բրիգադայի կոչման։

***

Աշխատանքային լիարյուն կյանքով է ապրում ռեսպուբլիկայի արդյունաբերական հնագույն ձեռնարկություններից մեկը՝ ռևոլյուցիայի մեծ ասպետ Ֆելիքս Ձերժինսկու անունը կրող գործարանի կոլեկտիվը, որի անդամների մեծամասնությունը երիտասարդներ են։ Առաջիկա յոթնամյակում հաստոցների արտադրանքի թողարկումն այստեղ ավելանալու է 2,2 անգամ. այդ նպատակով այժմվանից ձեռնամուխ են եղել ցեխերի ընդարձակման ու նորերի կառուցման, արտադրական պրոցեսների հետագա մեքենայացման ու ավտոմատացման։ Այս տարի գործարանի ինժեներա-տեխնիկական աշխատողների ու արտադրության նորարարների համատեղ ջանքերով ստեղծվեց նոր, ավելի կատարելագործված «1Б—61» հաստոցը, որը շուտով կթողարկվի սերիական արտադրությամբ։ Աշխատանքային կոլեկտիվը պարտավորվել է յոթնամյակը կատարել վեց տարում։ Դա լուրջ խոսք է։ Եվ նրանք վերջերս տարան առաջին հաղթանակը՝ ժամկետից հինգ օր շուտ ձեռնարկությունը կատարեց ընթացիկ տարվա առաջին կիսամյակի պլանը։

*Հաստոցաշինարարների այդ հայրենանվեր աշխատանքում իրենց ամենօրյա ավանդն են մուծում նաև Մուշեղ Ավետիսյանի ղեկավարած կոմունիստական աշխատանքի բրիգադայի երիտասարդները, որոնց աշխատանքն ու ապրելակերպը պետք է աստիճանաբար լավագույն օրինակ դառնա երիտասարդ հաստոցաշինարարների համար։*

*Հավաքման ցեխում է աշխատում կոմունիստական աշխատանքի այս բրիգադան, ուր մաս առ մաս հավաքվում ու իրար են համակցվում խառատա-պտուտակային հաստոցի հարյուրավոր մասերը։ Այն բանով, թե ցեխում քանի ու ինչ որակի հաստոց է հավաքվում, վերջին հաշվով էլ որոշվում են գործարանի արտադրական-տեխնիկական ցուցանիշները։*

*Գնանք աշխատանքի այն տեղամասը, ուր գործում է բրիգադան։ Պատին փակցված ալ կարմիր պաստառի վրա գրված է.* «Այստեղ աշխատում է Մուշեղ Ավետիսյանի ղեկավարած կոմունիստական աշխատանքի բրիգադան». *դրան անմիջապես հաջորդում են երիտասարդների թևավոր նշանաբանը՝ «Աշխատել ու ապրել կոմունիստաբար. մեկը բոլորի, բոլորը մեկի համար» և նրանց յոթ պատգամները։ Աշխատանքի պայմաններն այստեղ նույն են, ինչ որ մյուսների մոտ։ Բրիգադայի տղաներն էլ արտաքուստ համարյա ոչ մի բանով չեն տարբերվում ցեխի մյուս երիտասարդներից՝ հայրենասեր երիտասարդ մարդիկ, որոնցով այնքան հարուստ է մեր երկիրը։*

*Գործարանի ԼԿԵՄ Կոմիտեի քարտուղար Կարլեն Ավագյանը մեզ ծանոթացնում է բրիգադայի անդամների հետ։ Դրանք վեցն են։ Բոլորն էլ ունեն միջնակարգ կրթություն և աշխատանքային իրենց կյանքը սկսել են այս գործարանում։*

*— Բացի Վլադիկ Մկրտչյանից,— պատմում է նա,— որ տարիքով ամենաավագն է և նոր է ընդունվել պարտիայի անդամության թեկնածու, բրիգադայի մնացած հինգ անդամները 19—26 տարեկան երիտասարդներ են, կոմերիտականներ։ Բրիգադիր Մուշեղը 1947 թվականից աշխատում է գործարանում, մեզ մոտ է աշխատում նաև նրա կրտսեր եղբայրը։ Ահա այն երկուսը հայրենադարձներ են, Պողոս Մուրադյանը իր ծնողների հետ Հայաստան է եկել Իրանից, իսկ Անդրանիկ Կոշկարյանը՝ Հալեպից։ Հասակով կարճ այն տղան Վալոդյա Հովհաննիսյանն է։ Բրիգադայի ամենակրտսեր անդամը՝ Գրիշա Ղազարյանն է, որ արտադրություն է եկել անցյալ տարի, միջնակարգ դպրոցն ավարտելուց անմիջապես հետո. նրա մայրը՝ Վարսենիկը, որ մոտ 17 տարի է ինչ աշխատում է գործարանում, հավաքման ցեխի լավագույն բանվորուհիներից է։*

*Գործարանում մեծ սիրով են խոսում այս երիտասարդների մասին։ Դրանք խանդավառ, ավյունով առլեցուն երիտասարդ մարդիկ են, ապագա հասարակության ծիծեռնակները։ Նրանք ցանկանում են իրենց աշխատանքով օր առաջ կոմունիզմը մոտեցնել մեզ, ապրել կոմունիստաբար։ Հակված աշխատանքային դազգահների վրա, արագ ու վարժ մատներով, ամենայն խնամքով երիտասարդ փականագործները տեղադրում են հաստոցի ֆարթուկի ու մատուցման տուփի հանգույցները։ Նրանք ճշտությամբ են կատարում իրենց պատգամը՝ մշտապես գերակատարում են արտադրական նորմաները, և անցած ամիսներին չեն տվել խոտան արտադրանք։*

*— Մեր բրիգադան ամբողջությամբ վերցրած առաջադրանքը կատարում է 106—109 տոկոսով, թերակատարողներ չունենք,— պատմում է բրիգադավարը,— չի եղել որևէ դեպք, երբ մեր պատճառով տուժի գործը, ետ մնա աշխատանքը։ Միայն թե գործ տան։ Ի պատիվ ՍՄԿՊ Կենտկոմի Հունիսյան պլենումի՝ հունիսի առաջին տասնօրյակում կատարեցինք մեր կիսամյա պլանը։*



*Դա մի համերաշխ փոքրիկ կոլեկտիվ է, ուր ամեն մեկը պատասխանատու է բրիգադայի, իսկ բրիգադան՝ իր անդամի համար։ Յուրաքանչյուր բանվոր աշխատում է առանձին, կրում է անձնական պատասխանատվություն հանձնարարված գործի համար, ինչպես նաև ըստ իր ունեցած կարգի ու կատարած աշխատանքի ստանում համապատասխան վարձատրություն։ Սակայն նրանց ջանքերը միավորված են, փոխադարձաբար իրար օգնում, համագործակցում են։ Եթե կոլեկտիվի անդամներից մեկը ետ է մնում, ապա նրան օգնության են գալիս մյուսները, եթե մեկը թերանում է աշխատանքում և անտեսում կոլեկտիվ ջանքերը, ապա բրիգադան իր ուժերով փորձում է նրան կանգնեցնել ուղիղ ճանապարհի վրա։*

*Պատահեց մի այսպիսի դեպք։ Աշխատանքի եռուն ժամանակ Անդրանիկ Կոշկարյանը հանկարծ մի առիթով ջղայնացավ ու թողեց գործը։ Մի քանի օր աշխատում էր մի կերպ, ուժերից ցածր։ Տղաները համոզեցին, բայց Անդրանիկը համառում էր։ Բրիգադան որոշեց «պատժել» նրան։ Վարպետի համաձայնությամբ տղաները կատարեցին իրենց ընկերոջ աշխատանքը և միացյալ ուժերով վերացրին ճեղքվածքը՝ թույլ չտալով, որ բրիգադայի մեկ անդամը արատավորի ամբողջ կոլեկտիվի պատիվը։ Կոլեկտիվը հաղթեց։ Անդրանիկը զգալով իր սխալը, նոր եռանդով կպավ գործի։*

*Երիտասարդների ընկերությունն ու բարեկամությունը դիմացավ ևս մեկ փորձության։ Դեպքն անսպասելի էր բոլորի համար։ Գործարանի բնակելի շենքը հանձնվում էր շահագործման, որից բնակարան ստանալու ակնկալություններ ուներ նաև բրիգադայի բրիգադավար Մուշեղը։ Եվ մեկ օր էլ վերջինս տեղեկացավ, որ կարող է պատահել այդ շենքից նա չստանա բնակարան, քանի որ նրանից ավելի կարիքավորները կան։ Րոպեի ազդեցության տակ, հաշվի չառնելով իր ընկերներին, նա առանց մտածելու դիմում գրեց իրեն աշխատանքից ազատելու մասին։ Հուզվել էին երիտասարդ կոմունարները։*

*— Մենք լավ էինք ճանաչում բրիգադայի տղաներին, գիտեինք, որ իրենց բրիգադավարի արարքը խիստ դիպել է նրանց արժանապատվությանը,— պատմում է գործարանի պարտբյուրոյի քարտուղար ընկ. Ս. Մարտիրոսյանը,— և որ նրանք չեն հանդուրժի Մուշեղի ինքնակամ քայլը։ Մենք որոշեցինք առժամանակ չխառնվել նրանց ընկերական գործերին։ Մտածեցինք այսպես. քանի որ տղաները կամովին հանձն են առել աշխատել ու ապրել կոմունիստաբար, ապա թող նրանք էլ լուծեն իրենց հարցերը, թող որոշեն իրենց դիրքը։*

*Այսպես էլ եղավ։ Բրիգադավարը կանգնեց իր ընկերների դատաստանի առաջ։*

*— Մուշեղ, ցեխով տվիր քեզ ու քո ընկերներից,— հուզված դիմեց նրան Վլադիկը,— մի՞թե կարելի է այսպես թեթևամտորեն մոտենալ հարցին ու արատավորել մեր կոչումը։ Մի՞թե դա ընկերություն է։*

*Խոսեցին և մյուսները։*

*— Տղերք, ազնիվ խոսք, տաքացա ու չիմացա իմ արածը։ Սխալվել եմ, հիմա ինչ եք ասում, ինչ անել,— պատասխանեց Մուշեղը։*

— Ետ վերցրու դիմումդ, պրծավ գնաց,—եղավ բոլորի վճիռը։

Գլխահակ, ծանր սրտով այդ օրը Մուշեղը տուն վերադարձավ։ Նա վերհիշում էր իր ընկերների խոսքերը և մտատանջվում։ Նրանց հայացքներում նա կարդում էր մի անխոս կշտամբանք, որոնք կարծես ասելիս լինեին, թե դու՝ Մուշեղ Ավետիսյան, ինչու այդքան շուտ մոռացար ընկերությունը, մի՞թե մենք չէինք, որ մեր ուժերով լավացրինք քո բնակարանային պայմանները, երկու շաբաթ շարունակ աշխատանքից հետո օգնում էինք քեզ կառուցելու պատըշգամբը...

Այդ փորձություններից բրիգադան դուրս եկավ է՛լ ավելի ամրապնդված։ Նրանք իրենց փորձով զգացին թե որքան մեծ է կոլեկտիվի ուժը։

Բրիգադան մրցումների մեջ է Թբլիսիի Կիրովի անվան հաստոցաշինական գործարանի Զ. Գվելուկաշվիլու ղեկավարած կոմունիստական աշխատանքի բրիգադայի հետ։ Նրանք որոշել են համատեղ պայքարել յոթնամյա պլանի առաջադրանքները ժամկետից շուտ կատարելու համար, ամրապնդել եղբայրական բարեկամությունն ու աշխատանքային համագործակցությունը, կատարել փորձի փոխանակում և այլն։ Կոմունիստաբար աշխատողները իրենց պատասխան նամակում գրել են, որ «Կոմունիստաբար ապրելն ու աշխատելը պետք է դառնա մեր նշանաբանը և մեր կյանքի իմաստը»։

Ապագայի մարդու ձևավորումն ու կոփումը տեղի է ունենում Հայրենիքի բարօրության համար կատարվող ամենօրյա աշխատանքի բովում։ Բայց կոմունիզմի կառուցողը պետք է ունենա վառ կերպով արտահայտված հասարակական դեմք, նա մարտիկ է։ Կոմունիստական աշխատանքի բրիգադայի անդամը պետք է կատարի հասարակական որևէ աշխատանք, կարևոր չէ թե այն մեծ է, թե փոքր։

Երիտասարդ հայրենասերները հրաժարվել են հավաքարարի աշխատանքի օգտագործումից, նրանք ամեն օր աշխատանքից հետո իրենք են մաքրում իրենց տեղամասը, դազգահները։ Նրանք պարտավորվել են գործարանի ենթաշեֆ դպրոցի բարձր դասարանների աշակերտներից ամեն տարի պատրաստել 6—7 հավաքող փականագործ. պետք է այս օրերին տեսնել, թե նրանք ինչպիսի սիրով են հաղորդում իրենց գիտելիքները դպրոցականներին, օգնում նրանց ձեռք բերելու փականագործի մասնագիտություն։ Կամ մի այլ օրինակ։ Արձագանքելով Ղարադաղ-Աղստաֆա գազամուղի շինարարության կոմերիտականների նամակին, գործարանի երիտասարդությունը կարճ ժամկետում պատրաստեց ու շինարարություն ուղարկեց մի հաստոց։ Բրիգադան էլ մասնակցություն ունեցավ այդ գործին, իսկ լավագույն աշխատանքի համար նրա անդամներից երկուսը՝ Մուշեղը պարգևատրվեց ՀամԼԿԵՄ Կենտկոմի կրծքանշանով, իսկ Անդրանիկը՝ ՀԼԿԵՄ Կենտկոմի Պատվոգրով։ Գործարանի կոլեկտիվի հետ տղաները մասնակցում են շաբաթօրյակներին։ Բրիգադայի անդամներից չորսը հասարակական կարգը պահպանող դրուժինայի մեջ են։ Ինքը՝ բրիգադիրը՝ գործարանի ԼԿԵՄ կոմիտեի և գործարկոմի անդամ է, Վլադիկը՝ ցեխի պրոֆկազմակերպիչ, Անդրանիկը՝ թերթի խմբկոլի անդամ և այլն։

Կոմունիզմի կառուցողը պետք է լինի քաղաքականապես հասուն ու բազմակողմանիորեն զարգացած մարդ։ Երիտասարդներն ակտիվորեն մասնակցում էին քաղխմբակի պարապմունքներին, ուր ուսումնասիրում էին ՍՄԿԿ XXI համագումարի նյութերը, ներկա են լինում կազմակերպվող զեկուցումներին



ու զրույցներին, մշտապես հետաքրքրվում են մեր երկրի ու միջազգային կյանքի իրադարձություններով։ Բրիգադայի անդամները որոշել են առաջիկա հինգ տարում առանց արտադրությունից կտրվելու ձեռք բերել միջնակարգ մասնագիտական ու բարձրագույն տեխնիկական կրթություն։ Առաջին քայլը կատարեց Վլադիկը, որը աշխատանքի հետ միասին հինգ տարի սովորելով Հաստոցաշինական տեխնիկումում, մեկ ամիս առաջ պաշտպանեց դիպլոմային աշխատանքը։ Պաշտպանությանը ներկա էին գործարանի շատ երիտասարդներ, իսկ բրիգադան՝ լրիվ կազմով։ Նրանք հուզված լսում էին Վլադիկի վստահ ու հիմնավոր բացատրությունները՝ նրա կողմից խնամքով արված գծագրերի վրա։ Ընկերները ջերմորեն ողջունեցին դիպլոմանտին։

Հերթը մյուսներինն է։ Մուշեղը, Պողոսը և Վալոդյան ուզում են սովորել Հաստոցաշինական տեխնիկումում, իսկ Անդրանիկն ու Գրիշան՝ Պոլիտեխնիկական ինստիտուտում։ Նրանք այժմվանից նախապատրաստվում են ընդունելության քննություններին, հաճախ կարելի է նրանց տեսնել տանը՝ դասագրքերի առաջ։

ՀԼԿԵՄ Երևանի քաղկոմի նախաձեռնությամբ երիտասարդ բանվորների համար բացվել է Կուլտուրայի համալսարան։ Ամեն կիրակի կոմունիստական աշխատանքի բրիգադայի անդամները կոկիկ հագնված, սափրված գնում են պարապմունքի, ուշադիր լսում արվեստի, գրականության ու գիտության գործիչների դասախոսությունները. արդեն նրանք լսել են դասախոսություններ՝ սովետական երիտասարդի բարոյական կերպարի, սիրո, ընտանիքի ու ամուսնության, ինչպես հասկանալ երաժշտությունը, կերպարվեստի արտահայտչական ձևերն ու առանձնահատկությունները թեմաների, ինչպես նաև կինոյի ու թատրոնի առանձին հարցերի մասին։ Տղաները գոհ են համալսարանից. դա զարգացնում է ճաշակը, ընդլայնում նրանց մտահորիզոնը։

Հաճախ երիտասարդներին՝ առանձին կամ կոլեկտիվով կարելի է տեսնել կինոթատրոններում, զբոսայգիներում, կուլտուրայի տանը, երիտասարդական երեկոներում, կազմակերպվող էքսկուրսիաներում։ Միասին եղել են օպերայում։ Բրիգադայի անդամների հակումները, հետաքրքրությունների շրջանակը տարբեր են, միատեսակ չեն ընկալում ու հասկանում հարցերը։ Նրանք տարբեր են խառնվածքով։ Բոլորը չէ, որ սիրում են պարել կամ նվագել. մեկը սիրում է կամերային կամ էստրադային երաժշտություն, մյուսը՝ ժողովրդական։ Տղաներից ոմանք սպորտի իսկական սիրահարներ են, մասնակցում են գործարանում կազմակերպված վոլեյբոլի ու բասկետբոլի խմբակներին, երկուսը նվագում են փողային նվագախմբում, իսկ Անդրանիկն ու Գրիշան գնել են ակորդեոն և սովորում են նվագել։ Լավ է, երբ երիտասարդ բանվորները միասին եղել են Արզնիում, իրենց հանգիստը անցկացրել Կոմերիտմիության անվան զբոսայգում և ընկերներից մեկի տանը, հաճախակի այցելում են իրար տներ և այլն։

Կոլեկտիվի մեջ մտնում է անհատը՝ իր ցանկություններով ու կենսական պահանջներով, և չի կարելի պահանջել, որ ձևականորեն միշտ կոլեկտիվ կերպով նրանք հաճախեն այս կամ այն վայրը, հետաքրքրվեն միևնույն հարցերով։ Օրինակ, Մուշեղը և Վլադիկը մյուսներից տարիքով մեծ են, ունեն իրենց ընտանիքը և երեխաները, պարզ է, որ իրենց ազատ ժամանակի մի զգալի մասը պետք է նվիրեն նրանց, զբաղվեն ընտանեկան գործերով, որի հոգսերից զերծ են մյուս երիտասարդները։ Բայց վերջիններիս հուզում են այլ հարցեր.

ասենք, պետք է հանդիպել սիրած աղջկան, զբոսնել նրա հետ երևանյան խաղաղ գիշերներին, գնալ համերգ կամ կինո։

Կոմունիստական աշխատանքի բրիգադաների շարժումը նոր երևույթ է մեր կյանքում։ Որպես իսկական հետախույզներ երիտասարդները ընթանում են դեռևս չուսումնասիրված, չտրորված կածաններով, փորձելով թափանցել լուսապայծառ ու հեռու ապագայի խորքերը, նրանք որոնում, ելք են փնտրում, որպեսզի ավելի լավ զուգորդվեն աշխատանքն ու կյանքը, կոմունիստական լինի նրանց վարքագիծը, ապրելակերպը։

Անհեթեթություն կլիներ մտածել, որ մի քանի ամսում՝ մոգական գավազանի ուժով նոր կյանքի հետախույզները միանգամից վերափոխվեցին, դարձան կոմունիզմի անարատ կերտողներ։ Նրանց ամենօրյա աշխատանքում, կենցաղում և վարքագծի մեջ դեռևս շարունակում են մնալ ստվերոտ կողմեր։ Նրանք մեկ անգամ չէ, որ կարող են սխալվել, միանգամից չէ, որ հնարավոր կլինի վերափոխել նրանց բնավորության վատ գծերը, հաղթահարել նրանց գիտակցության մեջ մնացած անցյալի մնացուկները։ Այսպես. տղաներից ոմանք քիչ են կարդում, կամ անկանոն են մասնակցում տեխմինիմումի պարապմունքներին, նույն ակտիվությամբ չէ, որ բոլորը մասնակցում են հասարակական աշխատանքներին և այլն։

Անհրաժեշտ է, որ գործարանի պարտիական կազմակերպությունը և մյուս հասարակական կազմակերպությունները մշտապես զբաղվեն կոմունիստական աշխատանքի բրիգադաների աշխատանքի ու կյանքի հարցերով, իրենց գաղափարական և կազմակերպչական մշտական ներգործության տակ պահեն այդ շարժումը, ժամանակին նկատեն ու շտկեն երիտասարդների սխալները։ Նրանք պետք է վերահսկեն, թե երիտասարդներն ինչպես են կատարում իրենց պատգամները, օգնեն նրանց հաղթահարելու եղած դժվարությունները, սովորեցնեն երիտասարդներին իրենց իսկ սխալների վրա։

Առավել ուշադրություն կոմունիստական աշխատանքի բրիգադաներին։ Պարադայնությունն ու ֆորմալիզմը հավասարապես վնասում են այդ առողջ շարժմանը։

---



«Անհրաժեշտ է միջոցառումներ ձեռնարկել ետ մնացող կոլտնտեսությունները տնտեսապես ամրապնդելու և յուրաքանչյուր շրջանում այդպիսիներն առաջավոր կոլտնտեսություններին հասցնելու համար»:

ՀԿՊ XX ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ԲԱՆԱՁԵՎԻՑ

# ՅՈԹՆԱՄՅԱԿԻ ՊԱՀԱՆՋՈՎ

Թե ինչպես է ծագել գյուղի անունը, այդ մասին գրավոր ոչ մի հիշատակություն չկա։ Միայն սերնդից-սերունդ անցած և մինչև մեր օրերը հասած ավանդության համաձայն,— պատմում է 87-ամյա տարեց կոլտնտեսական Թևոս ապերը,— գյուղի անվան ծագումը կապված է վայրի հետ։ Սկզբում այդ բնակավայրը կոչվել է Խոր ձորեր, որը հետագայում վերափոխվելով դարձել է Խնձորեսկ։

Եվ դա շատ հավանական բացատրություն է։ Օտարերկրյա հրոսակների հարձակումներից պաշտպանվելու նպատակով Գորիսի շրջանի այդ հինավուրց գյուղը ծվարել է իրար մոտ գտնվող յոթ խոր ձորերի մեջ։

Խնձորեսկցիները, անծանոթ մարդկանց մոտ, հաճախ կատակով ասում են.

— Եթե քաղաքների տները կառուցվում են 4-5 հարկանի, ապա մեր գյուղում 50-60 հարկանի տներ էլ կան... Անծանոթն սկզբում շատ կզարմանա, իսկ երբ կատակաբան Ջիվանշիրը ցույց տա Շռանի գլխին գտնվող Համբարձում Թոխսանցի տունը, հետո հաշվի լեռան թեք լանջին կառուցված տները, որոնցից մեկի կտուրը ուղիղ մյուսի բակն է հանդիսանում և հասնի ժայռի կատարին գտնվող Հրաչյա Փանդունցի տունը, ապա այլևս չի զարմանա, այլ ինքն էլ կհաստատի, որ, իրոք, այնտեղ կան յուրահատուկ ձևով կառուցված բազմահարկ տներ։

Կոլտնտեսության վարչության գրասենյակում մենք հանդիպեցինք արտելի հաշվապահին՝ Մանվել Մանվելյանին, որն արդեն 25 տարի է, ինչ բարեխղճորեն վարում է հայրենի գյուղի կոլտնտեսության հաշվապահությունը։

— Ցանկանում ենք ծանոթանալ ձեր կոլտնտեսության վիճակի հետ, իմանալ թե ինչպե՞ս են զարգանում ձեր արտելի արտադրական ճյուղերը,— դիմեցինք նրան։ Մինչև մեր հարցին պատասխանելը, նա սեղանի արկղից հանեց խնամքով կարված հաշվապահական գործերը, փռեց սեղանի վրա։

— Որպեսզի տվյալներն ավելի ստույգ լինեն, լավ է դիմենք այս «էնցիկլոպեդիային»,— ասաց նա և մեկ առ մեկ թերթելով թղթերը, շարունակեց զրույցը։

— Մեր գյուղատնտեսական արտելը կազմակերպվել է 1929 թվականին։ Առաջին տարին նրա ամբողջ ունեցվածքը եղել է այնքան աննշան, որ ներկա վիճակի հետ համեմատել միանգամայն անիմաստ է։ Եվ դա հասկանալի է։ Դե, դրանից էլ եզրակացրեք նրա եկամուտը։ Այդ ժամանակվանից անցել է

երեսուն տարի և տնտեսությունն աճել, հզորացել, այժմ դարձել է ռեսպուբլիկայի նշանավոր կոլտնտեսություններից մեկը։

— Ի՞նչ բնորոշ ցուցանիշներ ունեք,— անհամբերությամբ միջամտում է ընկերս։

— Այժմ մեր կոլտնտեսությունում ընդգրկված է 412 տնտեսություն. մշակվում են 1.500 հեկտար հացահատիկային և 2 տասնյակ հեկտար բանջարաբոստանային կուլտուրաներ, 36 հեկտար ծխախոտ. կոլտնտեսությունն ունի շուրջ 2.000 գլուխ խոշոր եղջերավոր անասուն, 11.500 գլուխ ոչխար։ 1955 թվականին հացահատիկային կուլտուրաների ցանքատարածության ամեն մի հեկտարից ստացվել է 7 ցենտներ բերք, իսկ անցած տարի այն հասավ 10,4 ցենտների և կոլտնտեսությունում արտադրվեց շուրջ 16.000 ցենտներ հացահատիկ։ Այդ ժամանակամիջոցում կաթի արտադրությունը աճել է 2 անգամ, միսը՝ 1.500 ցենտներով, բրդինը՝ 10 տոննայով, իսկ դրամական եկամուտները՝ 92 տոկոսով և հասել է 4 միլիոն 100 հազար ռուբլու։ Կոլտնտեսության անբաժանելի ֆոնդն այժմ հասնում է 7,5 միլիոն ռուբլու, իսկ կապիտալ ներդրումների գումարը՝ տարեկան շուրջ մեկ միլիոն ռուբլու. կոլտնտեսականների վաստակած աշխօրերի արժեքը, վերջին երեք տարվա ընթացքում, բարձրացել է 2 անգամ։

## ՍՏԵՂԾԱԳՈՐԾԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՄԱՐԴԻԿ

Մեր ավտոմեքենան սլանում էր փարթամորեն աճած հացահատիկի լայնատարած արտերի միջով ձգվող խճապատ ճանապարհով։ Երբ հասանք «Հարամի դուզ» կոչվող դաշտամասը, արտերի մեջ քաղհան էին կատարում կոլտնտեսականները։ Դրանք դաշտավարական յոթերորդ բրիգադայի աշխատավորներն էին։

— Ինչպե՞ս են ձեր գործերը, որքա՞ն կլինի այս տարվա բերքը,— հարցրինք մենք։

— Ճիշտ այնպես, ինչպես պահանջվում է յոթնամյա պլանով,— պատասխանեց բրիգադավար Վ. Աթասունցը. այդ են վկայում մեր արտերի խտությունը, կանաչ գույնը, մաքրությունը։ Մեկ-մեկ, այ, կարմիր ու դեղին ծաղկած մոլախոտեր են երևում, դրանք էլ քաղհանում ենք, որպեսզի չնեղեն հացահատիկի բույսերին։ Իմ բրիգադան ագրոտեխնիկական լավագույն ժամկետում է կատարել գարնանացանը։ Բույսերը այնքան լավ են աճել, բոյ քաշել, որ աշնանացան ցանքերից չեն տարբերվում։ Յուրաքանչյուր հեկտարից 11-ի դիմաց մենք կապահովենք 14—15 ցենտներ բերքի ստացումը։

Մեր խոսակցությանը միջամտելով, կոլտնտեսության գյուղատնտես Սուրիկ Ցանդունցը պատմեց, որ ոչ միայն այդ, այլ դաշտավարական մյուս բոլոր յոթ բրիգադաներն էլ ժամանակին ու բարձր որակով են կատարել գարնանացանը, ինքնաթիռով սնուցել 540 հեկտար ցանքեր։ Մեր կոլտնտեսականները պայքարում են գործի վերածել իրենց սոցիալիստական պարտավորությունը և հեկտարից պլանով նախատեսվածից ավելի ստանալ 3 ցենտներ հացահատիկ, 4-5 ցենտներ ծխախոտ։

— Տեսնո՞ւմ եք այն երկար գոտիների նման ձգված սև ու կանաչ շերտերը։ Դրանք էլ մեր կոլտնտեսության փորձադաշտերն են։ Այս տարվանից սկսած փորձեր ենք դնում, պարզելու, թե «ալֆատ», «ուկրաինկա», «գյուղանի» ու այլ սորտերի ցորենը, աշնան ու գարնան գարին, եգիպտացորենը, արևածաղիկը և ցանովի խոտաբույսերը ինչպես են աճում, որպեսզի յոթնամյակում արմատավորենք առավել եկամտաբեր ու շահավետ կուլտուրաներ։



Մենք եղանք նաև փորձադաշտում, ծխախոտի պլանտացիաներում. հանդիպեցինք կոլտնտեսականներ Քնարիկ Յուզբաշյանի, Սենյա Դիլանչյանի, Խանում Թաթարյանի և շատ շատերի հետ. զգում ես, որ ամենուրեք մարդիկ աշխատում են ջանասեր, ամեն ինչ անում յոթնամյակի առաջին տարին արտադրական բարձր նվաճումներով ավարտելու համար։

Շարունակելով մեր ճանապարհը, հասանք մի բարձունքի, որի հանդիպակած կողմին, գետի աջ ափին, մեր ուշադրությունը գրավեցին կղմինդրածածկ, երկու շարքի վրա գեղեցիկ ձևով կառուցված շենքերը, որոնք պատկանում են կոլտնտեսությանը։

Անասնապահներն ավարտել էին կովերի կիթը և ստացված կաթը հանձնում էին հենց այնտեղ կազմակերպված կաթի վերամշակման պետական կետին։ Սպիտակ խալաթի փեշերով սրբելով ճակատի քրտինքը, երիտասարդ կթվոր անասնապահ Վալոդյա Բալոյանը գոհունակ ժպտաց.

— Այս տասնօրյակում էլ փոխանցիկ դրոշը մնաց իմ ձեռքում։ Այսօր յուրաքանչյուր կովից ստացված կաթը կազմեց 15 կիլոգրամ, այսինքն 1,5 կիլոգրամով ավելի, քան երեկ է ստացվել։ Յուրաքանչյուր կովի կաթնատվությունը տարեվերջին կհասնի 2300—2400 կիլոգրամի, որով նախադրյալներ կստեղծվեն յոթնամյա պլանը 5 տարում կատարելու համար։

— Մի՞թե միայն նա է առաջավորը։ Այստեղ առաջավոր կթվոր-անասնապահների ցուցակը շատ մեծ է. կոմունիստներ Թելունցը, Աղասյանը, Բալոյանը, Ղլեչունցը, ո՞ր մեկն ասեմ, բոլորը, բոլորն էլ համակված են յոթնամյակը ժամկետից շուտ կատարելու ցանկությամբ,— ասաց ֆերմայի վարիչ Թողսանցը և մեզ հրավիրեց իր մոտ՝ ընթրիքի։

Մենք սիրով ընդունեցինք նրա հրավերը, մանավանդ որ երկար քայլելուց հետո ուտել էինք ուզում։ Համեստորեն կահավորված սենյակում, սեղանի շուրջը նստեցինք մենք ու ֆերմայի անասնապահները և մեծ ախորժակով սկսեցինք վայելել նրա վրա գտնվող բարիքները։

— Այժմ մեր ֆերմայում հաշվվում է շուրջ 600 կով. օրական միջին հաշվով ստանում ենք 5,5 տոննա կաթ,— պատմում է ֆերմայի վարիչը։— Դրանից 4,5 տոննան վաճառում ենք պետությանը, իսկ մեկ տոննան տալիս հորթերին։ Անասունների ցեղը բարելավելու նպատակով արդեն մի քանի տարի է, ինչ ստեղծել ենք արհեստական սերմնավորման կետ։ Դրա շնորհիվ էլ ստանում ենք առողջ ու ցեղական մատղաշներ։

— Մենք պայքարում ենք այս տարի յուրքանչյուր ֆուրաժային կովից պլանով նախատեսված 1600-ի դիմաց ստանալու 1700 կիլոգրամ կաթ,— շարունակում է նա,— և կաթի համախառն արտադրանքը հասցնել 10,700 ցենտների, այսինքն 2000 ցենտներով ավելի, քան անցյալ տարի։

—Անասունների մթերատվությունը բարձրացնելու գործում պակաս դեր չի խաղում նաև սոցիալիստական մրցության կազմակերպումը,— միջամտում է ֆերմայի պարտիական խմբի կազմակերպիչ Լազր Թելունցը։— Մեր բոլոր կթվոր-անասնապահներն էլ իրար հետ կնքել են սոցմրցման պայմանագիր. սահմանել ենք փոխանցիկ դրոշ։ Ամեն օր, այ, պատից կախված այն տախտակի վրա գրվում է, թե ով ինչքան կաթ է հանձնում պահեստ, որը մի

տեսակ բարի նախանձ է առաջացրել մեր ֆերմայի մարդկանց մեջ, որոնցից յուրաքանչյուրը սրտանց ձգտում է իր և ֆերմայի պատիվը բարձր պահել։

Հիացած այդ անխոնջ մարդկանց ձգտումներով, հույզերով ու աշխատանքով, հետագա հաջողություններ ցանկացանք նրանց ու ճանապարհվեցինք։

Մեր մեքենան կանգ առավ «Նյաղի տեղ» դաշտամասում։ Այնտեղ կոլտնտեսության էլեկտրախուզիչ ագրեգատավոր Ռաֆիկ Ղալդունցը խուզում էր ոչխարները։

— Պետք է խուզող դանակները այնպես պահել, որպեսզի և՛ ոչխարի մորթին չվնասվի, և՛ մաքուր խուզվի, և՛ բուրդը կտրվի միայն մի տեղից, հակառակ դեպքում կընկնի բրդի որակը,— բացատրում էր ագրեգատավարը և միաժամանակ ձեռքի վարժ շարժումով մոտը կանգնած ոչխարը պառկեցնում հարթակի վրա ու խուզում։ Նա խուզեց 5, 10, 50, 100 ոչխար և սպիտակ ձյունանման նուրբ բուրդը կուտակեց, բլրակ կազմեց։ Կոլտնտեսության զոոտեխնիկ Միշա Կյալունցի անմիջական ղեկավարությամբ 3 կոլտնտեսականներ ստացված բուրդը անմիջապես ըստ սորտերի տեսակավորեցին, լցրին բարդանների մեջ և ապա իրար վրա խնամքով դարսեցին։

— Այդ բարդանների բուրդը ուղարկելու ենք ուղղակի գործարան, արդեն 3-րդ տարին է, ինչ այդպես ենք կատարում,—բացատրում էր զոոտեխնիկը։ Դա շատ ձեռնտու է, կորուստներ տեղի չեն ունենում, բրդի որակը ճիշտ է որոշվում և կոլտնտեսությունն էլ դրա համար դրամական ավելի շատ եկամուտ է ստանում։

Այդ միջոցին մեզ մոտ եկան մի քանի հովիվներ և ոչխարաբուծական ֆերմայի վարիչ Սամվել Խաչատրյանը։

— Ինչպե՞ս է ոչխարների բրդատվությունը, կարողանալո՞ւ եք հաղթել ձեր մրցակից Խանածախ գյուղի կոլտնտեսության ոչխարաբույծներին,— դիմեցինք ֆերմայի վարիչին։

— Այդ հարցին թող Ավագը պատասխանի,— ասաց նա և ձեռքը մեկնեց դեպի մեր դիմաց կանգնած մորթե հսկայական գլխարկով կոլտնտեսականը։

Վերջինս մեզ ավելի մոտեցավ և կրծքով հենվեց մահակին ու պատասխանեց.

— Ճիշտ է, որ մենք միշտ ուզում ենք մեր մրցակիցների լավ գործերի մասին լսել, բայց և այնպես ցանկանում ու պայքարում ենք նրանցից առաջավոր լինելու համար։ Ոչխարների արհեստական սերմնավորման միջոցով բարելավել ենք ցեղը և այժմ նրանց 80—90 տոկոսը նրբագեղմ է։ Իմ խնամքին հանձնված հոտում ոչ մի անկում այս տարի չի եղել, իսկ միայն գարնանային խուզից ամեն մի ոչխարից ստացել եմ 5,4 կիլոգրամ բուրդ։ Միայն առաջին խուզից պետությանն եմ հանձնել 1984 կիլոգրամ բուրդ, որի դիմաց մեր կոլնտեսությունը կստանա շուրջ 65000 ռուբլի դրամ։ Ախպեր, ինչո՞ւ կասկածել. աշնանային խուզի հետ միասին ես ամեն մի ոչխարից կստանամ 7 կիլոգրամ բուրդ և յոթնամյակի վերջին տարվա առաջադրանքը կկատարեմ այս տարի։

— Ընկեր ժուռնալիստ,— միջամտեց մեկ ուրիշը,— դուք կկարծեք թե Ավագ Աթաբեկյանը միայն այս տարի է լավ աշխատում։ Ոչ, այդպես չէ։ Նա շուրջ 28 տարի է, ինչ աշխատում է որպես հովիվ և միշտ էլ արդարացրել է



իրեն։ Իր լավ աշխատանքի համար նա այս տարի ընտրվեց ՀՍՍՌ Գերագույն Սովետի դեպուտատ։ Մենք առաջավոր ուրիշ հովիվներ շատ ունենք։

Այնուհետև ֆերմայի վարիչ Ս. Խաչատրյանը պատմեց, որ այս տարի 28-ի դիմաց պետությանը կվաճառեն 40 տոննա բուրդ, ամառանոցում բտելու են 3000 ոչխար, որպես մսացու՝ պետությանը հանձնելու համար։

— Եվ գիտեք ինչ,—վերջում ասաց նա,—այդ ամենը միասին հաշված 2 անգամ ավելի է լինելու, քան 1956 թվականին ոչխարաբուծությունից ստացված եկամուտը։

## ՏԵԽՆԻԿԱՆ ՄԵԾ ԳՈՐԾ Է ԿԱՏԱՐՈՒՄ

Իր գոյության անցած տարիների ընթացքում կոլտնտեսությունը 10 միլիոն ռուբլի է ծախսել արտադրական օբյեկտների շինարարության և արտադրության միջոցներ ձեռք բերելու համար։ Կառուցվել են նորատիպ, լուսավոր անասնապահական 28 շենքեր, որտեղ այժմ հիմնականում տեղավորված են արտելի անասունները, սղոցարանը, էլեկտրաղացը։ Կոլտնտեսությունը ունի 13 ավտոմեքենա, 6 տրակտոր, 5 կոմբայն և տասնյակ այլ գյուղատնտեսական մեքենաներ ու գործիքներ։

Տրակտորային բրիգադայի բրիգադավար՝ կոմունիստ Սարգիս Բաբալարյանին մենք հանդիպեցինք հենց մեքենայական պարկում, ուր մեխանիզատոր Կարո Աղասյանի հետ փորձարկում էին հնձիչը։

— Ինչպիսի՞ աշխատանքներ է կատարում տրակտորային բրիգադան,— հարցրինք մենք։

— Ամեն տեսակ. օրինակ, դաշտային բոլոր աշխատանքները հարյուր տոկոսով կատարվում է բրիգադայի կողմից։ Այս տարվա 330 հեկտար գարնանացանը կատարվել է 6 օրում. պատրաստել ենք մոտ 4000 տոննա սիլոս և կուտակելու ենք 2500 տոննա ծղոտ ու 3000 տոննա խոտ։ Հացահատիկային կուլտուրաների բերքահավաքը ամբողջությամբ կատարելու է տրակտորային բրիգադան։

— Իսկ անհրաժեշտ թվով կադրեր ունե՞ք։

— Կադրեր շատ ունենք, այն էլ լավ կադրեր, ամեն մի մեքենայի հետև 3—4 մասնագետ կա կանգնած, մեր կոլտնտեսության սեփական մեխանիզատորական կադրերի թիվը 80-ից անցնում է։ Նրանցից շատերը նույնիսկ տիրապետում են մի քանի մասնագիտությունների։ Այսպես, կոմունիստ Սաշիկ Թելունցը ձմեռը շոֆերություն է անում, գարնանը և աշնանը տրակտորով վար ու ցանք, իսկ ամռանը աշխատում է որպես կոմբայնավար ու սեզոնում հավաքում է 350—400 հեկտարի բերք ։

— Վատ չի աշխատում նաև կոմունիստ ավտովարորդ Արամ Բալոյանը,— միջամտում է մի երիտասարդ։ Նա միշտ իր մեքենան պահում է տեխնիկապես սարքին վիճակում և շարունակ գերակատարում է բեռների փոխադրման իր պլանը։

— Իսկ տրակտորիստ Մարտիրոս Գյուլամբարյա՞նը, կոմբայնավար Գրիշա Քշո՞ւնցը, ավտովարորդ Հրաչիկ Ճատո՞ւնցը... հալալ է նրանց, իրոք որ նրանք մտածում, աշխատում ու պայքարում են յոթնամյակի տեմպերով,— իր խոսքն ավարտեց Ս. Բաբալարյանը։

## ԽՆՁՈՐԵՍԿԸ ՋԱՀԵԼԱՆՈՒՄ Է

*Դարեր շարունակ Խնձորեսկի գյուղացին վառ հույսերով երազել է այդ անդնդախոր ձորերից վերև բարձրանալու, հարթ տարածության վրա քարե գեղեցիկ տներ կառուցելու և մարդավայել ապրելու մասին: Բայց այդ նրա-զանքը միշտ էլ մնացել է անկատար... Վախը թշնամիների հարձակումից և նյութական աղքատիկ պայմանները խնձորեսկցուն միշտ գամված են պահել այդ լեռների փեշերին ու ծերպերին:*

*Զանգեզուրում սովետական կարգեր հաստատվելուց հետո առաջին ար-գելքը՝ թշնամիների հարձակման վտանգը վերացավ: Եվ ահա առաջին ան-գամ, 1924 թվականին դրվեց գյուղը տեղափոխելու հարցը: Բայց ինչպե՞ս, ի՞նչ միջոցներով, չէ՞ որ դրա համար հսկայական գումարներ էին պետք, իսկ Խնձորեսկը զուրկ էր դրանից:*

*Ինչպես Սովետական Միության շատ վայրերում, այնպես էլ Խնձորես-կում կազմակերպվեց կոլեկտիվ տնտեսություն: Ճիշտ է, հանրային ֆոնդում որոշ միջոցներ կուտակվում էին, բայց դրանք քիչ էին: Գյուղի տեղափոխման հարցը երկրորդ անգամ բարձրացվեց 1932 թվականին, պետության օգնու-թյամբ երկու տարում գետի այն կողմի դաշտում մի քանի քարաշեն տներ էլ կառուցվեցին, սակայն այնտեղ խմելու ջուր չլինելու պատճառով շուտով դադարեցվեց շինարարությունը:*

*Անցան տարիներ, աճեց, զորացավ կոլտնտեսությունը, զարգացան նրա ճյուղերը, բազմապատկվեցին եկամուտները: Այս անգամ արդեն հնարավոր էր գյուղի տեղափոխման խնդիրը լուծել արտելի և նրա անդամների միջոց-ներով:*

*— Մեր նոր գյուղը պետք է կառուցենք Փրթոսի տափարակում, միակ հարմար տեղը դա է. Փրթոսը համ հին գյուղից է մոտ, համ էլ դաշտի կեն-տրոնում է գտնվում,— ասացին տարեց մարդիկ: Որոշվեց գյուղը տեղափո-խել Փրթոս:*

*Նոր գյուղի կառուցման գործը ավելի մեծ թափով առաջ գնաց, հատկա-պես ՍՄԿԿ Կենտկոմի 1953 թվականի Սեպտեմբերյան պլենումից ու պար-տիայի XX համագումարից հետո, երբ Խնձորեսկի կոլտնտեսությունը սկսեց զարգանալ մինչև այդ չտեսնված արագ տեմպերով, երբ հորդեցին հանրա-յին տնտեսության եկամուտները և լիացրին նրա անդամներին:*

*Երբ հասանք Փրթոս, այնտեղ արտակարգ աշխատանքային եռուզեռ տե-սանք: Երեք տասնյակից ավելի կոլտնտեսականներ իրենց համար կառուցում էին նոր բնակարաններ: Ներքևում ուղիղ շարքերով կառուցված երկհարկանի թիթեղյա տանիքով շենքերն ամենից շուտ գրավեցին մեր ուշադրությունը:*

*— Ո՞ւմ տներն են այն նորակառույցները,— հարցրինք դիմացից եկող մի կնոջ:*

*— Մեր կոլտնտեսականներինն են, նոր են կառուցել:*

*Կոլտնտեսության շինարարական բրիգադային մենք տեսանք երկաթբե-տոնե սյուներ դնելիս: Այնտեղ էր նաև որմնադիր Հովսեփ Ջուլհակյանը:*

*— Այս ի՞նչ եք կառուցում,— հարցրինք նրանից:*

*— Ամեն ինչ,— պատասխանեց նա: Հիմա ասեմ թե ինչու եմ այսպես պատասխանում. մի մեծ սարայ ենք կառուցում. ամռանը այն օգտագործե-լու ենք որպես հացահատիկի չորանոց, իսկ ձմռանը կոլտնտեսության բոլոր*



*մեքենաները տեղավորելու ենք այդ ծածկի տակ, որպեսզի ձյունից ու խոնա-վությունից չժանգոտվեն և չփչանան. հիմա հասկանալի եղա՞վ,— ժպտալով ասաց նա ու շարունակեց շաղախ լցնել պատի վրա:*

*Այնուհետև մեզ մոտ եկավ շինարարական բրիգադայի բրիգադիր Վահան Աբրահամյանը և մենք երկար զրուցեցինք: Նա պատմեց, որ իր ղեկավարած բրիգադան այս տարի կառուցել է 500 տոննա տարողությամբ սիլոսի 2 խրամատ և 400 խորանարդ մետր ջրատարողությամբ մեկ ջրամբար, մինչև բերքահավաքը կավարտվի այս սարայի կառուցումը, իսկ մինչև տարվա վերջը կկառուցվի ևս մեկ կովանոց, ծխախոտի մեկ չորանոց, հացի փուռ և կհիմ-նադրվի 500 տեղանոց նոր ակումբի շենքը՝ այն գալիք տարի շահագործման հանձնելու համար:*

*— Դե, մի խոսքով ասա Խնձորեսկը ջահելանում է,— վրա բերեց Հով-սեփ ապերը:*

*Տեղին ասվեց այդ խոսքը: Իրոք՝ երբեմնի անհրապույր Խնձորեսկը յոթ-նամյակի շնչով վերաշինվում, ջահելանում է:*

## ԳՅՈՒՂԻ ԿՈՒԼՏՈՒՐԱՆ ԵՎ ՄԱՐԴԿԱՆՑ ԿԵՆՑԱՂԸ

*Թվում է, թե հին Խնձորեսկում ապրող մարդիկ կուլտուրապես և կենցա-ղով շատ հետամնաց կլինեն. բայց դա միայն թվում է: Սովետական իշխա-նության կողմից աշխատավոր մարդու համար ստեղծված շատ բարիքներից հավասարապես օգտվում են նաև խնձորեսկցիները: Մտնեք պատահած կոլ-տնտեսականի տունը, ամենուրեք կտեսնեք մի քանի մահճակալներ, էլեկտ-րասարքավորումներ, ռադիոընդունիչ, լավ կահկարասիներ և այլն:*

*Գյուղում անգրագետ մարդ գրեթե չես գտնի: Ամեն մի տուն ունի իր փոքրիկ գրադարանը: Բավական է նշել, որ գյուղի բնակիչները ստանում են ավելի քան 800 օրինակ թերթ և ամսագիր: Գյուղում գործում են ակումբ, 2 գրադարան՝ շուրջ 13 հազար կտոր գրականությամբ, ստացիոնար կինո, մսն-կապարտեզ, հիվանդանոց, միջնակարգ դպրոց: Կուլտուրայի բնագավառում աշխատում է 70 մարդ, բոլորն էլ տեղացի: Նրանց մեծ մասն ունի բարձ-րագույն կրթություն: Ակումբին կից գործում են թատերական և երգի-պարի ինքնագործ խմբեր:*

*Արտելում երկար տարիներ աշխատած և այժմ ծերացած 18 կոլտնտե-սականներ, այդ թվում Ներսես Քնդածանցը, Միրզա Սայունցը, Գյուրջի Ավանյանը, ընդհանուր ժողովի որոշմամբ, որպես կենսաթոշակ, ամսական ստանում են 10-ական աշխօր, իսկ 80 կոլտնտեսականներ էլ հանրային ֆոն-դից ստանում են միանվագ օգնություն:*

## ՉՕԳՏԱԳՈՐԾՎԱԾ ՌԵԶԵՐՎՆԵՐ

*Տնտեսական ու կուլտուրական շինարարության գծով խնձորեսկցիների ձեռք բերած նվաճումները անժխտելի են: Բայց սխալ կլինի կարծել, թե այս-տեղ ռացիոնալ կարգով են օգտագործվում տնտեսության բոլոր ճյուղերի զարգացման հնարավորությունները, այլևս չօգտագործված ռեզերվներ կամ թերություններ չկան: Բնավ էլ ոչ:*

*Վերցնենք թեկուզ ծխախոտագործությունը: Ճիշտ է, անցյալ տարի կոլ-*

*տնտեսությունը գերակատարեց ծխախոտի բերքատվության առաջադրանքը, բայց չորանոցային օրինակելի տնտեսության բացակայության պատճառով պետությանը հանձնվեց ցածրորակ հումք և մրցակից Խանածախ գյուղի կոլտնտեսության համեմատությամբ ամեն մի հեկտարից պակաս ստացավ 12.500 ռուբլու եկամուտ:*

*— Մեզ մոտ զարգացման անսահման հնարավորություններ կան մեղվաբուծության համար, բայց չգիտես ինչու կոլտնտեսության վարչությունը այդ շատ եկամտաբեր ճյուղի զարգացման մասին քիչ է մտածում,— բողոքում են շատ կոլտնտեսականներ:*

*Տեղին է այս բողոքը: Կոլտնտեսությունը տարեկան հնձում է ոչ պակաս, քան 700 հեկտար կորնգան: Զոոտեխնիկական հաշվարկումների համաձայն ամեն մի հեկտարի վրա կարելի է պահել 3 մեղվաընտանիք և յուրաքանչյուրից տարեկան ստանալ 30—35 կիլոգրամ ապրանքային մեղր: Այսպիսով, արտելը կարող է առնվազն ունենալ 2000 մեղվաընտանիք: Սակայն անցյալ տարի ունեցել է ընդամենը 150 մեղվաընտանիք և ամեն մի ընտանիքից ստացել է 5,5 կիլոգրամ մեղր այն դեպքում, երբ հարևան Տեղ գյուղի կոլտնտեսությունը ստացել է 30 կիլոգրամ: Ուրեմն չօգտագործված ռեզերվ է նաև մեղվաբուծությունը, որից ստացվելիք եկամուտները կարելի է 2—3 տարվա ընթացքում հասցնել 800—900 հազար ռուբլու:*

*Արտելը լայն հնարավորություններ ունի աննախընթաց չափերով զարգացնելու նաև այգեգործությունը և ջերմապահությունը:*

*Անհանդուրժելի է նաև այն, որ այստեղ հետին պլանի վրա են մղված խոզաբուծությունը ու թռչնաբուծությունը:*

*Սրանք հարցեր են, որոնց լուծմամբ կոլտնտեսության ղեկավարությունը նոր է միայն սկսել զբաղվել, որը, անշուշտ, առաջիկայում կտա ցանկալի արդյունքներ:*

## ԿՈԼՏՆՏԵՍՈՒԹՅՈՒՆԸ ՅՈԹՆԱՄՅԱԿՈՒՄ

*Կոլտնտեսության վարչության նախագահը, թխադեմ ու կորովի երիտասարդ Հայկ Ալեքսանյանը Փրթոս եկավ «Վիլիս» ավտոմեքենայով՝ ղեկի մոտ նստած: Նկատելով մեզ, նա արագ ու աշխույժ քայլերով մոտեցավ, բարևեց ու անմիջապես դիմելով պարտկազմակերպության քարտուղար Արամ Շահզադյանին՝ հարցրեց.*

*— Տղաներին հետաքրքրող հարցերին պատասխանել ե՞ք:*

*Եվ երբ իմացավ, որ մենք բավարարված ենք ու ամեն ինչ կարգին է, հանգստացավ:*

*— Նախագահ, ի՞նչ ուրախ լուր ես բերել մեզ համար, մի բան արել ե՞ս թե ոչ,— այս ու այն կողմից անհամբերությամբ հարցրին մեր շուրջը հավաքված կոլտնտեսականները:*

*Եվ նախագահը հաղորդեց, որ Երևանից է գալիս, ուր մեկնել էր կոլտնտեսության ավտոտրանսպորտի համար պահեստամասեր, հանրային ու անհատական շինարարության համար շինանյութեր ձեռք բերելու հարցերը լուծելու նպատակով:*

*Այնուհետև նա մեզ ընդառաջեց արտելի ամառային գրասենյակը ու այնտեղ շարունակվեց մեր զրույցը կոլտնտեսության յոթնամյա պլանի շուրջը:*



*— Յոթնամյակում, թեև դժվար, բայց միանգամայն լուծելի շատ խնդիրներ պետք է իրականացնենք մենք,— իր խոսքը առաջ տարավ նախագահը: Հացահատիկային կուլտուրաների ցանքատարածությունների չափը թողնելով անփոփոխ, 4—5 ցենտներով բարձրացնելու ենք յուրաքանչյուր հեկտարի բերքատվությունը: Խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակը հասցնելու ենք 3.050-ի, որից կովերինը՝ 1.200-ի, ոչխարների գլխաքանակը՝ 15.000-ի:*

*Շարունակելու ենք անասունների ցեղի բարելավման գործը հատկապես բարձր կաթնատու, մսատու և բրդատու անասուններ ստանալու համար: Այդ ուղղությամբ արդեն այժմվանից կոնկրետ նախադրյալներ ենք ստեղծում: Առանձնացրել ենք 160 լավ երինջներ, որոնք մինչև տարվա վերջը կանցնեն կովերի շարքը: Անասունների բտման գործը լավ կազմակերպելու միջոցով, պետությանը մսի վաճառքի պլանը կկատարենք ավելի քիչ թվով անասունների հաշվին, որը մեզ հնարավորություն կտա միայն այս տարի ոչխարների գլխաքանակն ավելացնել 1000-ով: Յոթնամյակի վերջում անասնաբուծական մթերքների արտադրությունը ավելացվելու է 2—2,1 անգամ:*

*— Բացի այդ,— ոգևորված շարունակում է նա,— պլանավորել ենք, որպեսզի յոթնամյակում ստեղծենք թռչնաբուծական (10.100 թևից) և խոզաբուծական խոշոր ֆերմաներ:*

*Անասունների պահանջի համապատասխան չափով էլ ավելացնելու ենք կոշտ, հյութալի և հատիկային կերի արտադրությունը:*

*Մտադիր ենք մեղվաբուծական ֆերման հասցնել 1500 ընտանիքի: Ընդարձակելու ենք խաղողի այգիների տարածությունը: Միայն այս գարնանը արդեն տնկել ենք 3 հեկտար պտղատու այգի: Ամեն ինչ անելու ենք այգեգործության եկամտաբերությունը առնվազն 8 և ջերմապահության եկամտաբերությունը՝ 2 անգամ ավելացնելու համար: Մարդկանց աշխատանքը թեթևացնելու և նոր գյուղի շինարարության տեմպը արագացնելու համար գնելու ենք ևս 7 ավտոմեքենա, 2 կոմբայն, 3 տրակտոր, մեկ բուլդոզեր: Մեքենայացնելու ենք շինարարական և անասնաբուծական շատ աշխատանքներ:*

*— Հանրային տնտեսության առանձին ճյուղերի այդպիսի զարգացումը,— եզրափակեց իր զրույցը ընկ. Ալեքսանյանը,— հնարավորություն կտա, մթերքներից բացի, արտելի դրամական եկամուտները տարեկան հասցնել շուրջ 10 միլիոն ռուբլու և կոլտնտեսականների վաստակած աշխօրերին՝ անցյալ տարվանից երկու անգամ ավելի շատ եկամուտ բաշխել: Կոլտնտեսությունն այս տարվա ապրիլի մեկից անցել է աշխօրերի դիմաց երաշխավորված դրամական վարձատրության:*

*— Իսկ ի՞նչ պետք է կատարեք շինարարության ուղղությամբ,— հարցրինք մենք:*

*— Այդ բնագավառը պրոբլեմ է մեզ համար,— ավելի աշխուժանալով շարունակեց նա,— յոթնամյակում հիմնականում պետք է լուծենք նոր գյուղի կառուցման և հին գյուղի տեղափոխման խնդիրը: Կոլտնտեսությունը պլանավորել է յոթնամյակում հանրային շինարարության մեջ ներդնել 11 միլիոն ռուբլի: Կառուցելու ենք 500 տեղանոց ակումբ (որին կից պետք է լինի կուլտուրայի և հանգստի պարկը և ֆիզկուլտ ստադիոնը), կոլտնտեսության վարչության և գյուղսովետի շենք, մեխանիկական արհեստանոց, հյուրանոց, հիվանդանոց, բաղնիք, մանկապարտեզ, մանկամսուր և այլն:*

*Անհատական բնակարանների շինարարության գծով կոլտնտեսականները ծախսելու են 7—8 միլիոն ռուբլի։ Գործը այնպես ենք կազմակերպում, որ տարեկան 45—50 բնակարան կառուցվի այն հաշվով, որպեսզի յոթնամյակի վերջում բոլոր կոլտնտեսականները բնակվեն նոր գյուղում, նորակառույց, հարմարավետ բնակարաններում՝ շրջապատված տնամերձերում գցված նորատունկ պարտեզներով։ Մեր իսկ բոլոր ջանքերը կգործադրենք ասֆալտապատելու գյուղի կենտրոնական փողոցը, հրապարակը և մեքենայական պարկը։*

*Խորհում ենք այդ ամենի մասին, ու մի պահ թվում է, թե հնարավոր չէ դրանք 7 տարում իրականացնել։ Բայց երբ մտովի հիշում ենք խնձորեսկցիներին, փառահեղ ապագայի նկատմամբ անհուն հավատով լցված նրանց անխոնջ ու ստեղծագործական աշխատանքը, այլևս ոչ մի կասկած չի լինում և համոզվում ենք, որ նրանք կնվաճեն յոթնամյակի բարձունքները ևս։*

*Այո, կանցնեն տարիներ, կգա 1965 թվականը և Խնձորեսկի կոլտնտեսությունը կլինի տնտեսապես ու կազմակերպչորեն ավելի հզոր, իսկ Փրթոսում կառուցված նոր գյուղի փողոցները կերիզեն ծառուղիները, աղբյուրները կցայտեն հասարակական վայրերում ու բակերում, տների վրա հովանի կանեն խնձորի, տանձի և այլ բազմերանգ ու անուշահամ պտուղներով ծանրաբեռնված ծառերը։ Ամեն մի տարեց ու երիտասարդ կոլտնտեսական կանգնելով իր տան պատշգամբում, հայացքը կհառի դեպի անսահման հորիզոններն ու կասի՝ փառք քեզ Կոմունիստական պարտիա, իրոք որ դու մեզ կանգնեցրիր կոմունիզմի իսկական ճանապարհի վրա։*

Հ. ՄԱՆՎԵԼՅԱՆ

---



# ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ ՄԱՅԻՍՅԱՆ ԱՊՍՏԱՄԲՈՒԹՅԱՆ (1920 Թ.) ԲՆՈՒՅԹԻ ՄԱՍԻՆ*

## I

*Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայից հետո անդրկովկասյան կոնտրռևոլյուցիայի միացյալ ուժերին հաջողվեց Անդրկովկասը կտրել Ռուսաստանից և 1918 թ. մայիսին ստեղծել երեք ազգային-պետական միավորումներ՝ մենշևիկյան Վրաստանը, մուսավաթական Ադրբեջանը և դաշնակցական Հայաստանը։ Անդրկովկասը Սովետական Ռուսաստանից անջատելը Անդրկովկասի աշխատավորներին և մանավանդ Հայաստանի ժողովրդին պատճառեց մեծագույն դժբախտություն, վիթխարի աղետներ, արյուն, արցունք, աղքատություն, ավերմունք, սով, մասսայական հիվանդություններ և չտեսնըված մահացություն։*

*Դաշնակցական Հայաստանն արդյունաբերության տեսակետից Անդրկովկասի հետամնաց մասն էր։ Այնտեղ չկար ոչ մի շատ թե քիչ խոշոր արդյունաբերական ձեռնարկություն, չկային գործարաններ ու ֆաբրիկաներ, եթե չհաշվենք Երևանի միակ կոնյակի գործարանը, որը մինչև ռևոլյուցիան աշխատում էր գերազանցապես Ռուսաստանի շուկայի համար, իսկ դաշնակների իշխանության ժամանակ համարյա չէր աշխատում։ Ղափանի և Ալավերդու պղնձահանքերը բոլորովին լքված էին։*

*Այնպիսի կենտրոնական քաղաքներ, ինչպիսիք էին Երևանը, Ալեքսանդրոպոլը (Լենինական) ու Ղարսը և առավել ևս գավառական մանր քաղաքները սոսկ վարչական կենտրոններ էին և մանր առևտրական ու արհեստավորական կետեր։ Երկրի բնակչության $^{9}/_{10}$ մասը գտնվում էր գյուղերում և զբաղվում էր հողագործությամբ ու անասնապահությամբ։*

*Կտրվելով ռուսական և անդրկովկասյան արդյունաբերական ու առևտրական կենտրոններից՝ դաշնակցական Հայաստանի աշխատավոր ժողովուրդն ընկել էր այն մարդու դրության մեջ, որը տոպրակի մեջ պինդ կապկպված խեղդվում է։ Նորմալ ապրանքաշրջանառության բացակայության հետևանքով երկրի էկոնոմիկան սկսել էր արագորեն ընկնել։*

*Այս ամենի հետևանքով սովորական երևույթ էին դարձել անխիղճ շահագործումը, սանձարձակ սպեկուլյացիան, գողությունը, մասսայական չարաշահումները։ Աշխատավոր գյուղացիությունը չտեսնված արագությամբ քայքայվում էր, իսկ գյուղի հարուստները նույնպիսի արագությամբ ավելի ու ավելի էին հարստանում*

*Սովը և համաճարակը անխնա հնձում էին բնակչությանը։ Թույլ ու պասիվ օպոզիցիա կազմող էսեռների «Սոցիալիստ-ռևոլյուցիոներ» թերթի էջերում 1919—1920 թվականներին հաճախ տվյալներ էին բերվում քաղաքներում ու գյուղերում մահացության վիթխարի չափերի մասին։ Բժշկա-սանիտարական վարչության տվյալների համաձայն 1919 թվականին Երևանում մեռել է 15 հազար մարդ (65-70 հազարից), այսինքն՝ 20 տոկոսը, իսկ 1920 թ. հունվարին*

**) Տպագրվում է մեքենի փոխանակության կարգով.— Խմբ.։*

*նույն քաղաքում մեռել է 1291 մարդ[1]։ Գյուղերում դրությունն ավելի վատ էր. այնտեղ սովից ու մասսայական հիվանդություններից տեղի ունեցած մահացությունն ավելի էր, քան մինչդաշնակյան տիրապետության 50—60 տարիների ընթացքում։ Մեր հաշիվներով դաշնակների տիրապետության ժամանակ, այսինքն երկու և կես տարվա ընթացքում, քաղցից ու համաճարակներից մահացել է բնակչության առնվազն 25 տոկոսը։*

*1918 թվականի ամառը հայ ժողովուրդը կրեց թուրքական արյունոտ արշավանքը և թուրքերի օկուպացիոն ծանր ռեժիմը Հայաստանի տերիտորիայի մեծ մասի վրա, որ և պատճառ դարձավ մասսայական գաղթի, կոտորածների, կողոպուտի ու ավերումների։ Նույն տարվա դեկտեմբերին դաշնակներն ու մենշևիկները դարերով կողք-կողքի հաշտ ու խաղաղ ապրած հայ և վրացի ժողովուրդներին կռվի հանեցին իրար դեմ վիճելի Լոռվա գավառի համար, որն այդ պատերազմի հետևանքով Անտանտի տերությունների գործակալների կամքով դարձավ «չեզոք գոտի»։ Հայաստանի և մուսավաթական Ադրբեջանի սահմանագլխին տեղի ունեցող հաճախակի ընդհարումները, կոտորածներն ու կողոպուտը երկրում լարված ու ջղային վիճակ էին ստեղծել։*

*Գյուղի ու քաղաքի աշխատավոր մասսաները ծայրահեղ դառն փորձից սկսել էին հասկանալ ու համոզվել, որ դաշնակներն իրենց փակուղու, ծուղակի մեջ են գցել, և որ փրկությունը միայն անդրկովկասյան ռեսպուբլիկաների սովետականացումն է և ռուս մեծ ժողովրդի ու մյուս սովետական ժողովուրդների հետ դաշնակցելը։*

*Այս էր Հայաստանում սովետական ռևոլյուցիոն շարժումների գլխավոր պատճառը, որովհետև դա էր ժողովրդի փրկության միակ ուղին, ստեղծված սոսկալի փակուղուց դուրս գալու միակ ելքը, քանի որ մյուս բոլոր ճանապարհները փորձվել էին և դուրս եկել միանգամայն անհուսալի։ Ո՛չ ամերիկյան, ո՛չ անգլիական դիվանագիտությունը, և ո՛չ էլ որևէ մեկ ուրիշը ոչ փրկություն բերին, ոչ դրության մեղմացում, այլ միայն սաստկացրին ավերածությունը, աղքատությունը, սովը և մահացությունը։*

*Դրա հետ միասին դաշնակցական Հայաստանը դարձել էր անիրավության, կամայականության և անիշխանության, վայրագ վարչարարության երկիր։ Կուլակները, չարչիները, սպեկուլյանտները, խմբապետները, մաուզերիստները, չինովնիկները մեծից մինչև փոքր, տերտերները, ամեն տեսակ ճարպիկ ու խարդախ մարդիկ, բոլորը, ովքեր կարող էին, օգտվելով ստեղծված տնտեսական ծանր վիճակից, կատաղի սպեկուլյացիայով էին զբաղվում, կողոպտում, գողանում, չարաշահում էին իրենց դիրքերը, որով ավելի ու ավելի էին սաստկացնում ու խորացնում երկրի տնտեսական քայքայումը։*

*Հայաստանի աշխատավոր մասսաներն ակնկալում էին աշխատանքի խաղաղ պայմաններ, օրինականություն, արդարություն։ Բայց քաղաքական ի՞նչ ուժ երկրի ներսում կարող էր վերջ տալ անիշխանությանը և կարգ ու կանոն հաստատել։ Աշխատավոր ժողովուրդն այս հարցում ի՞նչ ուժի վրա կարող էր հույս դնել։ Եթե չհաշվենք քաղաքական մանր խմբերը (կադետներ, սպեցիֆիկներ), որոնք ոչ մի դեր չէին խաղում, ապա Հայաստանում բացի դաշնակներից կային էլի երկու թույլ լեգալ պարտիաներ՝ էսեռներն ու մենշևիկները, որոնք պառլամենտում ներկայացված էին օպոզիցիոն փոքրիկ խմբերով։ Բայց այդ պարտիաներն էլ երկրում քաղաքական լուրջ դեր չէին խաղում։ Միմիայն մեր պարտիան, ընդհատակյա բոլշևիկյան կազմակերպությունն էր, որ համարձակորեն և անձնվիրաբար պայքարում էր դաշնակների դեմ, մերկացնում նրանց ժողովրդական մասսաների առաջ և ցույց տալիս դաշնակների ստեղծած փակուղուց դուրս գալու միակ ուղիղ ճանապարհը։*

*Այսպիսով, բոլշևիկյան կազմակերպությունը Հայաստանում միակ քաղաքական ուժն էր, որը կարող էր վերջ դնել մաուզերիստական ռեժիմին, երկրում կարգ ու կանոն հաստատել և վճռական հարված հասցնել սանձա-*

[1] *«Սոցիալիստ հեղափոխական», 1920 թ. փետրվարի 17։*



*զերծված կուլակներին ու սպեկուլյանտներին և նրանց հովանավորող դաշնակներին։*

*Այս էր ժամանակի պատմական առանձնահատկությունը և քաղաքական յուրահատկությունը։*

*Ահա թե ինչու և ինչպես Հայաստանի աշխատավորները կոմունիստների ղեկավարությամբ առաջին անգամ 1920 թվականի մայիսին զենքը ձեռքներին ոտքի ելան դաշնակների իշխանության դեմ, սովետական իշխանություն հաստատելու համար։*

## II

*Համառոտակի պատմենք, թե ինչպես եղավ այդ և ինչով վերջացավ։*

*ՌԿ(բ)Պ Հայաստանի ընդհատակյա կոմիտեի (Արմենկոմ) որոշմամբ 1920 թվականի մայիսի 1-ին գլխավորապես Երևան և Ալեքսանդրոպոլ քաղաքներում բոլշևիկյան ընդհատակի պայմաններում տեղի ունեցան քաղաքական խոշոր մասսայական ցույցեր։ Այդ երկու քաղաքներում էլ աշխատավոր մասսաների մեծամասնությունը գնաց կոմունիստների ետևից, ցուցաբերելով ռևոլյուցիոն մեծ ակտիվություն։ Երևանում ցույցը խաղաղ վերջացավ և զինված ապստամբության չփոխվեց։ Բայց ցույցից հետո դաշնակները ջախջախեցին Երևանի բոլշևիկյան կազմակերպությունը, շատ կոմունիստներ ձերբակալվեցին։*

*Այլ կերպ դասավորվեց Ալեքսանդրոպոլում։ Այնտեղ գործը բարդացավ և հասավ ապստամբության։ Մայիսի 1-ի առավոտյան ցույցն սկսեցին երկաթուղային դեպոյի և կայարանի երկաթուղային բանվորները։ Քաղաքում նրանց միացան մանր ձեռնարկությունների աշխատավոր մասսաները (խոշոր ձեռնարկություններ այն ժամանակ Ալեքսանդրոպոլում չկային)։ Կայազորի զինվորները ցույցի մասին իմանալով, հակառակ իրենց հրամանատարների կամքի, փախան զորանոցներից և միացան ցուցարարներին։ Դաշնակներն աշխատում էին մասսաներին իրենց կողմը քաշել, բայց այդ չհաջողվեց, նրանց ետևից հարյուրներ էին գնում, բոլշևիկների ետևից՝ հազարներ։ Կոմունիստների հաղթանակը լիակատար էր, մասսաների տրամադրությունը՝ ռևոլյուցիոն, մանավանդ Ադրբեջանում Սովետական իշխանություն հռչակվելուց հետո (1920 թ. ապրիլի 28) և դրա ազդեցության տակ։ Ցուցարարների լոզունգներն էին՝ «Կեցցե Սովետական Հայաստանը», «Կորչի դաշնակցական կառավարությունը»։ Սրանք արդեն խաղաղ ցույցի լոզունգներ չէին, այլ՝ ապստամբության։ Իրականապես մասսաները պահանջում էին երկրում սովետական իշխանություն հաստատել։*

*Դաշնակները հալածում են կոմունիստներին, նրանք ցանկանում են ջախջախել Ալեքսանդրոպոլի կոմունիստական կազմակերպությունը և գլխատել ռևոլյուցիոն մասսան։ Նրանք փորձում են կոմունիստներին ձերբակալել։ Վերջիններս ապաստան են գտնում զրահագնացքում, որի հրամանատարն էր կոմունիստ Մուսայելյանը։*

*1920 թ. հունիսի 1-ին Մուսայելյանն արդեն բանտից երկրային կոմիտեին ուղղած իր զեկուցման մեջ գրում է. «Հայաստանում իշխանությունը ձեռք ձգելու հարցը հերթի դրվեց մայիսի 1-ից հետո»։ Եվ ապա՝ «Մայիսի 1-ից հետո հետապնդվող կոմունիստներն անցան իմ զրահապատ գնացքի մեջ»[1]։*

*Մայիսի 3-ին Մուսայելյանը դաշնակցական բանակի գլխավոր շտաբից հրաման է ստանում զրահագնացքի գլուխն անցած գնալ Երևան։ Մուսայելյանը հրաժարվում է հրամանը կատարել։*

*Սկսած մայիսի 3-ից Ալեքսանդրոպոլի բոլշևիկյան կազմակերպության գլխավոր ղեկավար և Արմենկոմի անդամ Ավիս Նուրիջանյանը սկսում է Արմենկոմից սանկցիա պահանջել իշխանությունը գրավելու համար։*

[1] *«Մայիսյան ապստամբությունը Հայաստանում», 1930 թ.։ Հուշերի, փաստաթղթերի ժողովածու, էջ 172։*

Արմենկոմը մայիսմեկյան ցույցից հետո համոզվելով, որ Հայաստանում ապստամբությունն անխուսափելի է, համաձայնել էր Դիլիջանի գավկոմի առաջարկին և որոշում էր ընդունել զինված ելույթն սկսել Ղազախից (Դիլիջանի գավառ)։ 1920 թ. մայիսի 28-ին ՌԿ(բ)Պ Արմենկոմը խոր ու դաժան ընդհատակից (Երևանից) ՌԿ(բ)Պ ԿԿ Երկրկոմին ուղղած իր զեկուցման[1] մեջ գրում է.

«Շարժման սկզբի համար իբրև բազա նշանակված էր Ղազախը և դրա հետ միաժամանակ ելույթները պետք է սկսեին ամենուրեք։ Արմենկոմը կանգնեց հենց այդ տեսակետի վրա, որովհետև նախ Ղազախը կպած էր Խորհրդային Ադրբեջանին, իսկ մյուս կողմից նկատի ունենալով ղազախեցիների հեղափոխականությունն ու տոկունությունը»։

Եվ այնուհետև.

«Ալեքսանդրոպոլի բոլշևիկները չցանկացան հաշվի առնել այդ։ «Ինչո՞ւ Ղազախը, և ոչ թե Ալեքպոլը», ահա նրանց պատասխանը — «մենք նույնիսկ հակառակ ենք սկզբից կապ հաստատելուն»[2]։

Այդ զեկուցման մեջ ի միջի այլոց ասված է հետևյալը. «մայիսի 8-ին այն զինվորականներին, որոնց հետ կապ էինք հաստատել (Արմենկոմը— Շ. Ա.), մեր կողմից շեշտակի հարց դրվեց,— կարելի՞ է արդյոք այստեղ (Երևանում—Շ. Ա.) հենց հիմա ելույթ ունենալ։ Այդ հարցին նրանք պատասխանեցին, որ այժմս այդ հնարավորությունը չկա, որ զորամասերում տատանումներ կա, որ դեռ պետք է աշխատել»[3]։

Ալեքսանդրոպոլի պարտիական կազմակերպության ղեկավարների ճնշման տակ Արմենկոմը, ի փոփոխումն ապստամբությունը Ղազախից սկսելու մասին ընդունած իր որոշման, որոշում է՝ Դ. Տեր-Սիմոնյանին և Ա. Մելքոնյանին որպես լիազոր ներկայացուցիչներ գործուղել Ալեքսանդրոպոլ՝ դրությանը ծանոթանալու և տեղում վճիռ ընդունելու։ Բայց արդեն որոշելու բան չկար։ Հիշյալ ընկերները Ալեքսանդրոպոլ հասնելով կանգնում են կատարված փաստի առաջ, ապստամբությունը փաստորեն մայիսի 1-ին սկսել էին Մուսայելյանի զրահագնացքն ու բանվորները, հռչակելով հետևյալ լոզունգները. Կեցցե Սովետական Հայաստանը։ Կորչի դաշնակցական կառավարությունը։

Մայիսի 7-ին ստեղծվեց Հայաստանի ռևկոմ, որի կազմի մեջ մտան Ալեքսանդրոպոլի պարտիական կազմակերպության ղեկավարները և Արմենկոմի վերոհիշյալ երկու ներկայացուցիչները։ Ռևկոմը գլխավորում էր Ավիս Նուրիջանյանը, զինվորական ղեկավար նշանակվել էր ռևկոմի անդամ Մուսայելյանը։

Մայիսի 10-ին ռևկոմը հռչակեց Սովետական իշխանություն Հայաստանում։ Քաղաքին ինչպես հարկն է տիրելու համար, կարևոր կետերում՝ հիմնարկություններում, պահեստներում, բանկում, բանտում և այլ տեղեր պահակախմբեր կանգնեցնելու համար, միաժամանակ դաշնակների դեմ զինվորական բռունցք դուրս բերելու համար բանվորական փոքրիկ ջոկատի և զրահագնացքի ուժերը բոլորովին քիչ էին։ Իսկ զորքերն սպասում էին բանվորաների հաղթանակին, որպեսզի անցնեն նրանց կողմը։ Երկրային կոմիտեին ուղղված վերոհիշյալ զեկուցման մեջ Մուսայելյանը գրել է. «Ամենուրեք պահանջվում էր իմ ներկայությունը, իսկ Ալեքսանդրոպոլը թողնել ինձ— թույլ չէին տալիս»։ Եվ այնուհետև. «Ես պահպանում եմ կապը զորքերի հետ։ Նրանք մեր կողմն են, պետք է միայն ջախջախել առաջավոր խումբը (դաշնակցական— Շ. Ա.), որ կազմված է գաղթականներից և մաուզերիստներից, և ապա կարելի է առանց ընդդիմադրության, հանդիսավոր քայլերով առաջ գնալ, քանի որ զորքերը մեր կողմը կանցնեն»[4]։

---

[1] Այդ զեկուցումը գրել է Արմենկոմի անդամ Ալավերդյանը, որն այն ժամանակ թաքնըված էր ընդհատակում, հունիս ամսին դաշնակները նրան ձերբակալեցին և գնդակահարեցին։

[2] Հուշերի և փաստաթղթերի վերոհիշյալ ժողովածուի էջ 147—149։

[3] Նույն տեղը, էջ 152։

[4] Նույն տեղը, էջ 174 և 176։



Զինվորներին ռևոլյուցիոն մարտի մեջ քաշել կարող էին միայն բոլշևիկյան ավանգարդն ու ղեկավարները։ Բայց զինվորական մասսաներն իրենց պարտիական կազմակերպությունները, իրենց իսկական ղեկավարները չունեին։

Ռևկոմն այնպես էլ մինչև վերջ դուրս չեկավ զրահագնացքից, քաղաքում նրա համար շատ թե քիչ անվտանգ տեղ չճարվեց։ 100-150 մարդուց շտապ ստեղծված բանվորական գվարդիան, որ անփորձ էր ու զինվորական գործին անվարժ, հերոսական ջանքեր գործադրեց քաղաքում ռևոլյուցիոն կարգ հաստատելու համար, պարենամթերքի պահեստների կողոպուտի դեմ, պրովոկատորների, տեռորիստների, դիվերսանտների և այլոց դեմ պայքարելու ուղղությամբ։ Գյուղը ժամանակին օգնության չհասավ բանվորներին, որովհետև այնտեղ էլ պարտիական բջիջների, ղեկավար կազմակերպիչների բացակայության պատճառով տատանումներ կային։ Բացառություն էին կազմում Քավթառլու գյուղը և այդ շրջանի մի քանի գյուղեր, որտեղ պարտիական բջիջներ կային։ Բայց քաղաքն այդ շրջանից ռազմական օգնություն չստացավ։ Դաշնակներն այնտեղ ավելի առաջ էին գործի դրել պրովոկացիան և զենքը։

Դաշնակներն իմանալով զորքի տրամադրությունը, Ալեքսանդրոպոլի ապստամբությունը ճնշելու համար կանոնավոր զորամասերի օգնությանը չըդիմեցին։ Նրանք մի ջոկատ կազմակերպեցին մաուզերիստներից և Թուրքահայաստանից գաղթած հայերից (մոտ 1000 մարդ)։ Այդ ջոկատը դաշնակ խմբապետ Սեպուհի հրամանատարությամբ ամսի 10-ին մոտեցավ Ալեքսանդրոպոլին։ Դաշնակները գյուղերում ևս կուլակության վրա հենվելով կազմակերպել էին զինված ջոկատներ, քաղաքում գործի էին դրել տեռորիստներին, որոնք, մասնավորապես, սպանեցին կայազորի պետ գեներալ Խաչատուրովին, որը համակրում էր ռևոլյուցիային, և դա ավելի ուժեղացրեց տատանումները զորքերի, մանավանդ սպայության մեջ։

Ռևկոմը կապվել կարողացավ միայն Ղարսի պարտիական կազմակերպության հետ, բայց ապստամբության ընթացքում այդ կապն էլ կանոնավոր պահել չկարողացավ։ Ղարսի կոմունիստներին ցուցում էր տրվել ապստամբել և իշխանությունը գրավել, խոստանալով զրահագնացքը և փորձված մարդիկ ուղարկել օգնության։

Մայիսի 9-ին Ղարսում հայտարարվեց Սովետական իշխանություն։ Զորքերի մեջ և գյուղերում տատանումներ էին նկատվում։ Պրոֆեսիոնալ ռևոլյուցիոներ և Ղարսի ռևկոմի անդամ Ա. Նազարյանը պարտիայի Երկրկոմին ուղղած իր զեկուցագրում ասում է. «Կարսի կայազորը բաղկացած էր մոտավորապես 800 սվիններից (հոգուց), որոնցից 400-ից ավելին իրենց պատրաստակամությունն էին հայտնել հակահեղափոխական կառավարության դեմ ելնել, մնացյալները չեզոք էին, հայտարարելով, որ նրանք իրենց հայերի դեմ չեն գնա և կմիանան հաղթողներին»։ Եվ այնուհետև. «...դաշնակցականները կազմակերպել էին գյուղացիներից մեծաքանակ խմբեր, որպիսին նրանց դյուրությամբ էր հաջողվում, ի նկատի ունենալով, որ գյուղացիք բոլորովին պատրաստված չէին դեպքերին։ Նրանք կաշառքի միջոցով իրենց կողմը գրավեցին Պահակային բատալիոնը, ապստամբ զինվորներից շատերին մոլորության մեջ ձգեցին»[1]։

Հակառակ Հայաստանի ռևկոմի խոստումներին, ո՛չ զրահագնացքը, ո՛չ էլ որևէ մեկը Ղարս չգնաց ապստամբներին օգնության։ Այս ամենի հետևանքով դաշնակներին հաջողվեց 1920 թ. մայիսի 13-ին Ղարսում ճնշել ապստամբությունը։

Մինչ այդ դաշնակյան հարվածային ջոկատի հրամանատար Սեպուհը Ռևկոմին և Մուսայելյանին ուլտիմատիվ պահանջ ներկայացրեց անձնատուր լինել, հանձնել քաղաքը և զրահագնացքում եղած կոմունիստներին։

Մայիսի 13-ին զրահագնացքում ռևկոմը նիստ ունեցավ պարտիական

---

[1] Վերոհիշյալ ժողովածուի էջ 177 և 179։

կազմակերպությունների ներկայացուցիչների հետ միասին։ Ահա թե ինչ է գրում ապստամբության մասնակից (Ալեքսանդրոպոլի ընդհատակյա քաղկոմի անդամ) Թ. Մանդալյանը ռևկոմի այդ ընդլայնած նիստի մասին։

«Այստեղ երևան եկավ կուսակցության ներսում վաղուց գոյություն ունեցող երկու հոսանքները. մի քանիսը անսպասելի կերպով հայտնեցին, որ իրենք դեմ են եղել ապստամբությանը, համարել են այն վաղաժամ և այժմ էլ պնդում են, որ իշխանությունը հանձնվի դաշնակցականներին։ Կային և այնպիսիները, որոնք ավելի հեռու էին գնում, պահանջելով կոալիցիոն կառավարություն ստեղծել դաշնակցականների հետ, որոշ քաղաքական զիջումներ անելով։ Ուրիշներն առաջարկում էին կոալիցիայի մտնել մենշևիկների և էսերների հետ, կարծելով, որ այդպիսով հնարավոր կլինի վախեցնել դաշնակցությանը։ Մյուս կողմից Ալեքպոլի կոմիտեի մի շարք ներկայացուցիչները և երկաթուղագծի աշխատողները, մերկացնելով այդ ընկերների ելույթների մենշևիկական էությունը, պնդում էինք և պահանջում վճռական քայլի դիմել։ Հեղկոմը պետք է թողներ իր տարտամությունը և լուսադեմին հարձակվեր դաշնակցական բանակի վրա։ Կապիտուլյանտներն ուժեղ փոքրամասնություն էին կազմում, բայց անցավ մեր բանաձևը»[1]։

Ռևկոմի անդամ Ա. Գոգունցը մայիսի 13-ին զրահագնացքում տեղի ունեցած ռևկոմի նեղ նիստի մասին գրում է. «...երեկոյան ժամը 10-ին բացվեց Ռ. Հ. Կ. նիստը, որտեղ նույնպես դրված էր այդ նույն խնդիրը։ Երկար վիճաբանությունից և մտքերի փոխանակությունից հետո, որը տևեց մինչև գիշերվա ժամը մեկը, կռիվը շարունակելու հարցը դրվեց քվեարկության — 3 հոգի քվեարկեցին կռիվը շարունակելու կողմ, երեքը՝ հանձնվելու, որպեսզի արյուն չթափվի, իսկ մեկը՝ Մուսայելյանը ձեռնպահ մնաց։

Նիստը վերջանալուց հետո մենք ցրվեցինք, ով որտեղ ցանկացավ»[2]։

Մայիսի 14-ին Սեպուհի ջոկատը առանց դիմադրության մտավ քաղաք։ Դաշնակներն սկսեցին ջախջախել պարտիական ու բանվորական կազմակերպությունները, որսալ կոմունիստներին ու բանվորներին, դատել, գնդակահարել և այլն։ Ղարսից և Ալեքսանդրոպոլից հետո մայիս ամսի ընթացքում ապստամբությունները ճնշվեցին նաև Սարիղամիշում, Նոր-Բայազետի և Զանգեզուրի գավառներում։ Հարյուրավոր կոմունիստներ բանտերը նետվեցին, նրանցից շատերը (Ալավերդյան, Մուսայելյան, Սարուխանյան, Ղարիբջանյան, Սևոյան, Փանյան, Մկրտումյան, Հակոբջանով, Հարությունով և շատ ուրիշներ) գնդակահարվեցին։

Ղազախում (Դիլիջանի գավառ) ապստամբները հենվելով սովետական Թիֆլիսի (Ադրբեջան) և Կարմիր Բանակի հետ ունեցած կապի վրա, մեկ ու կես ամիս պարտիզանական համառ կռիվներ էին մղում դաշնակների դեմ։ Ղազախի ապստամբների առավել ընտիր ու առաջավոր մասն առանց զենքը ցած դնելու նահանջեց Սովետական Ադրբեջան և կազմակերպվեց որպես հայկական հատուկ ապստամբական գունդ, որը Հայաստանում սովետական իշխանություն հաստատելու համար մղված հետագա մարտերում նշանակալից դեր խաղաց։

## III

Ինչպե՞ս հասկանալ ու բնութագրել մայիսյան ապստամբությունը, նրա ծագման ու պարտության պատճառները։

Սկզբնական շրջանում, մինչև 30-ական թվականները, Հայաստանի որոշ պատմաբաններ ու գրականագետներ այդ հարցին մոտենալով աջ դիրքերից (Հովհ. Դուրգարյան և ուրիշներ) փորձ էին անում շատ թե քիչ քողարկված ձևով մայիսյան ապստամբությունը գնահատել որպես ավանտյուրա, ենթադրելով, թե պրոլետարական ռևոլյուցիա չէր կարող լինել այնտեղ, որտեղ արդյունաբերական պրոլետարիատ չկար կամ թե համարյա չկար[1]։

[1] Վերը նշված ժողովածուի էջ 59—60։

[2] Նույն տեղը, էջ 49։



Անդրկովկասյան Երկրային կոմիտեն և Հայաստանի Կոմունիստական պարտիան վճռական հակահարված տվին այդ փորձերին և մայիսյան ապստամբությունը ճանաչեցին որպես իսկական ժողովրդական մասսայական ապստամբություն։

1929—1930 թվականներին առանձին պատմաբաններ ու գրականագետներ (Թ. Մանդալյան և ուրիշներ) մայիսյան ապստամբության գնահատման գործում հանդես եկան հակադիր «ձախ» տեսակետից։ Ըստ այդ կոնցեպցիայի՝ մայիսյան ապստամբությունը հիմնականում գնահատվում էր որպես ինքնուրույն պրոլետարական ռևոլյուցիա, հայկական բանվոր դասակարգի հեգեմոնիայի ներքո, որքան էլ վերջինս սակավաթիվ լիներ։ Դրա հետ միասին, իհարկե, չէր ժխտվում Հոկտեմբերյան Մեծ ռևոլյուցիայի ազդեցությունը։ Իսկ ապստամբության պարտությունը բացատրվում էր պարզապես ապստամբության ղեկավարների բնավորությամբ։

Դրանից հետո հայ պատմագրության մեջ միառժամանակ տիրապետող դարձավ մի շարք պատմաբանների (Հ. Էլչիբեկյան և ուրիշներ) այն տեսակետը, թե մայիսյան ապստամբության ղեկավարների մեջ եղել են կոնտրռևոլյուցիոն տարրեր, որոնց դավաճանական գործունեությունը (Արմենկոմի և Հայաստանի ռևկոմի մյուս սխալների հետ միասին) որպես թե «փոքր դեր չեն խաղացել ապստամբության պարտության գործում»[2]։

ՍՄԿԿ XX համագումարից հետո այդ տեսակետը վերացավ. ապստամբության ղեկավարները ռեաբիլիտացիայի ենթարկվեցին, այդ պնդումների անհիմն ասությունն ակներև դարձավ։

Վերջապես վերջին տարիներս պատմագրության մեջ առանց տեսական ընդհանրացումների և առանց լուրջ վերլուծության լայնորեն տարածվում է մի տեսակետ, որը գտնում է, թե 1920 թ. մայիսին Հայաստանում բարենպաստ պայմաններ կային, որպեսզի բոլշևիկները գրավեին իշխանությունը, թե դրա համար ամեն ինչ արված էր, ուժերը բավարար էին, բայց վճռական պոպեին ապստամբության ղեկավարներին պակասեց վճռականությունն ու համարձակությունը։

Այս կոնցեպցիան իր առավել լրիվ արտահայտությունն է գտել պատմական գիտությունների դոկտոր Գ. Բ. Ղարիբջանյանի ծավալուն մենագրության մեջ[3]։

Գ. Բ. Ղարիբջանյանն իր այդ աշխատության մեջ գրում է.

«1920 թ. փետրվար-ապրիլին Հայաստանի կոմունիստները պատրաստվում էին մայիսմեկյան տոնին և զինված ապստամբության դաշնակցության դեմ»[4]։

Այնինչ, ընթերցողին արդեն ծանոթ Թ. Մանդալյանն իր հուշերում գրում է. «Ոչ մի կուսակցական մարմին դեռևս չէր որոշել հեղաշրջում կատարել, սակայն այդ հեղաշրջումն արդեն տարերայնորեն կատարվում էր»։ Եվ քիչ հետո՝ «Այդ անորոշ դրությունը տևեց մինչև մայիսի 5-ը»[5]։

ՌՍԴ(բ)Պ Կենտկոմի 1917 թվականի հոկտեմբերի 10 (23)-ի նիստի արձանագրության մեջ նշված է. «Լենինը մատնանշում է, որ սեպտեմբերի սկզբից նկատվում է ինչ-որ անտարբերություն դեպի ապստամբության հարցը։ Մինչդեռ այդ անթույլատրելի է, եթե մենք լրջորեն ենք դնում իշխանության Սովետների կողմից գրավելու լոզունգը։ Այդ պատճառով արդեն վաղուց պետք էր ուշադրություն դարձնել հարցի տեխնիկական կողմի վրա»[6]։

[1] «Կոմունիստ» ամսագիր (հայերեն), Երևան, 1928 թ., № 9—10։

[2] Հ. Էլչիբեկյան — «Սովետական իշխանության հաստատումը Հայաստանում» (ռուսերեն), Երևան, 1954 թ., էջ 95։

[3] Г. Б. Гарибджанян — „Коммунистические организации Армении в борьбе за победу Советской власти в Армении", изд. 1957 г., 352 стр.

[4] Նույն տեղը, էջ 224։

[5] Վերը նշված ժողովածուի էջ 53։

[6] Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 26, էջ 222։

Եվ այնուհետև.

«Այսպիսով՝ քաղաքական իրադրությունը պատրաստ է։ Պետք է խոսել տեխնիկական կողմի մասին։ Այստեղ է ամբողջ գործը» [1]։

Արմենկոմը և ՌԿ(բ)Պ Ալեքսանդրոպոլի կոմիտեն ապստամբության կազմակերպական-տեխնիկական նախապատրաստության ուղղությամբ փաստորեն համարյա ոչինչ չէին արել ընդհուպ մինչև մայիսմեկյան խաղաղ ցույցը, որը, հակառակ ղեկավարների կամքի ու սպասածի, մայիսի սկզբներին Ալեքսանդրոպոլում տարերայնորեն, առանց նախապատրաստության վերածվեց ապստամբության և ջախջախվեց, այսինքն տեղի ունեցավ այն, ինչ չէին թույլատրել բոլշևիկյան պարտիայի Կենտկոմն ու Լենինը 1917 թվականի հուլիսի 3-4-ին Պետրոգրադում։

Մինչև 1920 թ. մայիսի 2-ը ո՛չ Ալեքսանդրոպոլի կոմիտեն, ո՛չ Արմենկոմը չէին մտածում ապստամբության պրակտիկ կազմակերպման մասին, մինչ այդ նրանք զբաղվում էին Սովետական իշխանության համար ընդհանուր ագիտացիա մղելով, հակառակ հունվարյան կոնֆերենցիայի բանաձևի [2]։

Հայաստանի կոմունիստական կազմակերպությունների հունվարյան կոնֆերանսի բանաձևում ասված է. «Քաղաքացիական պատերազմը Հայաստանի տիրապետող դասակարգերի դեմ այնպես, ինչպես Վրաստանում և Ադրբեջանում, և նրանց կազմակերպած «դաշնակցական» կառավարության դեմ, դաշնակցական իշխանության բռնի, ռևոլյուցիոն տապալումը Հայաստանի կոմունիստական կազմակերպությունների առաջնակարգ խնդիրն է» [3]։

Պատմաբան Ղարիբջանյանի այն պնդումը, թե Հայաստանի կոմունիստները փետրվար-ապրիլին զինված ապստամբության էին պատրաստվում, բստ երևույթին հիմնված է հունվարյան կոնֆերանսի բանաձևի վերոհիշյալ տողերի վրա։ Եվ իրոք, վերոհիշյալ մեջբերումից կարծես բխում է, թե Հայաստանի կոմունիստները պետք է, նույնիսկ պարտավոր էին ապստամբության պատրաստվել և մասսաներին էլ պատրաստել։ Բայց մյուս կողմից, ինչպես մենք վերը ցույց տվինք փաստաթղթերի ու փաստերի հիման վրա, ո՛չ Արմենկոմը, ո՛չ էլ Ալեքսանդրոպոլի կոմիտեն մինչև մայիսի 1-ը չէին զբաղվում ապստամբության գործնական կազմակերպումով, որը բոնկեց նրանց համար էլ անսպասելի։

Նախ, ինչպես արդեն վերն ասացինք, 1920 թ. հունվարյան կոնֆերանսում ընտրված Արմեկոմն իր մեծամասնությամբ, Կասյանի գլխավորությամբ ժխտում էր, թե կոնֆերանսն ընդունել է հիշյալ բանաձևը, և երկրորդ, իր քաղաքական ու պրակտիկ գործունեության ընթացքում ղեկավարվում էր ուրիշ տեսակետով, որի մասին կխոսենք ստորև։ Բայց այդ բանաձևն արտացոլում էր Ալեքսանդրոպոլի կոմիտեի մեծամասնության տեսակետը։ Ուրեմն այդ դեպքում ինչո՞ւ Ալեքսանդրոպոլում ապստամբությունը նախապատրաստված չէր։

Եթե վերլուծելու լինենք այն բանաձևը, որի մասին խոսվում է այստեղ, ապա դժվար չի լինի հասկանալ, որ քաղաքացիական պատերազմի և դաշնակների իշխանության բռնի, ռևոլյուցիոն ճանապարհով տապալման մասին խոսելով որպես առաջնակարգ խնդիր, բանաձևի հեղինակներն այդ հասկացել են ո՛չ որպես առաջիկա գործնական խնդիր, որ բխում է երկրի ներքին դրության վերլուծությունից (այնտեղ այդպիսի վերլուծություն չկա) և գյուղացիության տրամադրության հաշվառումից (նրանք այդ բավարար չափով հաշվի չէին առնում), մինչդեռ գյուղացիությունը կազմում էր բնակչության մոտ

1 Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 26 էջ 223։

2 1922 թ. Արմենկոմի անդամ Կասյանը գրավոր ու բանավոր հանդես էր գալիս, հայտարարելով, որ Ալեքսանդրոպոլի բոլշևիկների առաջարկած հետևյալ բանաձևը հունվարյան ընդհանուր կոնֆերանսը չընդունեց (տես «Նոր աշխարհ» ամսագրի № 2, 1922 թ., էջ 3—18)։

3 Հայաստանի Կ(բ)Պ Կենտկոմի տեղեկագիր, № 1, 1922 թ., էջ 5։



90 տոկոսը, այլ ընդունում էին որպես ընդհանուր դրույթ, որպես հեռանկարային բնույթի հեռավոր խնդիր։

Այնուհետև բանաձևում ասված է, որ «ՌԿՊ Հայաստանում պետք է պատրաստ լինի, որպեսզի Արևելքում ընդհանուր ապստամբության պահին տապալի «դաշնակցության» իշխանությունը...» [1]։

Այնուհետև այդ բանաձևում նշվում է, որ դրա համար անհրաժեշտ է «դաշնակցությանը» դուրս մղել «պրոֆ. կազմակերպություններից...», «գյուղացիներին մերձեցնել բանվորներին, անզոր գյուղացիության մեջ պրոլետարական տեսակետ պատվաստել...», իսկ բանակի մասին՝ «տիրապետող պարտիայի վերջին հույսը լինելու է բանակը, բայց նրա համակրանքի նվաճումը և նրան կոմունիստական կազմակերպությունների մեջ ներգրավելը լինելու է պրոլետարիատի ինքնակազմակերպման ավարտումը» [2]։

Ալեքսանդրոպոլի կազմակերպության ղեկավար ընկերները Ավիս Նուրիջանյանի գլխավորությամբ իրենց խնդիրները պատկերացնում էին այսպես, ո՛չ թե դիալեկտիկորեն, այլ միամիտ, սխեմատիկորեն։ Հավատարիմ մնալով վերոհիշյալ սկզբունքներին՝ նրանք մինչև 1920 թվականի մայիսը իրենց համարյա ամբողջ աշխատանքը կենտրոնացրել էին բանվորների շրջանում և մեծ հաջողությունների էին հասել, որի համար նրանց պետք է պատշաճ հարգանք մատուցել։

Եթե իրոք կոմունիստները պատրաստվում էին ապստամբության և ապստամբության ժամանակ (ինչպես պատմաբան Ղարիբջանյանը գրում է իր աշխատության 248—249 էջերում) ռազմական ու բարոյական գերակշռություն ունեին թշնամու նկատմամբ, ապա ինչո՞ւ ապստամբությունը պարտություն կրեց։

Սրա մասին Գ. Բ. Ղարիբջանյանը գրում է.

«Այդ պայմաններում հարկավոր էր ցուցաբերել ճկունություն ու վճռականություն, ավելի համարձակ ղեկավարել մասսաների հերոսական պայքարը։ Սակայն Արմենկոմը և Հայաստանի Ռազմա-ռևոլյուցիոն կոմիտեն քաղաքական և ռազմա-ստրատեգիական լուրջ սխալներ թույլ տվին։ Նրանք չկարողացան ամուր կապ ստեղծել տեղերի հետ, միավորել Հայաստանի տարբեր շրջանների ապստամբած ուժերը, ցուցաբերեցին անվճռականություն և անթույլատրելի բարեհոգություն թշնամիների նկատմամբ։ Վճռական րոպեին երևան եկավ ճիշտ և բավականին փորձված ղեկավարության բացակայությունը» [3]։

Այնուհետև հեղինակը հայտարարում է, թե Արմենկոմը և Ռևկոմը չկարողացան կիրառել ապստամբության վերաբերյալ մարքսիստական-լենինյան ուսմունքի հիմնական կանոնները և մեջբերում է այդ կանոնները [4]։

ՌԿ(բ)Պ Ալեքսանդրոպոլի կոմիտեն ընդհատակի ծանր պայմաններում խոշոր, համարձակ ու անձնվեր աշխատանք էր կատարում։ Էլ ուրեմն որտեղի՞ց երևան եկավ այդպիսի անվճռականությունը, այդպիսի անհամարձակությունը։ Մուսայելյանն ամենածանր րոպեին ենթարկելով իրեն մահացու վտանգի՝ խախտեց զինվորական երդումն ու կարգապահությունը, չենթարկվեց զինվորական հրամանատարության հրամանին և համարձակորեն, հաստատորեն ու վճռականորեն զրահագնացքի գլուխ կանգնած անցավ բանվորների կողմը, իր հրանոթների պաշտպանության տակ առավ կոմունիստներին։ Չէ՞ որ դա իսկական հերոսություն, իսկական սխրագործություն էր, որ կա-

1 ՀԿ(բ)Պ Կենտկոմի տեղեկագիր, № 1, 1922 թ., էջ 5։

2 Նույն տեղը, էջ 5—6։

3 Գ. Բ. Ղարիբջանյան. Հիշյալ գրքի էջ 253—254։

4 Նույն տեղը, էջ 254—255։

տարեց նա: Հիմք չկա այդպիսի ռևոլյուցիոն հերոսին մեղադրելու անհամարձակության, անվճռականության և ինչ-որ անհասկանալի ռազմա-ստրատեգիական սխալների մեջ, ապստամբության մարքսիստական-լենինյան կանոնները չկատարելու մեջ: Ժամանակակից սովետական մարդիկ ու նրանց սերունդները ի՞նչ կարծիք պիտի կազմեն Ալեքսանդրոպոլի ապստամբության ղեկավարների մասին պատմաբան Ղարիբջանյանի գիրքը կարդալով:

Լենինն ասել է. «բայց եթե վճռական պահին երևան է գալիս արիության պակասություն, այդ արդեն սխալմունք չէ, այլ դավաճանություն է» [1]:

Եթե վճռականության ու համարձակության, այլ խոսքով ասած՝ քաջության ու արիության պակասության վերաբերյալ Գ. Բ. Ղարիբջանյանի վերոհիշյալ հայտարարությունը մեկնաբանելու լինենք լենինաբար, ապա ըստ էության կստացվի, որ Ալեքսանդրոպոլի ապստամբության ղեկավարները դավաճանել են: Սակայն խնդիրը ամենևին էլ այդպես չէ, այլ շատ ավելի խորն է:

Մարքսիստական-լենինյան կանոններն իրականացնելն այնքան էլ հեշտ ու դյուրին չէ:

Խոսելով ապստամբության կանոնների մասին [2] Լենինը միաժամանակ պարտիային սովորեցնում էր, թե անհրաժեշտ է նախապատրաստական աշխատանք կատարել, որպեսզի կարելի լինի կիրառել այդ կանոնները:

Մի կողմից ապստամբության նախապատրաստության ու պլանի բացակայության պատճառով, մյուս կողմից մայիսմեկյան հաջողակ ցույցի ազդեցության տակ դյուրին հաղթանակ տանելու երազանքով տարված՝ Ռևկոմը չկարողացավ ժամանակին կապվել մյուս շրջանների հետ, թշնամուն անակնկալի բերել և մեկուսացնել դաշնակցյան ակտիվը: Այս ամենը մեծ չափով դժվարացրեց ապստամբության հաջողությունը:

Գ. Բ. Ղարիբջանյանը գրում է.

«Դաշնակցյան զորքերի հրամանատար էր նշանակված դաշնակ պարագլուխ Սեպուհը: Նրա ջոկատը բաղկացած էր 600 թրից, 8-րդ գնդի մեկ վաշտից և 6 թնդանոթից: Սեպուհին էին հանձնված մի քանի խմբապետ մաուզերիստներ իրենց ջոկատներով: Ընդհանուր առմամբ Ալեքսանդրոպոլի ապստամբությունը ճնշելու համար ուղարկված ուժերը մեծ չէին, այնինչ ապստամբներն իրենց տրամադրության տակ ունեին երկու հեծյալ գունդ, զրահագնացքը, լրիվ կազմով հետևակային վեց վաշտ, 12 գնդացիր, ութ թնդանոթ և Կարմիր գվարդիայի ջոկատ՝ բաղկացած 600 մարդուց» [3]:

Ուժերի այդպիսի գերակշռություն ունենալով՝ քաղաքն առանց կռվի հանձնելը հավասարազոր է դավաճանության: Բայց հեղինակը սխալվում է: Նա վատ, մակերեսորեն և սխեմատիկ կերպով է պատկերացնում ռևոլյուցիան: Նա այնպես է գրում, որպես թե գնդերն ու վաշտերը լիակատար սպառազինությամբ կանգնած՝ հենց միայն հարձակման հրամանի էին սպասում, բայց Ռևկոմն ու Մուսայելյանն այդպիսի հրաման չտվին:

Մայիսի 13-ին ակտիվի հետ միասին Ռևկոմի նիստում տված իր զեկուցման մեջ (որն անտեսել է Գ. Բ. Ղարիբջանյանը), Մուսայելյանն ասում է. «Զորքերի համար պարենամթերքի բացակայությունը ավելացնում է առանց այն էլ անհուսալի և սակավ գիտակից զորամասերի տատանումները: Բանվորներից ու կոմունիստներից կազմակերպված կարմիր գվարդիան խիստ սակավաթիվ է և որևէ ազդեցիկ ուժ հանդիսանալ չի կարող: Այսպես ուրեմն, շատ ծանր վիճակ է ստեղծվել ինչպես պարենամթերքի, այնպես էլ ռազմական տեսակետից» [4]:

---

1 Журнал „Вопросы истории КПСС“, № 5, 1958 г., стр. 17.

2 Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 26, էջ 211:

3 Գ. Բ. Ղարիբջանյան, հիշյալ գրքի էջ 248—249:

4 ՄԼԻ-ի Հայկական ֆիլիալի արխիվ, Մայիսյան ապստամբության ֆոնդ:



Սրանից պարզ երևում է, որ գործն այն վիճակում չէր, ինչպես գրում է Գ. Բ. Ղարիբջանյանը: Զորքերը ռևոլյուցիային դեմ չգնացին, իսկ դա քիչ բան չէր նշանակում: Նրանք ցանկանում և սպասում էին բանվորների հաղթանակին, որպեսզի նրանց կողմն անցնեն: Բայց բանվորների ուժերն առաջին հաղթանակի համար բավական չէին: Առանձին զորամասեր հենց սկզբից կարող էին մարտի մեջ մտնել, եթե նախօրոք պատրաստված լինեին դրա համար, եթե ունենային բոլշևիկյան ավանգարդ և զինվորական մասսաների շարքերից ելած ռևոլյուցիոն ղեկավարներ:

Ալեքսանդրոպոլում մինչև մայիսյան ապստամբությունը կոմունիստները խոշոր պարտիական աշխատանք էին կատարել բանվորների շրջանում, դաշնակների դեմ մղվող պայքարի ընթացքում ստեղծվել, աճել ու ամրապնդվել էին բոլշևիկյան բջիջներ, առաջ էին եկել բանվոր-ղեկավարներ՝ Հանեսօղլյանը, Կուզնեցովը, Սևյանը, Գոգունցը, Ուլիբեկյանը, Սարգսյանը և ուրիշներ: Բայց պատմությանը հայտնի չեն նույնպիսի բջիջներ ու նույնպիսի ղեկավարներ Ալեքսանդրոպոլի զորամասերում և Ալեքսանդրոպոլի գավառի գյուղերում, բացառությամբ Քավթառլուի:

Վերոհիշյալ հանգամանքների հետևանքով Ալեքսանդրոպոլի ապստամբները մայիսի 13-ին խիստ դժվարին դրության մեջ էին ընկել: Դիլիջանի և մյուս շրջանների հետ կապ ստեղծելու ժամանակը բաց էին թողել, թշնամին արդեն քաղաքի դարպասների առաջ էր: Քաղաքում շրջում էին դաշնակցյան պրովոկատորները, տեռորիստներն ու թալանչիները: Գյուղը քաղաքին օգնության չհասավ: Զինվորական մասսաները տատանվում էին և սպասում բանվորների հաղթանակին:

Այս բացառիկ լարված, կրիտիկական պայմաններում, ճիշտ է, մնում էր դժվարին ու խիստ պրոբլեմատիկ, բայց ո՛չ բոլորովին անհուսալի վերջին վճռական միջոցը՝ մոբիլիզացնել բոլոր կոմունիստներին և ուղարկել զորամասերը՝ ակտիվ ու հեղինակավոր զինվորների և հրամանատարների օգնությամբ փորձել կայազորի թեկուզ մի մասը ոտքի հանել թշնամու դեմ ակտիվ ռազմական գործողություններ սկսելու, միաժամանակ ջանալով քաղաքում մեկուսացնել ակտիվ դաշնակներին:

Բայց դրա համար այդ ծանր ու պատասխանատու պահին պակասում էր ամենագլխավորը՝ կուռ միասնությունը Ռևկոմում և պարտկազմակերպությունների շարքերում: Ժամանակին արմատախիլ չարված տարաձայնությունները և ներպարտիական աջ-օպորտունիստական հոսանքի, տատանումների առկայությունը, անտարակույս, այդ կրիտիկական օրերին ճակատագրական դեր խաղացին: Մայիսյան ապստամբության պատմության այդ էջը դեռևս բավականաչափ պարզաբանված չէ: Սակայն այսպիսի ընդհանուր հետևության համար բավական տվյալներ կան:

Իսկ որո՞նք են այդ տվյալները:

Ամենից առաջ այն տվյալները, որ կան Ռևկոմի 1920 թվականի մայիսի 13-ի վերոհիշյալ ընդլայնված նիստի արձանագրության մեջ: Այդ արձանագրության մեջ կա կոմունիստ Լևոն Ղազարյանի ելույթի սղագրությունը, որով նա գտնում է, որ «ապստամբությունը տանուլ տրված է և առաջարկում է քաղաքը հանձնել առանց կռվի»: Այդ արձանագրության մեջ կա նաև Բագրատ Ղարիբջանյանի ճառի գրառումը: Ղարիբջանյանն ասում է՝ «Փարիզի Կոմունան 8 շաբաթ դիմացավ, իսկ Ալեքսանդրոպոլինը՝ 8 օր էլ չտևեց, մի՞թե սա ավանտյուրա չէ (Նախագ. ընկ. Ղարիբջ. կարգի է հրավիրում: Աղմուկ, բողոքներ): Անցնելով ստեղծված դրությանը՝ ընկերը գտնում է, որ դրությունը ծանր է, բայց անհուսալի չէ. հարկավոր է զինված դիմադրություն կազմակերպել և գործը պատվով հասցնել մինչև վերջ»:

Հարցի այսպիսի սուր հակասական դրվածքը առնվազն տարօրինակ է, և, համենայն դեպս, մոբիլիզացնող չէ, այլ միայն դեմոբիլիզացնող է: Ընթերցողի համար դժվար չէ այդ հասկանալ նաև առանց մեկնաբանությունների: Արձանագրության մեջ այլևս նույնանման ելույթներ չկան, թեպետ, ինչպես

նավորվում է բուրժուական գաղափարախոսների կողմից։

Պատմականորեն ազատության բուրժուական կոնցեպցիան առաջադիմական էր, երբ ազատության, հավասարության, եղբայրության նշանաբանով երրորդ դասը գրոհի էր անցել ֆեոդալիզմի ամրությունների դեմ, բայց դառնում է հետադիմական, ռեակցիոն, երբ փորձում է հաստատել բուրժուական կարգերի, հետևաբար և դասակարգային հակասությունների մշտնջենականությունը։ Բուրժուական դեմոկրատիան հանդես է գալիս փոքրամասնության ազատությունը պաշտպանողի դերում, իսկ ժամանակակից ռևիզիոնիզմն ու սոցիալ-ռեֆորմիզմը իրենց սոցիալական դեմագոգիայով սքողում են իմպերիալիզմի ռեակցիոն քաղաքականությունը.

Յանագիդան նշում է ժամանակակից լիբերալիզմի սահմանափակվածությունը և նրա պայքարի անհետևանքությունն ու անհետևողականությունը դեմոկրատիայի սկզբունքները պաշտպանելու գործում։ Սակայն նրա համար դեռևս լիովին պարզ չէ սոցիալական այն պատվերը, որ կատարում են լիբերալները՝ պատրանքներ և խաբեություն սերմանելով աշխատավորական մասսաների մեջ։ Մեր խոսքը ոչ թե լիբերալիզմի հասկացողությունների «խառնաշփոթության», այլ նրա որոշակի սոցիալական էության մասին է։

Իր գրքի վերջին գլխում Յանագիդան՝ քննելով ազատությունը նվաճելու կոնկրետ ուղիները, հանգում է այն ճիշտ եզրակացության, թե քանի որ ազատության պրոբլեմը սոցիալական պրոբլեմ է, ապա այն չի կարելի լուծել առանց լիկվիդացնելու մասնավոր սեփականությունը՝ դրա փոխարեն հաստատելով համաժողովրդական սեփականություն՝ որպես ժողովուրդների ազատության տնտեսական բազա։ Մարքսի հայտնի դրույթին համապատասխան Յանագիդան ընդգծում է, որ իրականության բացատրությամբ, առանց սոցիալական պայքարի մեջ ներգրավվելու, փիլիսոփայությունն անզոր է և հայեցողական։

Ազատության պրոբլեմը, հայտարարում է Յանագիդան, սոցիալական պրոբլեմ է և դա չի կարելի լուծել դասակարգային պրոբլեմից անջատ։ «Պրոլետարական ռևոլյուցիան կապիտալիստների դասակարգի ազատության բացասումը կլինի, ազգային անկախության համար մղվող շարժման հաջողության հետևանքով իմպերիալիստները կվտարվեն օտար երկրներից, իսկ ատոմային և ջրածնային զենքի դեմ՝ հանուն խաղաղության ուղղված շարժումը, ըստ երևույթին, մահի առետուր անողներին կզրկի մաքսիմալ շահույթ ստանալու ազատությունից»։ Լա՜վ և ճիշտ է ասված։

Առանց անողոք դասակարգային պայքարի, առանց քաղաքական իշխանությունը նվաճելու չի կարելի հաստատել մեծամասնության ազատությունը՝ սա է այն եզրակացությունը, որին հանգում է Յանագիդայի վերլուծությունը։ Ազատությունը կարելի է իրականացնել միայն պրոլետարիատի դիկտատուրայի միջոցով, կասեինք մենք, լրացնելով՝ Յանագիդայի կողմից չարտասանված բառերը։

Յանագիդայի օրինակը ցույց է տալիս, որ արդար մտածող գիտնականը, որին խորթ են կեղծիքն ու խղճի հետ գործարքներ անելը, վերջիվերջո պետք է անցնի դիալեկտիկական մատերիալիզմի, մարքսիզմ-լենինիզմի դիրքերի վրա։

Յանագիդայի նման մարդկանց—թեև նրանք կոմունիստներ չեն— ոգևորում է Կոմունիստական պարտիայի հերոսական պայքարը ռեակցիայի ուժերի դեմ՝ հանուն նոր հասարակության։ Անխարդախ պաթոսով և լիակատար ներքին համոզվածությամբ հնչում են Յանագիդայի խոսքերը կոմունիստների հասցեին.— «Հենց նրանք են, կոմունիստները, ազգի խիղճը, աշխարհի բանականությունը»։ Մարքսիզմ-լենինիզմի գաղափարների ամենահաղթ ուժն իր կողմն է գրավում աշխարհի ամենաառաջավոր տարրերին։

Ա. ԲԶՆՈՒՆԻ

---



# ԿՈՄՈՒՆԻՍՏ ԿՈԼՏՆՏԵՍԱԿԱՆՆԵՐԻ ԱՆԴԱՄԱՎՃԱՐՆԵՐԻ ՄՈՒԾՄԱՆ ՆՈՐ ԿԱՐԳԻ ՄԱՍԻՆ

Կոմունիստ-կոլտնտեսականներից, կոլտնտեսային սկզբնական պարտիական կազմակերպությունների քարտուղարներից և տեղական պարտիական օրգանների աշխատողներից ստացվում են խնդրանքներ պարզաբանելու, ինչպես պետք է անդամավճար մուծի կոմունիստ-կոլտնտեսականը այն կապակցությամբ, որ շատ կոլտնտեսային արտելներ անցել են աշխատանքի ամենամսյա ավանսավորման և դրամական վարձատրման։ Նրանք գրում են, որ ներկայումս կոլտնտեսային պարտիական կազմակերպություններում այնպիսի դրություն է ստեղծվել, որ միևնույն պարտիական կազմակերպության կոմունիստները տարբեր չափով են մուծում անդամավճարը։ Կոմունիստ-կոլտնտեսականների մի մասը ամսական անդամավճար է մուծում 50 կոպեկի չափով, իսկ մյուս մասը՝ 50 կոպեկին ավելացնում է իր ստացած դրամական լրացուցիչ գումարից, իսկ ՄՏԿ-ներից կոլտնտեսություններ աշխատանքի փոխադրված կոմունիստ-մեխանիզատորները անդամավճար մուծում են ընդհանուր վաստակից, որն ընդգրկում է ինչպես դրամական, այնպես էլ բնամթերային վարձատրությունը՝ դրամի վերածած։ Այդ կապակցությամբ շատ նամակներում առաջարկություններ են արվում կոմունիստ-կոլտնտեսականների անդամավճարների մուծման կարգը փոխելու մասին։

Վերջերս ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեն որոշում է ընդունել «Կոմունիստ-կոլտնտեսականների անդամավճարների մասին»։

Ի փոփոխումն կոմունիստ-կոլտնտեսականների անդամավճարների մուծման գոյություն ունեցող կարգի, ՍՄԿՊ Կենտկոմը սահմանեց, որ կոմունիստ-կոլտնտեսականներն ամսական անդամավճարներ մուծում են ընդհանուր վաստակից՝ Կանոնադրության և պարտիայի անդամների ու թեկնածուների անդամավճարների մասին ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի Հրահանգի 1-ին և 2-րդ կետերի համաձայն։

Ներկա որոշման համաձայն, կոմունիստ-կոլտնտեսականների անդամավճարները հաշվարկվում են նրանց ամսական-միջին եկամտից, որն ընդգրկում է ինչպես դրամական, այնպես էլ բնամթերային մասը՝ գնման գներով դրամի վերածած։ Ընդ որում այն կոմունիստ-կոլտնտեսականները, որոնք ամսական դրամական վարձատրություն կամ դրամական ավանս են ստանում, անդամավճար մուծում են եկամտի դրամական այն գումարից, որ նրանք ստացել են տվյալ ամսին։ Այն գյուղատնտեսական արտելներում, որտեղ կոլտնտեսականների հետ հաշիվները փակում են տարվա վերջին, կոմունիստները անդամավճար մուծում են ամսական 50 կոպեկի չափով։ Գյուղատնտեսական տարվա վերջին, երբ արտելի անդամների հետ կոլտնտեսությունները վերջնական հաշվարկումներ են կատարում, կոմունիստ-կոլտնտեսականները կատարում

են անդամավճարների լրացուցիչ մուծում՝ ելնելով իրենց տարեկան ընդհանուր եկամուտներից, որն ընդգրկում է դրամական, ինչպես նաև բնամթերային մասը՝ գնման գներով դրամի վերածած։ Լրացուցիչ մուծման չափը որոշվում է պարտիական անդամավճարների տարեկան գումարը հաշվելու միջոցով, ելնելով ամսական միջին եկամտից, դուրս գալով այն մուծումները, որ կոմունիստն արդեն կատարել է տվյալ տարում։

ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեն այդ նույն որոշմամբ սահմանել է մուտքի վճարի նոր չափեր, որ մուծում են ՍՄԿՊ անդամության թեկնածու ընդունվող կոլտնտեսականները։ Մուտքի վճարներ նրանք տալիս են ընդհանուր հիմունքներով՝ անցած տարվա մեկ ամսվա միջին վաստակի երկու տոկոսի չափով։

Կոմունիստ-կոլտնտեսականների անդամավճարների մուծման նոր կարգ սահմանվում է 1959 թ. հուլիսի մեկից։

Կոմունիստ-կոլտնտեսականների անդամավճարների մուծման կարգը փոփոխելու և պարտիայի անդամության թեկնածու ընդունվող կոլտնտեսականների մուտքի վճարի նոր չափ սահմանելու կապակցությամբ, համապատասխան փոփոխություններ են մտցված պարտիայի անդամների և թեկնածուների անդամավճարների մասին ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի Հրահանգի 3-րդ և 4-րդ կետերում։

Կոմունիստ-կոլտնտեսականների անդամավճարների մուծման նոր կարգին անցնելիս առաջ են գալիս մի շարք պրակտիկ հարցեր։ Մասնավորապես, ինչպե՞ս պետք է հաշվարկվի անդամավճարների լրացուցիչ մուծման չափը։ Լրացուցիչ մուծման գումարը սահմանվում է հետևյալ կերպ. կոմունիստ-կոլտնտեսականի ընդհանուր տարեկան գումարը բաժանվում է 12 ամսվա վրա, որոշվում է նրա ամսական միջին եկամուտը և նրան համապատասխան ամսական անդամավճարի չափը. իսկ այնուհետև՝ անդամավճարների այն ընդհանուր գումարը, որ կոմունիստը պետք է վճարի ամբողջ տարվա համար։ Անդամավճարների այդ տարեկան գումարից հանվում է ընթացիկ տարվա ընթացքում կոմունիստի կողմից արդեն վճարածը։ Մնացորդն էլ հենց կկազմի լրացուցիչ վճարի չափը։

Սա բացատրենք օրինակով։ Ամսական միջին հաշվով 400 ռուբլի դրամական վարձատրություն կամ ավանս ստացող կոմունիստ-կոլտնտեսականը ՍՄԿՊ Կանոնադրության համաձայն անդամավճար է մուծում ամսական երկու ռուբլի։ Ամբողջ տարվա համար նա կվճարի 24 ռուբլի։ Տարվա արդյունքներն ամփոփելիս, երբ կոլտնտեսությունը վերջնական հաշիվ է կատարում տվյալ կոմունիստ-կոլտնտեսականի հետ, պարզվում է, որ նրա տարեկան ընդհանուր եկամուտը (դրամական մասը և բնամթերային վարձատրությունը, դրամի վերածած) կազմում է վեց հազար ռուբլի, կամ միջինը՝ ամսական 500 ռուբլի։ Ամսական այդպիսի եկամտի դեպքում կոմունիստը պետք է ամսական վճարեր 2 ռուբլի 50 կոպեկի չափով, իսկ ամբողջ տարվա համար՝ 30 ռուբլի։ 30 ռուբլուց հանելով կոմունիստի կողմից տարվա ընթացքում արդեն մուծված անդամավճարը (24 ռուբլի), ստանում ենք 6 ռուբլու տարբերություն, որն էլ կոմունիստը պետք է մուծի լրացուցիչ։

Անդամավճարների լրացուցիչ մուծման չափի հաշվարկման նույնպիսի կարգ է սահմանվում նաև այն գյուղատնտեսական արտելների կոմունիստ-կոլտնտեսականների համար, որոնք կոլտնտեսականների հետ վերջնահաշիվ կատարում են գյուղատնտեսական տարվա արդյունքներով։ Տարվա ընթացքում կոմունիստ-կոլտնտեսականը ամեն ամիս անդամավճար է մուծել 50 կոպեկի չափով և ընդամենը տարվա ընթացքում մուծել է վեց ռուբլի։

Ըստ տարվա արդյունքների նա իր աշխօրերի համար ստացել է դրամ և բնամթերք, դրամի վերածած, ընդամենը վեց հազար ռուբլի։ Այսպիսով, նրա միջին ամսական եկամուտը կազմել է 500 ռուբլի, որի համար նա պետք է անդամավճար մուծի ամսական երկու ռուբլի 50 կոպեկ, իսկ ամբողջ տարվա համար՝ 30 ռուբլի։ Իսկ նա վճարել է վեց ռուբլի։ Հետևաբար, նրա լրացուցիչ մուծման գումարը կկազմի 24 ռուբլի։



Անդամավճարների լրացուցիչ մուծումը կոմունիստ-կոլտնտեսականը կատարում է այն ամսին, երբ նա աշխատած տարվա համար կոլտնտեսությունից ստանում է իր վերջնահաշիվը դրամով և բնամթերքով։

Իսկ ինչպե՞ս պետք է գրանցվի այդ լրացուցիչ մուծումը պարտիական տոմսում կամ թեկնածուական քարտում։ Ենթադրենք, թե կոլտնտեսությունը կոմունիստ-կոլտնտեսականի հետ տարվա ընթացքում կատարած նրա աշխատանքի համար լրիվ վերջնահաշիվ կատարեց հաջորդ տարվա հունվարին։ Հունվարին էլ հենց նա պետք է լրացուցիչ մուծի 6 կամ 24 ռուբլու չափով, ինչպես նշված է վերը բերված հաշվարկում։ Բացի դրանից, այդ նույն ամսին նա մուծում է հերթական անդամավճարը՝ երկու ռուբլու չափով՝ ստացած 400 ռուբլի դրամական վարձատրության գումարից։ Պարտիական տոմսում կամ թեկնածուական քարտում արվում է հետևյալ նշումը. «Ամսական աշխատավարձ» սյունակում նշվում է «400 ռուբլի», իսկ անդամավճար» սյունակում գրվում է «2 ռուբ. + 6 ռուբ. լրացուցիչ վճար»։ Այն դեպքում, երբ կոմունիստ-կոլտնտեսականը անդամավճար է մուծում 50 կոպեկի չափով «անդամավճար» սյունակում գրվում է այսպես. «50 կոպ.+24 ռուբ. լրացուցիչ վճար»։ Նման գրանցումներ են կատարվում նաև անդամավճարների գանձման ցուցակներում։

Կոմունիստ-կոլտնտեսականներից անդամավճարների լրացուցիչ մուծումներ ընդունելով, կոլտնտեսային պարտիական կազմակերպության քարտուղարը նախօրոք կոլտնտեսության վարչությունում պարզում է վերջնական տարեկան այն եկամուտը (դրամով և բնամթերքով, դրամի վերածած), որ կոմունիստ-կոլտնտեսականները ստացել են աշխատած տարվա համար։ Կոմունիստ-կոլտնտեսականների տարեկան եկամտի մասին վերցրած տեղեկանքը կցվում է անդամավճարների գանձման այն ամսվա ցուցակին, երբ կատարվում է լրացուցիչ մուծումը։

Այն կապակցությամբ, որ կոմունիստ-կոլտնտեսականների անդամավճարների գանձման նոր կարգը մտցվում է ընթացիկ տարվա հուլիսի 1-ից, ինչպե՞ս պետք է կատարվեն անդամավճարների լրացուցիչ մուծումները 1959 թվականին։ Անդամավճարների լրացուցիչ մուծումներ պետք է կատարվեն ոչ թե ամբողջ տարվա համար, այլ միայն երկրորդ կիսամյակի համար, այսինքն վեց ամսվա համար։ Եթե օգտվենք լրացուցիչ մուծումների որոշման վերը բերված օրինակներից, ապա 1959 թ. վեց ամսվա համար այն կկազմի մի դեպքում 3 ռուբլի, իսկ մյուս դեպքում՝ 12 ռուբլի։ Ուստի պարտ. տոմսում կամ թեկնածուական քարտում 1960 թվականի հունվարի համար «անդամավճար» սյունակում կգրվի. «2 ռուբ.+3 ռուբ. լրացուցիչ վճար». իսկ երկրորդ դեպքում. «50 կոպ. + 12 ռ., լրացուցիչ վճար»։

Մի շարք գյուղատնտեսական արտելներում կոլտնտեսականների աշխա-



տանքի ամենամսյա վճարումները կամ ավանսավորումը կատարվում է ոչ միայն դրամով, այլև բնամթերքով: Այս դեպքում ինչպե՞ս վարվել անդամավճարներն ընդունելիս: *Այս դեպքում անդամավճարների մուծումը պետք է կատարվի միայն անցած ամսին ստացած դրամական գումարից: Բնամթերային մասը դրամի վերածած, հաշվի կառնվի անդամավճարների լրացուցիչ մուծումների ժամանակ, երբ կոմունիստ-կոլտնտեսականները վերջնահաշիվ կստանան կոլտնտեսություններից անցած տարվա աշխատանքի դիմաց:*

Ինչքա՞ն մուտքի վճար պետք է մուծեն այն կոլտնտեսականները, որոնք պարտիայի մեջ են ընդունվել մինչև 1959 թվականի հուլիսի 1-ը: *Մինչև հուլիսի 1-ը պարտիայի անդամության թեկնածու ընդունված կոլտնտեսականները մուտքի վճար են տալիս նախկին կարգով:*

***

*Կոլտնտեսականների սկզբնական պարտիական կազմակերպությունների որոշ քարտուղարների համար կոմունիստ-կոլտնտեսականների անդամավճարների մուծման նոր կարգը առաջին շրջանում կարող է որոշ դժվարություններ ստեղծել ինչպես անդամավճարների և լրացուցիչ մուծումների ճիշտ չափը որոշելիս, այնպես էլ դրանք պարտիական փաստաթղթերում գրանցելիս: Ուստի պարտիայի գյուղական շրջկոմները պետք է մանրամասն հրահանգավորում անցկացնեն կոլտնտեսային պարտիական կազմակերպությունների քարտուղարների հետ, կոնկրետ օրինակներով քարտուղարներին բացատրեն կոմունիստ-կոլտնտեսականներից անդամավճարներ ընդունելու նոր կարգը: Անհրաժեշտ կլինի նաև քարտուղարներին պրակտիկ օգնություն ցույց տալ նոր ձևով անդամավճարներ ընդունելու առաջին օրերին: Կոլտնտեսային պարտիական կազմակերպություններին զգալի օգնություն կարող են ցույց տալ շրջանային պարտիական կազմակերպությունների վերստուգիչ հանձնաժողովները:*

*Կոլտնտեսությունների հերթական պարտիական ժողովներում անհրաժեշտ է կոմունիստներին ինֆորմացիա տալ «Կոմունիստ-կոլտնտեսականների անդամավճարների մասին» ՍՄԿԿ Կենտրոնական Կոմիտեի որոշման վերաբերյալ և նրանց բացատրել անդամավճարների մուծման նոր կարգը:*

«Պարտիյնայա ժիզն» № 8, 1959 թ.:

Խմբագրության հասցեն՝
Երևան, ՀԿՊ Կենտկոմի շենք
Հեռ. 2—03—18, 2—56—92, 2—04—66.
Адрес редакции: Ереван, здание
ЦК КП Армении, тел. 2—03—18,
2—56—92, 2—04—66.



ՎՖ 05561 Պատվեր 1423 Տիրաժ 8700
Տպ. 7 մամուլ, մամուլում 68,840 նիշ: Ստորագրված է տպագրության 30/VII 1959 թ.:
Խմբագրությանը հանձնված ձեռագրերը հեղինակներին չեն վերադարձվում:
ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության գլխհրատի № 6 տպարան, Երևան, Լենինի պող. № 51:

ԳԻՆԸ 2 Ռ. 50 Կ.

## ԼՈՒՅՍ ԵՆ ՏԵՍԵԼ ԵՎ ՀԱՅԳՐՔԻ ԳՐԱԽԱՆՈՒԹՆԵՐՈՒՄ ՎԱՃԱՌՎՈՒՄ ԵՆ ՀԵՏԵՎՅԱԼ ԳՐՔԵՐԸ

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ — «Ժողովրդին ծառայելը սովետական գրողի բարձր կոչումն է», *գինը 30 կոպ.։*

Ն. Ս. ԽՐՈՒՇՉՈՎ — «Հանուն երկրի արտադրողական ուժերի հետագա վերելքի», *գինը 59 կոպ.։*

«Հայկական ՍՍՌ Կոնստիտուցիա», *գինը 40 կոպ.։*

«Դիմում Սովետական Միության բանվորներին և բանվորուհիներին, կոլտնտեսականներին և կոլտնտեսուհիներին, սովետական ինտելիգենցիային, բոլոր աշխատավորներին», *գինը 10 կոպ.։*

«ՍՄԿԿ Կենտկոմի 1959 թ. Հունիսյան պլենումի որոշումները», *գինը 50 կոպ.։*

Վ. ՆԵՐԿԱՐԱՐՅԱՆ— «Աշխատանքի արտադրողականության անշեղ աճման օրենքը», *գինը 1 ռ. 65 կոպ.։*

Մ. ԱՌՈՒՍՏԱՄՅԱՆ— «Սոցիալիստական վերափոխումները և սոցիալիզմի կառուցումը Չինաստանում», *գինը 2 ռ. 70 կոպ.։*

Ս. ԱԴՈՅԱՆ — «Ֆոերբախի կյանքն ու աշխարհայացքը», *գինը 1 ռ. 50 կ.։*

Ծ. ԱԼԵՔՍԱՆՅԱՆ— «Մարքսիզմը և ժամանակակից բուրժուական փիլիսոփայությունը», *գինը 8 ռուբ.։*

Խ. ՀՈՎԱԿԻՄՅԱՆ— «Կոմունիզմ կառուցողների համագումարը», *գինը 70 կոպ.։*

Ռ. ՄԱՆՈՒԿՅԱՆ— «ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանի նշանակությունը», *գինը 50 կոպ.։*

Վ. ԳԵՎՈՐԳՅԱՆ— «Գործարանային բազմատիրաժ թերթերը», *գին 50 կոպ.։*

ՀԱՅԳՐՔԻ ԱՌԵՎՏՐԻ ՎԱՐՉՈՒԹՅՈՒՆ